Կեցցե՛ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը՝ 20-րդ դարի գլխավոր իրադարձությունը, կապիտալիզմից դեպի սոցիալիզմ մարդկության համաշխարհային պատմական շրջադարձի սկիզբը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի կոչերից

Շապիկի 1-ին էջը՝ Հ. Մամյանի



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՆՈՅԵՄԲԵՐ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում, 1977 թ. նոյեմբերի 2-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*
*Հարգելի արտասահմանյան հյուրե՛ր։*

*Այս օրերին սովետական ժողովուրդը, բոլոր երկրների կոմունիստները, ողջ պրոգրեսիվ մարդկությունը հանդիսավորությամբ նշում են մեծագույն տոնը։ Վաթսուն տարի առաջ Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները, Լենինի կուսակցության ղեկավարությամբ, տապալեցին կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը։ Կատարվեց համաշխարհային պատմության մեջ առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը։* (Ծափահարություններ)։

*Հոկտեմբերյան անմոռանալի օրերն ալեկոծեցին ողջ մոլորակը։ Սկըսվեց պատմական նոր դարաշրջան՝ աշխարհի հեղափոխական նորացման դարաշրջանը, սոցիալիզմին և կոմունիզմին անցնելու դարաշրջանը։ Սկսվեց այն ուղին, որով այսօր ընթանում են հարյուր միլիոնավոր մարդիկ և որով վիճակված է ընթանալ համայն մարդկությանը։* (Ծափահարություններ)։

*Մենք առաջինն էինք։ Եվ մեզ համար հեշտ չէր։ Հարկավոր էր դիմանալ թշնամական շրջապատման օղակում։ Հարկավոր էր ձերբազատվել դարավոր հետամնացությունից։ Հարկավոր էր հաղթահարել պատմական իներցիայի հսկայական ուժը և սովորել ապրել նոր օրենքներով՝ կոլեկտիվիզմի օրենքներով։*

*Եվ հիմա, ամփոփելով պայքարի և աշխատանքի վեց տասնամյակների գլխավոր, վճռական հանրագումարը, կարելի է հպարտությամբ ասել՝ մենք մնացինք կանգուն,* (Ծափահարություններ), *մենք չընկրկեցինք,* (Ծափահարություններ), *մենք հաղթեցինք։* (Երկարատև ծափահարություններ)։

*Մենք հաղթեցինք քաղաքացիական պատերազմի և զինված ինտերվենցիայի ահարկու, տագնապալի տարիներին, երբ վճռվում էր սովետական իշխանության լինել թե չլինելու հարցը։*

Մենք հաղթեցինք առաջին հնգամյակների սրընթաց, փոթորկոտ տարիներին, երբ վճռվում էր այն հարցը, թե մեր երկրի բանվորներն ու գյուղացիները պատմության կողմից իրենց հատկացված շատ կարճ ժամկետում կկարողանա՞ն արդյոք հիմնարկել սոցիալիզմը, հայրենիքը դարձնել ինդուստրիալ հզոր տերություն։

Մենք հաղթեցինք Հայրենական մեծ պատերազմի դժնդակ, հրաբորբ տարիներին, երբ վճռվում էր այն հարցը, թե կարո՞ղ է արդյոք սոցիալիզմը դիմանալ համաշխարհային իմպերիալիզմի հարվածային ուժերի գրոհին, մարդկությանը փրկել ֆաշիստական ստրկացումից։

Մենք հաղթեցինք նաև հետպատերազմյան բարդ ու լարված տարիներին։ «Սառը պատերազմի» և ատոմային շանտաժի իրադրության մեջ արագ վերականգնվեց ավերված տնտեսությունը, նվաճվեցին տնտեսական և գիտատեխնիկական պրոգրեսի առաջավոր բնագծերը։

Ավելի քան երեսուն տարի սովետական երկիրն ապրում է խաղաղության պայմաններում։ (Ծափահարություններ)։ Ստեղծվել, գոյություն ունի և կատարելագործվում է զարգացած սոցիալիստական հասարակությունը՝ մասսաների պատմական ստեղծագործության արգասիքը։ (Ծափահարություններ)։

Փա՜ռք ու պատի՜վ սովետական ժողովրդին, հաղթող ժողովրդին։ (Երկարատև ծափահարություններ)։

Փա՜ռք ու պատի՜վ սովետական մարդկանց բոլոր սերունդներին, տղամարդկանց ու կանանց, կոմունիստներին ու անկուսակցականներին, ովքեր չխնայելով ուժերը, եռանդը, իսկ երբ հարկ է՝ նաև բուն կյանքը, հայրենիքը հասցրին սոցիալական պրոգրեսի կատարներին։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք երախտագիտության և սիրո ամենավեհ, ամենաջերմ խոսքերն ենք ուղղում հեղափոխության վետերաններին։ Մեր շարքերում ավելի ու ավելի են պակասում նրանք, ովքեր 1917 թվականի հոկտեմբերին լենինյան կուսակցության դրոշով գնում էին գրոհելու հին աշխարհի դեմ։ Բայց առավել լրիվ է բացահայտվում նրանց սխրանքի վեհությունը։ Փա՜ռք ու պատի՜վ Հոկտեմբերի առաջամարտիկներին։ (Երկարատև ծափահարություններ)։

Այս հանդիսավոր օրերին մենք երախտագիտությամբ ենք խոսում այն հեղափոխական համերաշխության մասին, որ սովետների երկրի նկատմամբ մշտապես ցուցաբերել են արտասահմանյան մեր դասակարգային եղբայրները։ Նրանց վճռական ելույթները բազմիցս օգնել են վիժեցնելու իմպերիալիզմի ագրեսիվ դավերը։

Կեցցե՜ պրոլետարական ինտերնացիոնալիզմը՝ բոլոր երկրների աշխատավորների հզոր զենքը։ (Երկարատև ծափահարություններ)։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

Ընկերնե՜ր։ Նշելով հեղափոխության տարեդարձը, մենք ամեն անգամ վերստին իմաստավորում ենք Հոկտեմբերի նշանակությունը, նրա ներգործության ուժը պատմության ընթացքի վրա, աշխարհի բախտի վրա։

Հոկտեմբերյան հեղափոխությունը, բնականաբար, լուծում էր ամենից առաջ մեր երկրի պրոբլեմները, այն պրոբլեմները, որոնք առաջադրել էին նրա պատմությունը, նրա կոնկրետ պայմանները։ Սակայն իրենց հիմքում դրանք ոչ թե տեղական, այլ ընդհանուր պրոբլեմներ էին, որոնք հասարակական զարգացման ընթացքով առաջադրվել էին ամբողջ մարդկությանը։ Եվ Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությունը հենց այն է, որ նա բացեց այդ պրոբլեմների լուծման և դրանով իսկ աշխարհում նոր տիպի քաղաքակրթության ստեղծման ուղին։ (Ծափահարություններ)։

Հոկտեմբերն ապացուցեց հասարակության քաղաքական հիմքերն արմատապես փոփոխելու հնարավորությունը։ Ռուսաստանի պրոլետարիատը պատասխան տվեց քաղաքականության ամենասուր, ամենահրատապ հարցին—



հավերժակա՞ն է, արդյոք, շահագործողների իշխանության մենաշնորհը, թե՞ այն կարող է և պետք է փոխարինվի աշխատավորների իշխանությամբ։

Սոցիալիստական շինարարության վեց տասնամյակները ամենափայլուն ապացույցն են այն բանի, թե ինչի են ընդունակ հասարակության քաղաքական ղեկավարումն իրենց ձեռքը վերցրած, երկրի բախտի համար պատասխանատվություն ստանձնած աշխատավոր մարդիկ։ Այդ տասնամյակներն ապացուցեցին, որ առանց աշխատավորների իշխանության, առանց սոցիալիստական պետականության, դրա շրջանցումով, դեպի սոցիալիզմ տանող ուղիներ չեն եղել և չկան։ (Ծափահարություններ)։

Հոկտեմբերի հաղթանակով աշխատավոր մարդկանց համար առաջին անգամ հնարավորություն ստեղծվեց վերջ տալու շահագործմանը և ձերբազերծվելու տնտեսական տարերքի գերությունից։ Հասարակական պրոգրեսի այս գլխավոր պրոբլեմը լուծվեց մասնավոր սեփականությունը վերացնելու, այն հանրային սեփականությամբ փոխարինելու հիման վրա։ Արտադրության անարխիան իր տեղը զիջեց տնտեսության գիտական, պլանային կառավարմանը։

Խիստ հետամնաց երկիրը պատմական նվազագույն ժամկետներում վերածվեց բարձր զարգացած ինդուստրիայի և կոլեկտիվացված գյուղատնտեսության երկրի։ Մեր արդյունաբերությանը ընդամենը երկուսուկես աշխատանքային օր է պահանջվում, որպեսզի արտադրի նույնքան արտադրանք, որքան ամբողջ 1913 թվականին։ (Ծափահարություններ)։ Այժմ մենք ավելի շատ արդյունաբերական արդյունք ենք արտադրում, քան քառորդ դար առաջ արտադրում էր ամբողջ աշխարհը։ Պատմության մեջ առաջին՝ սոցիալիզմի երկրի տնտեսական վիթխարի աճը ազատագրված աշխատանքի արդյունքն է, այն մարդկանց աշխատանքի արդյունքը, որոնք գիտակցում են, որ իրենք աշխատում են իրենց համար, ընդհանուրի բարօրության համար։ (Ծափահարություններ)։

Հոկտեմբերը, սոցիալիզմը մարդկության պատմությունը հարստացրին նաև աշխատավորների հոգևոր ազատագրման փորձով։ Ճնշողների տիրապետության «գաղտնիքներից» մեկը միշտ էլ եղել է այն, որ նրանք մասսաների նկատմամբ ֆիզիկական ուղղակի բռնությունը լրացրել են հոգևոր բռնությամբ։ Կառավարող դասակարգերը միշտ էլ անմատչելի են դարձրել աշխատավորների համար կրթությունն ու կուլտուրան, նրանց գերել են խաբուսիկ գաղափարներով ու պատկերացումներով։ Ահա թե ինչու մեր երկրում քաղաքական հեղափոխության օրինաչափ շարունակությունը եղավ կուլտուրական հեղափոխությունը։

Մեր սերնդի կյանքի ընթացքում սովետական երկիրը լիովին և ընդմիշտ ազատագրվեց անգրագիտության ծանր լծից։ Աշխատավորները դարձան կուլտուրական կյանքի ակտիվ մասնակիցներ, հոգևոր արժեքների կերտողներ։ Ժողովրդի ծոցից դուրս եկավ նոր, սոցիալիստական մտավորականություն, որը հայրենիքը փառաբանեց գիտության ու տեխնիկայի, գրականության և արվեստի ակնառու նվաճումներով։ Այն հանդիպումը, որի մասին երազում էին մարդկության լավագույն մտածողները, աշխատանքի և կուլտուրայի պատմական հանդիպումը՝ կայացավ։ (Ծափահարություններ)։ Մեր երկրի պատմության մեջ, ամբողջ համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ դա վիթխարի նշանակություն ունեցող շրջադարձ էր։ (Ծափահարություններ)։

Հոկտեմբերի հասունացման առանձնահատուկ տեղ է գրավում ազգային հարցի՝ մարդկային հասարակության պատմության ամենացավագին, ամենադրամատիկ հարցերից մեկի լուծումը։

Հանդես գալով հօգուտ բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների մարտական դաշինքի, կուսակցությունը, Վ. Ի. Լենինը միշտ էլ պաշտպանել են ազգերի ինքնորոշման իրավունքը, նրանց լիակատար և բացարձակ իրավահավասարությունը։ Եվ Հոկտեմբերի հաղթանակը միաժամանակ հաղթանակ էր ազգային ազատագրության պայքարում։ (Ծափահարություններ)։ Նախկին ցարական Ռուսաստանի ժողովուրդները առաջին անգամ հնարավորություն

տորեն կրկնապատկեց այդ արտադրանքի թողարկումը և զգալիորեն նորացրեց, բարելավեց այն։ Երկու անգամ մեծացավ նաև մանրածախ ապրանքաշրջանառությունը։ Բավարարվում է սովետական մարդկանց պահանջարկը երկարատև օգտագործման շատ ապրանքների ասպարեզում, որոնք դեռ վերջերս դեֆիցիտային էին համարվում։

Էկոնոմիկայի աճը հնարավորություն ընձեռեց էականորեն բարձրացնելու աշխատավարձը և ավելացնելու սպառման հանրային ֆոնդերը։ Սովետական մարդկանց ռեալ եկամուտները տասը տարում ավելացան 1,6 անգամ։ Կուզեի առանձնապես նշել, որ այդ ժամանակամիջոցում զգալիորեն բարձրացավ գյուղական աշխատավորների կենսամակարդակը և բարելավվեց նրանց կենցաղը։

Մեր զարգացման տեմպերը բնութագրող ամեն մի փաստ, ամեն մի թիվ զարգացած սոցիալիզմի հսկայական հնարավորությունների համոզիչ վկայությունն են։ Դա նոր ուժով դրսևորվեց Հոկտեմբերի հոբելյանին նվիրված սոցիալիստական մրցության ընթացքում։ (Ծափահարություններ)։ Սովետական մարդիկ ստանձնեցին ավելի բարձր պարտավորություններ և կատարեցին իրենց խոսքը։ Նրանք հանդես եկան հանդիպական պլաններով. և ոչ միայն կատարեցին, այլև գերակատարեցին դրանք։ Հայրենիքը շնորհակալություն է հայտնում հոբելյանական հերթափոխի մասնակիցներին, բոլոր նրանց, ովքեր սխրալի աշխատանքով դիմավորեցին մեծ հեղափոխության պանծալի տարեդարձը։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Ըստ արժանվույն գնահատելով հասումները, մենք լավ ենք հասկանում, որ մեզ մոտ դեռ բավական պրոբլեմներ կան, որ առջևում գործունեության վիթխարի ասպարեզ կա։

Մեր աշխատանքի հիմնական ուղղությունները, օրվա կոնկրետ խնդիրները սահմանվել են կուսակցության վերջին համագումարների, Կենտրոնական կոմիտեի պլենումների կողմից։ Նրանց որոշումները հայտնի են։ Դրանք նոր, ավելի բարձր պահանջներ են առաջադրում կադրերին, նրանց աշխատանքին, բոլոր աշխատավորների գործունեությանը։ Այդ պահանջներն առնչված են այն բանի հետ, որ հասարակական զարգացման ընթացքն ավելի ու ավելի բարդ խնդիրներ է առաջադրում կյանքի տարբեր բնագավառներին։ Իսկ որքան բարդ են խնդիրները, որքան բարդ է աշխատանքը, այնքան կարևոր են համաձայնեցվածությունը, ներդաշնակությունը, կարգապահությունը— այն ամենը, ինչ կարելի է բնորոշել որպես բարձր կազմակերպվածություն։

Բարձր կազմակերպվածություն կուսակցական, պետական և տնտեսական ղեկավարման բոլոր մակարդակներում, բոլոր օղակներում, ամեն մի աշխատատեղում. այս է XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման անհրաժեշտ, պարտադիր նախադրյալը։

Դրա հետ մեկտեղ դա նաև շատ կարևոր նախադրյալն է այն պրոբլեմների լուծման, որոնց մենք կբախվենք ապագայում։ Դեռևս սովետական իշխանության արշալույսին Վլադիմիր Իլյիչ Լենինն ասել է, որ արագ առաջընթացի համար, այն բանի համար, որ երկիրը դառնա հզոր և առատ, «Մենք մատերիալ ունենք թե՛ բնական հարստություններով, թե՛ մարդկային ուժերի պաշարով, թե՛ այն հիանալի թափով, որ տվեց ժողովրդական ստեղծագործությանը մեծ հեղափոխությունը...»[1]։ (Ծափահարություններ)։ Այսօր դրան ավելացել է տնտեսական և գիտատեխնիկական հսկայական հզորությունը, ինչպես և նոր կյանքի կառուցման հարուստ փորձը։ Մենք իրոք ամեն ինչ ունենք, որպեսզի վստահորեն ընթանանք դեպի նվիրական նպատակը՝ կոմունիզմը, նվաճենք պրոգրեսի նորանոր գագաթներ։

Բայց դրանք, ընկերնե՛ր, իրոք գագաթներ են։ Վերելքը կարող է լինել թեք և ոչ դյուրին։ Եվ, որպեսզի դա, տեխնիկական լեզվով ասած, կատարվի օպտիմալ ռեժիմով, հարկավոր է արդեն այսօրվա պլաններն ի սպաս դնել վաղվա օրվա խնդիրների լուծմանը։ Կուսակցությունն այդպես էլ վարվում է։ (Ծափահարություններ)։

Ո՛չ միայն ընթացիկ կարիքների, այլև ապագայի կանխատեսմամբ է աչքի

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 181։



ընկնում, մասնավորապես, մեր ագրարային քաղաքականությունը։ Մենք ձգտում ենք հասնել պարենային պրոբլեմի արմատական լուծման, երկրի հարաճուն պահանջմունքների բավարարման և այդ անում ենք այն պայմաններում, երբ բնակչությունն ու նրա պահանջմունքներն ավելանում են, իսկ հողատարածությունները մնում են նույնը։ Ահա թե ինչու ապագայի համար էլ մենք պլանավորում ենք գյուղատնտեսության բոլոր ճյուղերի առավել արագ, ինտենսիվ զարգացում։ Ահա թե ինչու մենք գյուղատնտեսությանը հատկացնում ենք և կհատկացնենք մեծ կապիտալ ներդրումներ, կմեծացնենք գյուղն սպասարկող արդյունաբերական ճյուղերի կարողությունները։

Մեր այդ պլաններում քիչ դեր չի հատկացվում Ռուսաստանի ոչ-սևահողային գոտուն։ Երկրի բուն կենտրոնում գտնվող այդ ընդարձակ շրջանը պետք է դառնա բարձր մթերատու հողագործության և անասնապահության գոտի։ (Ծափահարություններ)։ Այն զգալիորեն կհամալրի մեր պարենային ռեսուրսները։

Ապագայի լիակատար հեռանկարներն են ընդգրկում նաև վերջին տարիներս մշակված մյուս խոշոր կոմպլեքսային ծրագրերը։ Դրանք առաջին հերթին Արևմտյան և Արևելյան Սիբիրի զարգացման, Բայկալ—Ամուր մայրուղու, Հեռավոր Արևելքի արդյունաբերական և անտառարդյունաբերական կոմպլեքսների ստեղծման ծրագրերն են։ Դրանք կոչված են ապահովելու ժողովրդական տնտեսության ապագա պահանջմունքները նավթի, գազի, ածխի, սև և գունավոր մետաղների, անտառանյութի և հումքի այլ տեսակների ասպարեզում։ Այդպիսի ծրագրերի իրականացումն ունի նաև սոցիալական խոր իմաստ։ Դա նշանակում է յուրացում երկրի բազմաթիվ հեռավոր շրջանների, որտեղ կհառնեն տասնյակ նոր քաղաքներ, կստեղծվեն կուլտուրական նոր կենտրոններ։ Մեր առօրյայից վերջնականապես կվերանա բուն «անբնակ ծայրամաս» հասկացությունը։

Մեր ժամանակի մեծ կառույցներում առանձնահատուկ ուժով դրսևորվեցին սովետական երիտասարդության տոկունությունը, նրա ստեղծարար ավյունը, գաղափարական կոփվածքը։ (Ծափահարություններ)։ Շարունակելով իրենց պապերի ու հայրերի փառավոր ավանդույթները՝ կոմերիտականները, աղջիկներն ու պատանիներն ընթանում են կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում, առնականանում են աշխատանքում, սովորում են կառավարել տնտեսությունը, ղեկավարել հասարակության և պետության գործերը։ Նրանց ձեռքերում է երկրի ապագան։ Եվ մենք վստահ ենք, որ այդ ձեռքերը հուսալի են։ (Երկարատև ծափահարություններ)։

Խորհրդածելով ապագայի մասին՝ մենք մեծ նշանակություն ենք տալիս գիտությանը։ Այն պետք է հսկայական ավանդ մուծի կոմունիզմի կառուցման ամենակարևոր խնդիրների լուծման գործում։ Դրանց թվում են էներգիայի նոր աղբյուրների և բնական ռեսուրսների շատ տեսակների փոխարինիչների հայտնագործումը, ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումը, որը նվազագույնի է հասցնում ձեռքի աշխատանքը և մանավանդ ֆիզիկական ծանր աշխատանքը, գյուղատնտեսության վերելքին ցույց տրվող աջակցությունը, մարդու հիվանդությունների դեմ մղվող պայքարը և նրա կյանքի երկարացումը։

Մեր էկոնոմիկայի ապագան արդյունավետության բարձրացումն է։ Ժողովրդական տնտեսության հաջող, դինամիկ զարգացումն ապահովելու այլ ճանապարհ չկա։ Ուստի և կուսակցությունը վարում է և անշեղորեն կվարի գիտատեխնիկական առաջընթացի արագացման, պլանավորման ու կառավարման կատարելագործման, յուրաքանչյուր աշխատատեղում, յուրաքանչյուր կառավարչական օղակում կազմակերպվածությունն ու կարգ ու կանոնն ուժեղացնելու գիծ։ (Ծափահարություններ)։

Հայացք նետելով ապագային՝ մենք պետք է ևս մի հետևություն անենք։ Մեր հասարակության կյանքի ու զարգացման բոլոր ոլորտների համար առավել մեծ դեր է խաղալու սովետական մարդկանց գիտակցականության, կուլտուրայի, քաղաքացիական պատասխանատվության մակարդակը։ Մարդուն համակել հասարակական վեհ նպատակներին հասնելու ձգտումով, գաղափա-

րական համոզվածությամբ, աշխատանքի նկատմամբ իսկական ստեղծագործական վերաբերմունքով. սա ամենաառաջնահերթ խնդիրներից մեկն է։ Այստեղ է կոմունիզմի համար մղվող պայքարի շատ կարևոր ճակատը, և այդ ճակատում մեր տարած հաղթանակներով առավել մեծ չափով պայմանավորված կլինի թե՛ տնտեսական շինարարության ընթացքը, թե՛ երկրի սոցիալ-քաղաքական զարգացումը։ (Ծափահարություններ)։

Ինչպես տեսնում ենք, հեռանկարում մենք շատ պրոբլեմներ, ընդ որում, մեծ պրոբլեմներ ունենք։ Բայց սոցիալիզմի ուժն էլ հենց այն է, որ նոր հասարակարգը հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն նախատեսելու այդպիսի պրոբլեմներ, այլև կանխավ պլանավորելու դրանց լուծումը։

Ընկերնե՛ր։ Սովետական ժողովուրդը վստահությամբ է նայում ապագային։ Նա հաստատ գիտե, որ կյանքն ավելի ու ավելի լավանում է, ավելի գեղեցիկ, ավելի բովանդակալից է դառնում։ (Երկարատև ծափահարություններ)։ Դրա երաշխիքը աշխատանքն է, միլիոնավոր տղամարդկանց ու կանանց՝ կոմունիզմի իդեալներով ոգեշնչված, անձնվեր աշխատանքը։ Դրա երաշխիքը կոմունիստական կուսակցության լենինյան, գիտականորեն հիմնավորված քաղաքականությունն է։ (Երկարատև ծափահարություններ)։

Մեզ, կոմունիստ լենինյաններից յուրաքանչյուրիս համար բարձրագույն պարգև է այն, որ սովետական մարդիկ իրենց բոլոր հասումները, բոլոր հաղթանակները կապում են կուսակցության հետ։ Եվ դա հասկանալի է։ (Ծափահարություններ)։ Չէ՞ որ կուսակցությունն անբաժան է ժողովրդից։ Նրա շարքերում են բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության լավագույն ներկայացուցիչները։ Նա վայելում է աշխատավորների անսահման վստահությունը։ (Ծափահարություններ)։

Բայց, ընկերնե՛ր, ժողովրդի վստահությունը պահանջկոտ վստահություն է։ Ուստի կուսակցության ամեն մի որոշում, քաղաքականության մեջ, կազմակերպչական և գաղափարադաստիարակչական աշխատանքում յուրաքանչյուր քայլ կոչված են լինելու այնպիսին, որ է՛լ ավելի ամրապնդվի կուսակցության և ժողովրդի միասնությունը, որ կուսակցության նկատմամբ ժողովրդի վստահությունն այսուհետև ևս կմնա անսասան։ (Երկարատև ծափահարություններ)։

Մեր կուսակցությունն ամեն ինչ ունի իր պատմական պատասխանատվության բարձրության վրա գտնվելու համար։ Մեզ ոգեշնչում է վսեմ նպատակը՝ ժողովրդի բարօրությունը։ Մենք ունենք նոր կյանքի կառուցման հարուստ երկարամյա փորձ։ Մեզ համար գործողության ուղեցույց է մարքսիզմ-լենինիզմը՝ այն գիտությունը, որ մարմնավորել է մարդկային հանճարի բոլոր հասումները։ Մենք վստահ ենք մեր ուժերին։ (Երկարատև ծափահարություններ)։

1917 թվականի հոկտեմբերին սկսված մեծ ուղին, կոմունիզմի համար մղվող մեծ պայքարը շարունակվում են։ Վլադիմիր Իլյիչ Լենինը գրել է. ...կովի գնալիս, մենք պետք է հաղթանակ ցանկանանք և կարողանանք ցույց տալ դրա իսկական ուղին[1]։ Մենք հաղթանակ ենք ցանկանում։ Մենք գիտենք դրա ուղին։ Եվ մենք կհասնենք հաղթանակի։ Մենք կհասնենք կոմունիզմին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

***

## ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ՓՈԽԵՑ ԱՇԽԱՐՀԻ ԿԵՐՊԱՐԱՆՔԸ

Ընկերնե՛ր։ Համաշխարհային պատմության ոչ մի իրադարձություն մարդկության համար այնպիսի խոր, տևական հետևանքներ չի ունեցել, որպիսին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Հոկտեմբերյան ամպրոպի փայլատակումները լուսավորեցին շատ երկրների ժողովուրդների ապագայի ճանապարհը։ Պատմությունն առաջ գնաց իրոք յոթմղոնանոց քայլերով։

Մեր դարաշրջանի կերպարանքը բնորոշող՝ Հոկտեմբերի միջազգային հետևանքներից ամենագլխավորը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումն ու զարգացումն է։ (Ծափահարություններ)։ Կար ժամանակ, երբ Հոկտեմբերի հաղթանակից ու միլիոնների մտքերի վրա նրա հզոր ներգործությունից ահաբեկված բուրժուազիան աշխարհի ամեն մի հեղափոխական իրադարձության մեջ փորձում էր փնտրել «Մոսկվայի ձեռքը»։ Հիմա այդ մանկական հեքիաթներին արդեն քչերն են հավատում։ Հեղափոխություններն առաջանում ու հաղթանակում են յուրաքանչյուր տվյալ երկրի ներքին զարգացման բերումով, այդ երկրի ժողովրդի կամքով։ Եվրոպայում, Ասիայում, Ամերիկայում կատարված մի շարք հաղթական սոցիալիստական հեղափոխություններ Հոկտեմբերի գաղափարների ու գործի շարունակությունն էին։ (Երկարատև ծափահարություններ)։

Դրանց շնորհիվ համաշխարհային սոցիալիզմի պրակտիկան ընդլայնվեց, հարստացավ։ Սոցիալիստական ուղիով ընթացող երկրներից յուրաքանչյուրը ինչ-որ բանում յուրովի, առանձնահատուկ ձևով էր լուծում սոցիալիստական պետականության, սոցիալիստական ինդուստրիայի զարգացման, գյուղացիության կոոպերացման, ժողովրդական մասսաների գաղափարական վերադաստիարակման պրոբլեմները։

Անտարակույս, զարգացման տարբեր մակարդակներ և ազգային տարբեր ավանդույթներ ունեցող մյուս ժողովուրդների և երկրների անցումը սոցիալիզմին կառաջացնի սոցիալիստական շինարարության կոնկրետ ձևերի առավել մեծ բազմազանություն։ Դա միանգամայն բնական է։

Սակայն, ինչպես հաստատում է կյանքը, մնում և իրենց ուժը պահպանում են սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական շինարարության ընդհանուր արմատական, անկապտելի հատկանիշները։ (Ծափահարություններ)։

Համաշխարհային սոցիալիզմի զարգացման ամբողջական փորձը մասնավորապես համոզում է, որ.

— Հեղափոխության գլխավոր հարցը առաջվա պես մնում է իշխանության հարցը։ Կա՛մ ամբողջ աշխատավոր ժողովրդի հետ դաշնակցած բանվոր դասակարգի իշխանություն, կա՛մ բուրժուազիայի իշխանություն։ Երրորդը չկա։ (Ծափահարություններ)։

— Անցումը սոցիալիզմին հնարավոր է միայն, եթե բանվոր դասակարգը և նրա դաշնակիցները, տիրելով ռեալ քաղաքական իշխանությանը, այն օգտագործեն կապիտալիստական և այլ շահագործողների սոցիալ-տնտեսական տիրապետությունը վերացնելու համար։

— Սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է, եթե բանվոր դասակարգը և նրա ավանգարդը՝ կոմունիստները, կարողանան ոգևորել, համախմբել աշխատավոր զանգվածներին նոր հասարակություն կառուցելու, էկոնոմիկան և հասարակական բոլոր հարաբերությունները սոցիալիստական հիմունքներով վերափոխելու համար մղվող պայքարում։

— Սոցիալիզմը կարող է հաստատվել միայն այն դեպքում, եթե աշխատավորների իշխանությունը կարողանա հեղափոխությունը պաշտպանել դասակարգային թշնամու ամեն տեսակ գրոհներից (իսկ այդպիսի գրոհներն անխուսափելի են՝ ինչպես ներսից, այնպես էլ, ավելի շուտ՝ դրսից)։

Սրանք սոցիալիզմի ժամանակակից զարգացման մի քանի դասեր են լոկ։ Դրանք կրկին հաստատում են Հոկտեմբերի փորձի միջազգային մեծ նշանակությունը՝ մեր հեղափոխության պայմանների ողջ յուրահատկությամբ հանդերձ։ Դրանք կրկին հաստատում են խոր ճշմարտացիությունը Վ. Ի. Լենինի, որ ասում էր. «Ռուսական օրինակը բոլոր երկրներին ցույց է տալիս ինչ-որ բան, այն էլ չափազանց էական բան, նրանց անխուսափելի և մոտալուտ ապագայից»[1]։ (Ծափահարություններ)։

Բայց համաշխարհային սոցիալիզմն ունի նաև այլ բնույթի փորձ, որը հաստատում է, թե մարքս-լենինյան կուրսից նահանջելը, պրոլետարական

[1] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 9, էջ 56։

[1] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 6։

ինտերնացիոնալիզմից հեռացումը անխուսափելիորեն ձախողումներ և ծանր փորձություններ են դառնում ժողովրդի համար։

Քաջ հայտնի է, թե Չինաստանում ինչպիսի ծանր հետևանքների հասցրին սոցիալիզմի տնտեսական օրենքներն անտեսելու փորձերը, սոցիալիստական երկրների հետ բարեկամությունից և համերաշխությունից հեռանալը, համաշխարհային ասպարեզում ռեակցիայի ուժերին միանալը։ Չին ժողովրդի սոցիալիստական նվաճումները մեծ վտանգի ենթարկվեցին։

Այժմ կապիտալիստական երկրների որոշ գործիչներ բացահայտորեն իրենց հույսերը կապում են այն բանի հետ, որ Չինական Ժողովրդական Հանրապետության և Սովետական Միության, սոցիալիզմի մյուս երկրների միջև եղած այժմյան հակասություններն ու խորթացումը երկար կպահպանվեն և նույնիսկ կսրվեն ապագայում։ Մեզ թվում է, որ դա կարճատև քաղաքականություն է։ Տե՛ս, թե չսխալվեն նրանք, ովքեր այն վարում են։ (Ծափահարություններ)։

Եկեք չգուշակենք, թե ինչպես կդասավորվեն հետագայում սովետա-չինական հարաբերությունները։ Ուզում եմ միայն ասել, որ դրանց նորմալացման մասին մեր բազում առաջարկությունները մնում են ուժի մեջ։

Ընկերնե՛ր։ Արդի աշխարհի կյանքում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեծ ավանդը այն նոր հարաբերություններն են, որպիսիք եղբայրական կուսակցությունների ինտերնացիոնալիստական քաղաքականության շնորհիվ ստեղծվել են սոցիալիստական պետությունների և, ամենից առաջ, սոցիալիստական համագործակցության երկրների միջև։

Մենք կարող ենք մաքուր խղճով ասել. մեր դաշինքը, մեր բարեկամությունը, մեր աշխատակցությունը ընդհանուր նպատակներով ու շահերով, ընկերական համերաշխության և փոխօգնության կապերով համախմբված սուվերեն, իրավահավասար պետությունների դաշինք է, բարեկամություն ու աշխատակցություն։ (Երկարատև ծափահարություններ)։ Մենք ընթանում ենք միասին, օգնելով միմյանց, միավորելով ջանքերը, գիտելիքները, ռեսուրսները հանուն արագ առաջընթացի։ (Ծափահարություններ)։

Մենք վերցրել ենք հումքի, վառելիքի և էներգետիկայի, պարենի, տրանսպորտի պրոբլեմների համատեղ լուծման կուրս։ Գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների բազայի վրա մենք խորացնում ենք մասնագիտացումն ու կոոպերացումը հատկապես մեքենաշինության մեջ։ Մենք այդ խնդիրները կլուծենք հուսալիորեն, խնայողաբար, տևականորեն։ Կլուծենք եղբայրական յուրաքանչյուր երկրի և ամբողջ համագործակցության շահերի ու կարիքների ըմբռնմամբ։ (Ծափահարություններ):

Ընկերնե՛ր։ 1917 թվականի հեռավոր հոկտեմբերին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները մեն-մենակ դուրս եկան ընդդեմ հին աշխարհի՝ ընչաքաղցության, ճնշման ու բռնության աշխարհի։ Նրանք սոցիալիզմ կառուցեցին իմպերիալիզմի թշնամի ուժերով շրջապատված երկրում։ Կառուցեցին ու պաշտպանեցին։ Հիմա մենք մենակ չենք։ Մեր երկիրը դարձել է սոցիալիստական պետությունների մեծ ընտանիքի մի մասը։ (Ծափահարություններ)։ Ուրեմն, կարո՞ղ է, արդյոք, մեզ, սովետական կոմունիստներիս և բոլոր սովետական մարդկանց համար շրջակա աշխարհում լինել որևէ ավելի մոտ բան, քան այդ սոցիալիստական ընտանիքը։ (Ծափահարություններ): Նրա ծաղկման համար, մեր ընդհանուր բարօրության համար մենք անում ենք այն ամենը, ինչ ներում են մեր ուժերը։ (Երկարատև ծափահարություններ)։

Դժվար է գերագնահատել մեր Հոկտեմբերի հսկայական ազդեցությունը ազգային-ազատագրական շարժման զարգացման վրա։

Հոկտեմբերի հաղթանակն իրոք արթնացրեց գաղութային ժողովուրդների գիտակցությունը, օգնեց նրանց՝ հսկայական հաջողությունների հասնելու իմպերիալիզմի ճնշումից ազատագրվելու համար մղած պայքարում։ 1919 թվականին Վ. Ի. Լենինն արդեն գրել էր. «...Արևելքի ժողովուրդների ազատագրությունը գործնականորեն այժմ լիովին իրագործելի է»[1]։

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 178։



Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, ֆաշիզմի դեմ մեր հաղթանակից հետո ավելի քան երկու միլիարդ մարդ թոթափեց գաղութարարների լուծը, հասավ պետական անկախության։ Իմպերիալիզմի գաղութային ողջ սիստեմը՝ իր դասական ձևերով կարելի է արդեն վերացված համարել։ Դա, ընկերնե՛ր, համաշխարհային պատմական նշանակություն ունեցող երևույթ է։ (Երկարատև ծափահարություններ)։

Հույժ կարևոր է, որ ազատագրված շատ պետություններ մերժում են զարգացման կապիտալիստական ուղին և նպատակ ունեն կառուցել շահագործումից զերծ հասարակություն, կողմնորոշվում են դեպի սոցիալիզմը։

Հանձին սոցիալիստական երկրների՝ այդ պետություններն ունեն հավատարիմ և հուսալի բարեկամներ, որոնք պատրաստ են նրանց ցույց տալ հնարավոր օգնություն և աջակցություն՝ զարգանալու պրոգրեսիվ ուղիով։ Ո՛չ միայն բարոյական ու քաղաքական, այլև տնտեսական, կազմակերպական օգնություն, ընդհուպ մինչև պաշտպանության ամրապնդմանն աջակցելը։

Ազատության մարտիկների ուղին դյուրին չէ։ Սոցիալիզմի հասարակական էկոնոմիկայի հիմքերի ստեղծման համար անհրաժեշտ է համառ աշխատանք։ Անխուսափելի են կատաղի գոտեմարտերը շահագործող տարրերի և նրանց օտարերկրյա հովանավորների դեմ։ Դրանք հաճախ հարուցում են զիգզագներ երիտասարդ պետությունների քաղաքականության մեջ և նույնիսկ երբեմն առաջ են բերում ետընթաց շարժում։ Բայց զարգացման գլխավոր ուղղությունն անվիճելի է։ Կյանքում իրենց նպատակներն ու տեղը գիտակցող միլիոնավոր աշխատավորների կամքն է ազգային անկախության և շահագործումից ու ճնշումից ազատ հասարակարգի վերջնական հաղթանակի ամրապնդման հուսալի երաշխիքը։ (Ծափահարություններ)։

Այս ամենը, իհարկե, չի նշանակում, թե իմպերիալիզմը հաշտվել է զարգացման այդպիսի ընթացքի հետ։ Ո՛չ, նախկին գաղութներում նրա դիրքերը երբեմն դեռևս շատ ուժեղ են, և իմպերիալիստները ջանում են ամեն հնարավոր բան անել պահպանելու այդ դիրքերը, իսկ որտեղ կհաջողվի՝ խորացնել և ընդլայնել դրանք։

Նրանց համար այժմ այնքան էլ հեշտ չէ ուղղակի զինված միջամտել ազատագրված պետությունների գործերին։ Այդօրինակ վերջին խոշոր գործողությունը՝ Վիետնամի ժողովրդի դեմ ԱՄՆ-ի պատերազմը, ավարտվեց այնպիսի խորտակիչ և խայտառակ ձախողմամբ, որը չի կարող այլևս առաջ բերել նման արկածախնդրություններ կրկնելու տրամադրություն։ (Երկարատև ծափահարություններ)։

Երիտասարդ երկրներին իմպերիալիստական ռազմական բլոկների մեջ ներքաշելու փորձերն առաջացնում են հարաճուն դիմադրություն։ Դրա վկայություններից մեկը չմիանալու շարժումն է։

Իմպերիալիզմին հազիվ թե օգնեն նաև նախկին գաղութներում իրենց ստեղծած կամ կաշառած հետադիմական վարչակարգերն օգտագործելու փորձերը։ Չէ՛ որ այդ վարչակարգերը չեն կարող ժողովուրդներին առաջարկել ոչինչ, բացի նույն իմպերիալիզմից կախյալ վիճակի նոր ձևերից։

Երբ դեռ Արևելքի երկրներում բարձրանում էին ժողովուրդների ազգային ազատագրական կռվի առաջին ալիքները, Վ. Ի. Լենինը գրում էր. «...Աշխարհում ոչ մի ուժ Ասիայում հին ճորտատիրությունը չի վերականգնի, չի ջնջի աշխարհի երեսից ասիական ու կիսասիական երկրների ժողովրդական մասսաների հերոսական դեմոկրատիզմը»[1]։ (Ծափահարություններ)։ Իսկ այսօր մենք կարող ենք վստահությամբ հայտարարել՝ աշխարհում ոչ մի ուժ չի կարող աշխարհի երեսից ջնջել իմպերիալիզմի նախկին գաղութների և կիսագաղութների բազմամիլիոն մասսաների հերոսական ազատագրական պայքարի արդյունքները։ Ժողովուրդների ազատագրության գործը անհաղթահարելի է, ապագան պատկանում է նրանց։ Հոկտեմբերի վառած լույսը չի խամրի համաշխարհային պատմության այդ ճակատում ևս։ (Երկարատև ծափահարություններ):

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 739։

Ընկերնե՛ր։ Հոկտեմբերի հաղթանակը նոր փուլ բացեց միջազգային բանվորական շարժման պայքարում։

ՍՍՀՄ-ում, իսկ ապա նաև մյուս երկրներում սոցիալիզմի կառուցումը նպաստեց կապիտալի երկրներում պրոլետարիատի քաղաքական հասունության աճին։ Նրա շարքերը դարձան առավել կազմակերպված։ Կազմավորվեց պատմության մեջ մեծ դեր խաղալու կոչված ուժ— միջազգային կոմունիստական շարժումը։ Ընդլայնվեց պրոլետարիատի դաշնակիցների ճակատը ընդդեմ մոնոպոլիաների տիրապետության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Մինչդեռ կապիտալիզմն ավելի ու ավելի ակնբախ է դրսևորվում որպես ապագայից զուրկ հասարակություն։ Նրա էկոնոմիկան խրոնիկական տենդի մեջ է։ Տեխնիկական առաջընթացը ձեռնարկությունների դարպասներից դուրս է շպրտում բանվորների այնպիսի զանգվածներ, որ դա սպառնում է ցնցել ամբողջ սոցիալ-քաղաքական սիստեմը։ Անընդհատ բարձրանում են գները, առաջնային պրոբլեմը մնում է ինֆլյացիան։ Առավել բարձրաստիճան գործիչների քաղաքական մութ մեքենայությունների, նրանց ծախվածության, իշխանության չարաշահումների, օրենքի կոպիտ խախտումների խայտառակ մերկացումները ռումբի պես պայթում են մերթ մեկ, մերթ մյուս երկրում, ցուցադրելով կառավարող դասակարգի այլասերումը։ Հանցագործությունների ռեկորդային աճը լրացնում է պատկերը։ Այս ամենը նշանակում է, որ սոցիալիզմին անցնելու տնտեսական և սոցիալ-քաղաքական օբյեկտիվ նախադրյալները հասել են բարձրագույն աստիճանի։ Կապիտալիստական երկրներում աճում է մասսաների հակումը արմատական փոփոխությունների հանդեպ։

Իհարկե, բուրժուազիան փորձված հակառակորդ է։ Նա փոխում է տակտիկան, մանևրում է։ Մասնակի ռեֆորմների մեթոդներով նա փորձում է ամրապնդել իր դիրքերը, թուլացնել մասսաների ձգտումը սոցիալիզմի նկատմամբ։

Այդ պայմաններում կոմկուսները ջանում են կատարելագործել իրենց հեղափոխական պայքարի ստրատեգիան ու տակտիկան։ Նրանք ձգտում են հասնել դեմոկրատական բոլոր ուժերի համախմբման՝ մոնոպոլիաների տիրապետության դեմ մղվող պայքարում։ Այդ առնչությամբ նրանց տեսական դրույթների մեջ կան հետաքրքրական հարցադրումներ, թեև, հավանաբար, ամեն ինչ չէ, որ կարելի է համարել լիովին մշակված ու անվիճելի։ Եվ դա հասկանալի է. որոնումը մնում է որոնում։ Կարևոր է միայն, որ այն ընթանա ճիշտ ուղղությամբ։

Ինչպիսի երթուղիներ էլ ընտրվեն, վերջին հաշվով, կոմունիստների կոչումն է մասսաներին առաջնորդել դեպի հիմնական նպատակը՝ դեպի սոցիալիզմ։ Հոկտեմբերի հաղթանակի համար մղված պայքարի փորձը ցույց տվեց, որ հեղափոխական գործունեության մեջ միանգամայն հնարավոր են տակտիկայի փոփոխումներ, փոխզիջումներ՝ հանուն նոր դաշնակիցների։ Բայց մենք համոզվել ենք նաև մի ուրիշ բանում. ոչ մի դեպքում չի կարելի սկզբունքները զոհաբերել հանուն տակտիկական շահի։ Այլապես, ինչպես ասում են՝ մազերդ կպահես, բայց գլուխդ կկորցնես։ (Ծիծաղ, ծափահարություններ)։

Որքան մեծ է կոմկուսների ազդեցությունը, այնքան իմպերիալիզմն ակտիվորեն է փորձում կոմունիստներին շեղել ճշմարիտ ուղուց։ Դա արվում է թե՛ կոպտորեն՝ ճնշման, սպառնալիքների մեթոդներով և թե ավելի նրբորեն։ Այժմ բուրժուական երկրների կոմունիստներին երբեմն խոստանում են «ճանաչել» «հասարակության մեջ տեղ գրավելու նրանց իրավունքը». փոխարենը պահանջում են. «դատարկ բան», որ նրանք հրաժարվեն կապիտալի իշխանության դեմ, սոցիալիզմի համար պայքարելուց, դասակարգային ինտերնացիոնալ համերաշխությունից։ Բայց կոմունիստներն արդեն վաղուց նվաճել են իրենց տեղը հասարակության մեջ։ Նվաճել են հենց իրենց հեղափոխական պայքարով։ Հասարակության մեջ նրանց դերը ճանաչված է ժողովուրդների կողմից, և այն խլել ոչ-ոք չի կարող։ (Երկարատև ծափահարություններ)։

Իմպերիալիստները շատ են ուզում խարխլել կոմունիստական շարքերի համախմբվածությունը։ Այդ նպատակով, մասնավորապես, ջանադրաբար փորձում են տարածել այն կեղծ վարկածը, թե իբր սոցիալիզմի երկրների կոմ-



կուսները և հատկապես ՍՄԿԿ-ն Արևմուտքի կոմունիստներին պարտադրում են հասարակության սոցիալիստական վերափոխման իրենց դեղատոմսերը։ Բայց դա բացահայտ կեղծիք է։

Մեր կուսակցությունը, ինչպես մարքս-լենինյան բոլոր կուսակցությունները, հաստատ հետևում են կոմունիստական շարժման հանրահայտ սկզբունքներին— իրավահավասարությանը, անկախությանը, ներքին գործերին չմիջամտելուն, համերաշխությանը և բոլոր երկրների կոմունիստների փոխադարձ աջակցությանը։

Այսօր, նշելով մեր հեղափոխության վաթսունամյակը, մենք՝ Սովետական Միության կոմունիստներս, կրկին հայտարարում ենք, որ միշտ հավատարիմ կլինենք աշխարհի կոմունիստների մեծ եղբայրությանը։ (Բուռն ծափահարություններ)։ Մենք ջերմորեն ամենամեծ հաջողություններն ենք մաղթում կոմունիստական ու բանվորական կուսակցություններին, նրանց դաշնակիցներին, որոնք պայքարում են կապիտալի դիկտատուրայի դեմ՝ հանուն ազատության, խաղաղության և սոցիալական առաջադիմության։ (Ծափահարություններ)։ Դուք միշտ կարող եք վստահ լինել մեր բարեկամությանը, համերաշխությանն ու աջակցությանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Սովետական իշխանությունը ծնունդ առավ հաշտության լենինյան դեկրետի նշանաբանով, և այն ժամանակվանից մեր երկրի ամբողջ արտաքին քաղաքականությունը տոգորված է խաղաղասիրությամբ։ Պատմական օբյեկտիվ պայմաններն են թելադրել նրա կոնկրետ բովանդակությունը— տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության կուրսը։

Մեր օրերում խաղաղ գոյակցության սկզբունքները բավական ամուր արմատավորվել են միջազգային գործերում՝ որպես միակ ռեալիստական և խելացի սկզբունքներ։ Դա աշխարհում ուժերի հարաբերակցության փոփոխման և, առաջին հերթին, սովետական երկրի, ամբողջ սոցիալիստական համագործակցության հզորության և միջազգային հեղինակության աճի արդյունքն է։ Դա նաև միջազգային բանվորական շարժման և ազգային ազատագրության ուժերի ձեռք բերած հաջողությունների արդյունքն է։ Դա, վերջապես, կապիտալիստական աշխարհի կառավարող շրջանների որոշակի մասի կողմից նոր իրողությունների ըմբռնման արդյունքն է։

Դա միաժամանակ այն վիթխարի աշխատանքի արդյունքն է, որ վերջին տարիներս կատարել են Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության մյուս երկրները՝ միջազգային հարաբերությունները խաղաղության ապահովմանը ծառայեցնելու նպատակով։

Աշխարհում կատարված բարեփոխությունները, որոնք հատկապես ակնբախ դարձան 70-ական թվականներին, անվանվեցին միջազգային լարվածության թուլացում։ Այդ փոփոխությունները շոշափելի և կոնկրետ են։ Դրանք երկրների ազնիվ և արդարացի փոխհարաբերությունների կանոնների յուրատեսակ կոդեքսի ճանաչումն ու վավերագրումն են միջազգային փաստաթղթերով, որն իրավական և բարոյաքաղաքական արգելք է ստեղծում ռազմական արկածախնդրությունների սիրահարների ճանապարհին։ Դրանք ձեռք բերված առաջին, թեկուզ առայժմ համեստ, պայմանավորվածություններն են, որոնք փակում են սպառազինությունների մրցավազքի որոշ ուղիներ։ Դրանք արտացոլված են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ համագործակցության շատ բնագավառներ ընդգրկող համաձայնագրերի ճյուղավորված ցանցում։

Կատարված բարենպաստ փոփոխություններն առավել պարզորոշ են երևում Եվրոպայում, որտեղ ամրապնդվում են բարիդրացիական հարաբերությունները, ժողովուրդների հետաքրքրությունն ու հարգանքը, փոխադարձ ըմբռնումը։ Մենք բարձր ենք գնահատում այդ նվաճումը։ Մեր պարտքն ենք համարում ամեն կերպ պահպանել ու ամրապնդել այն։ Ուստի, մենք մեծ նշանակություն ենք տալիս աշխատակցությանը այնպիսի երկրների հետ, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, ԳՖՀ-ն, Անգլիան, Իտալիան, հասարակական այլ սիստեմի պատկանող եվրոպական բոլոր մեծ ու փոքր պետությունները։

Բնական է նաև, որ մենք մեծ նշանակություն ենք տալիս Միացյալ Նա-

հանգների հետ հարաբերություններին: Շատ բանով են բաժանված մեր երկըրները՝ սոցիալ-տնտեսական կացութաձևից մինչև գաղափարախոսություն: ԱՄՆ-ում ամենքին չէ, որ դուր են գալիս մեր կարգերը, մենք ինքներս էլ կարող էինք շատ բան ասել այն մասին, ինչ տեղի է ունենում Ամերիկայում: Բայց եթե շեշտը դնենք տարբերությունների վրա, փորձենք խրատել միմյանց, ապա հետևանքը կլինի սոսկ անվստահության և թշնամության ուժեղացումը, որն անօգուտ է մեր երկու երկրների համար և վտանգավոր ամբողջ աշխարհի համար: Սովետական պետության արշալույսին Լենինն այն ժամանակվա ամերիկյան ղեկավարներին նախազգուշացնում էր, որ անկախ այն բանից, թե «նրանց դուր է գալիս դա թե ոչ, Սովետական Ռուսաստանը մեծ տերություն է», թե «Ամերիկային ոչինչ չի տա մեզ հետ գործ ունենալուց բարեպաշտորեն հրաժարվելու վիլսոնյան քաղաքականությունը, որը հիմնված է այն բանի վրա, որ մեր կառավարությունն իրենց ճաշակով չէ»[1]: Դա արդարացի էր կես դար առաջ: Դա առավել արդարացի է այժմ: (Երկարատև ծափահարություններ):

Կյանքը ինքն է պահանջում, որ սովետա-ամերիկյան հարաբերություններում վճռականը լինեն խաղաղության հոգածությամբ թելադրված տևական բնույթի նկատառումները: Այդ կուրսն ենք վարում մենք. նույն պատասխանին էլ սպասում ենք: Մենք միշտ էլ պատրաստ ենք շարունակելու ԱՄՆ-ի հետ հարաբերությունների զարգացումը հավասարության և փոխադարձ հարգանքի սկզբունքով:

Այժմ միջազգային հարաբերություններն ասես գտնվում են այն ուղիների խաչմերուկում, որոնք կամ մեծացնում են վստահությունն ու զարգացնում աշխատակցությունը, կամ սաստկացնում փոխադարձ վախը, կասկածները, ավելացնում զենքի կուտակումը, ուղիներ, որոնք վերջին հաշվով տանում են կամ դեպի կայուն խաղաղություն, կամ լավագույն դեպքում՝ դեպի հավասարակշռություն պատերազմի եզրին: Լարվածության թուլացումը հնարավորություն է ընձեռում ընտրելու խաղաղության ուղին: Այդ հնարավորությունը ձեռքից բաց թողնելը հանցագործություն կլիներ: Եվ այժմ ամենակարևոր, ամենաանհետաձգելի խնդիրն է դադարեցնել աշխարհը ճարակած սպառազինությունների մրցավազքը: (Երկարատև ծափահարություններ):

Դժբախտաբար, սպառազինությունների մեծացումը շարունակվում է, ընդունում ավելի ու ավելի վտանգավոր ձևեր: Ստեղծվում են,— և քաջ հայտնի է, թե ում նախաձեռնությամբ,— մասսայական ոչնչացման զենքի նոր տարատեսակներ ու տիպեր: Բայց չէ՞ որ յուրաքանչյուր այդպիսի նոր տեսակ մի քանի անհայտով հավասարում է, ընդ որում, ո՛չ միայն ռազմատեխնիկական կամ ստրատեգիական, այլև քաղաքական հետևանքների առումով: Զենքի մի տիպից մյուսին նետվելը, որը հիմնված է ըստ երևույթին դրանց մենաշնորհը պահպանելու միամիտ հաշվենկատության վրա, սոսկ ուժգնացնում է սպառազինությունների մրցավազքը, խորացնում փոխադարձ անվստահությունը, դըժվարացնում զինաթափման միջոցառումների իրականացումը:

Այդ առումով կուզենայի որոշակիությամբ հաստատել այն միտքը, որ արտահայտել եմ նաև առաջ: Սովետական Միությունն արդյունավետ կերպով հոգում է իր պաշտպանության համար, բայց չի ջանում և չի ջանալու հասնել ուրիշ երկրի նկատմամբ ռազմական գերազանցության: Մենք չենք ուզում խախտել ռազմական ուժերի մոտավոր հավասարակշռությունը, որն այժմ ստեղծվել է, ասենք, Կենտրոնական Եվրոպայում, Արևելքի և Արևմուտքի կամ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև: Բայց փոխարենը մենք պահանջում ենք նաև, որ ուրիշ ոչ ոք չձգտի խախտել այդ հավասարակշռությունն իր օգտին: (Ծափահարություններ):

Հասկանալի է, ստեղծված հավասարակշռության պահպանումն ինքնանպատակ չէ: Մենք հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ սպառազինությունների մրցավազքի կորագիծն սկսվի թեքվել ցած, որ աստիճանաբար իջնի ռազմական դիմակայության մակարդակը: Մենք ուզում ենք էապես նվազեցնել, իսկ այնուհետև նաև վերացնել միջուկային պատերազմի սպառնալիքը, որն

[1] Ленинский сборник, т. 37, стр. 254:



ամենաահավոր վտանգն է մարդկության համար: Իրոք այդ է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հանրահայտ առաջարկությունների նպատակը:

Այսօր մենք առաջարկում ենք անել արմատական քայլ. պայմանավորվել, որ բոլոր պետությունները միաժամանակ դադարեցնեն միջուկային զենքի արտադրությունը. բոլոր այդպիսի զենքերը՝ լինեն դրանք ատոմային, ջրածնային թե նեյտրոնային ռումբեր կամ արկեր: Միաժամանակ միջուկային տերությունները կկարողանային պարտավորվել ձեռնամուխ լինել այդ զենքի արդեն կուտակված պաշարների աստիճանական կրճատմանը, առաջ ընթանալով մինչև դրանց լրիվ, «հարյուր տոկոսանոց» վերացումը: Ատոմի էներգիան՝ միայն խաղաղ նպատակների համար— այսպիսի կոչով է դիմում կառավարություններին ու ժողովուրդներին սովետական պետությունն իր 60-ամյակի տարելիցին:

Կա ևս մի կարևոր պրոբլեմ, որն ուղղակի առնչվում է միջուկային պատերազմի սպառնալիքի նվազեցման խնդրին: Խոսքն այն մասին է, որ մինչև վերջ հասցվի միջուկային զենքի փորձարկումների արգելման գործը, որ այդպիսի փորձարկումներ չկատարվեն ո՛չ միայն մթնոլորտում, տիեզերքում ու ջրի հատակում, այլև գետնի տակ: Մենք ուզում ենք առաջ տանել այդ հարցի շուրջ վարվող բանակցությունները, հասցնել դրանք հաջող ավարտի: Ուստի, հայտարարում ենք. մենք պատրաստ ենք պայմանավորվել, որ միջուկային զենքի բոլոր փորձարկումները որոշակի ժամկետով արգելելու հետ մեկտեղ հայտարարվի խաղաղ նպատակներով միջուկային պայթեցումների ընդհատում: Մենք հուսով ենք, որ մեր պարտնյորները բանակցություններում ըստ արժանվույն կգնահատեն ՍՍՀՄ-ի այդ կարևոր քայլը և, այդպիսով, ուղի կհարթվի այն պայմանագրի կնքման համար, որին վաղուց ի վեր սպասում են ժողովուրդները: (Ծափահարություններ):

Սովետական Միությունը վստահորեն է ընթանում խաղաղության ճանապարհով: Մենք ակտիվ և հաստատակամ հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ ոչ թե ռազմի դաշտում, ոչ թե սպառազինությունների կոնվեյերներում լուծվի սոցիալիզմի և կապիտալիզմի վեճը, այլ խաղաղ աշխատանքի ոլորտում: Մենք ուզում ենք, որ այդ երկու աշխարհները բաժանող սահմաններով անցնեն ոչ թե միջուկալիցք հրթիռների տրասաները, այլ ձգվեն լայն ու բազմակողմանի համագործակցության թելերը՝ ի բարօրություն ողջ մարդկության: (Ծափահարություններ): Հետևողականորեն վարելով այդ քաղաքականությունը, մենք կատարում ենք Հոկտեմբերի ամենագլխավոր լոզունգներից մեկը, Լենինի պատգամներից մեկը՝ խաղաղությո՜ւն ժողովուրդներին: (Ծափահարություններ):

Եթե հաջողվի լուծել գլխավոր խնդիրը՝ նոր համաշխարհային պատերազմի կանխման, կայուն խաղաղության ապահովման խնդիրը, ապա դա նոր, հիանալի հեռանկարներ կբացի երկրագնդի բնակիչների առջև: Նախադրյալներ կստեղծվեն մեր ժամանակներում ամբողջ մարդկության առջև ծառացող կենսականորեն կարևոր շատ այլ պրոբլեմների լուծման համար:

Ի՞նչ պրոբլեմներ են դրանք:

Այդ, օրինակ, մարդկանց հսկայական զանգվածներին պարենով, հումքով, էներգիայի աղբյուրներով ապահովելու անհրաժեշտությունն է: Չէ՞ որ, ըստ հաշվարկների, աշխարհի բնակչությունը դարի վերջին չորս միլիարդից կհասնի վեց միլիարդի: Այդ, այնուհետև, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների՝ գաղութատիրությունից ծնված տնտեսական հետամնացության հաղթահարումն է, որն անհրաժեշտ է ապագայում պետությունների հարաբերությունների նորմալ զարգացման համար և, ընդհանրապես, ողջ մարդկության առաջընթացի համար: Այդ, վերջապես, մարդու պաշտպանությունն է այն բազմաթիվ վտանգներից, որ նրան սպառնում է հետագա չվերահսկվող տեխնիկական զարգացումը, այլ կերպ ասած, բնության պահպանումը մարդու համար:

Դրանք միանգամայն ռեալ և շատ լուրջ պրոբլեմներ են: Ամեն մի նոր տասնամյակի հետ առավել հրատապ կդառնան դրանք, եթե միջազգային պլանաչափ աշխատակցությամբ չգտնվի դրանց խելացի կոլեկտիվ լուծումը:

Մեր ժամանակներում աշխարհը սոցիալապես միատարր չէ, այն բաղկա-



2. «Լենինյան ուղիով», № 11



ցած է տարբեր հասարակարգ ունեցող պետություններից։ Սա է օբյեկտիվ փաստը։ Աշխարհի սոցիալիստական մասն իր ներքին զարգացմամբ և միջազգային հարաբերությունների նկատմամբ իր վերաբերմունքով լավագույնս ցույց է տալիս, թե ինչ միջոցներով կարելի է ամենից լավ լուծել մարդկության առջև ծառացող մեծ պրոբլեմները։ Բայց ամբողջ մարդկության փոխարեն դրանք լուծել նա, իհարկե, չի կարող։ Այստեղ անհրաժեշտ են յուրաքանչյուր երկրի ժողովրդի նպատակասլաց ջանքերը, անհրաժեշտ է բոլոր երկրների, բոլոր ժողովուրդների լայն ու կոնստրուկտիվ աշխատակցությունը։ Սովետական Միությունն ամբողջովին հանդես է գալիս այդպիսի համագործակցության օգտին։ Դրանում է, եթե ավելի խոր նայենք, արտաքին քաղաքական այն կուրսի բովանդակությունը, որը մենք անվանում ենք խաղաղ գոյակցության կուրս։

Ընկերնե՛ր, բարեկամնե՛ր։ Հոկտեմբերի նվաճումները, սոցիալիզմի կարողությունները մեր ժամանակներում մարդկության հետագա առաջընթացի ամենահուսալի գրավականն են։ Հոկտեմբերը մեծ փոփոխությունների այն դրոշն է, որ բարձրացված է քսաներորդ դարի վրա աշխատավոր մասսաների կամքով ու ձեռքով։ (Ծափահարություններ)։

Մենք գնում ենք դեպի այն դարաշրջանը, երբ սոցիալիզմն իր այս կամ այն կոնկրետ, պատմականորեն պայմանավորված ձևով կդառնա գերիշխող հասարակական սիստեմն աշխարհում, իր հետ խաղաղություն, ազատություն, հավասարություն և բարեկեցություն բերելով ողջ աշխատավոր մարդկությանը։ (Ծափահարություններ)։

Եվ դա ուտոպիա չէ, գեղեցիկ երազանք չէ։ Դա ռեալ հեռանկար է։ Ձեզ հետ միասին, ընկերնե՛ր, այն ամեն օր մոտեցնում ենք մենք մեր աշխատանքով ու պայքարով, մոտեցնում են մեր միլիոնավոր ժամանակակիցները՝ իրենց աշխատանքով ու պայքարով։ Այդ է Հոկտեմբերյան հեղափոխության սկսած գործի շարունակությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Եկեք, ուրեմն, միշտ հավատարիմ լինենք մեծ Հոկտեմբերի դրոշին, հեղափոխության ալ դրոշին։ (Բուռն ծափահարություններ)։

Թո՛ղ աշխարհի վրա ավելի ու ավելի պայծառ շողշողա մարքս-լենինյան անմահ գաղափարների լույսը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՛ մեր մեծ կուսակցությունը՝ Լենինի կուսակցությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Առա՛ջ դեպի կոմունիզմի հաղթանակը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում։ Դահլիճում հնչում են կեցցենե՛ր ի պատիվ ՍՄԿԿ-ի, նրա Կենտրոնական կոմիտեի, «ուռա՛» բացականչություններ)։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության փառապանծ վաթսունամյակի օրը Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը և սովետական կառավարությունը ջերմորեն ու սրտանց շնորհավորում են ձեզ, թանկագին հայրենակիցնե՛ր, մեծ տոնի առթիվ և մաղթում ձեզ ստեղծագործական նոր մեծագործություններ աշխատանքում, ուսման, զինվորական ծառայության մեջ, մաղթում ուրախություն ու երջանկություն կյանքում:

Հոկտեմբերի հոբելյանը սովետական ժողովուրդը դիմավորում է քաղաքական և աշխատանքային վիթխարի վերելքի պայմաններում, որպես ազատ աշխատանքի, սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակների տոն: Հազարավոր արտադրական կոլեկտիվներ, միլիոնավոր աշխատավորներ հնգամյակի երկու տարվա առաջադրանքները կատարեցին մինչև 1977 թվականի նոյեմբերի 7-ը: Փա՜ռք ու պատիվ աշխատանքի հերոսներին, հնգամյակի գվարդիականներին:

1917 թվականի հոկտեմբերին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները, հեղափոխական մտքի ու գործի հանճար Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, տապալեցին շահագործողների տիրապետությունը և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը: Հոկտեմբերյան հեղափոխությունն արմատապես փոխեց մեր հայրենիքի ճակատագիրը: Ազդարարեց մարդկության զարգացման նոր, կոմունիստական էրայի սկիզբը: Հոկտեմբերի վաթսունամյակը մեզ հետ մեկտեղ նշում են եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդները, ամբողջ առաջադեմ մարդկությունը:

Հեղափոխության և քաղաքացիական պատերազմի բոցաշունչ տարիներին, սոցիալիստական շինարարության ընթացքում, ֆաշիզմի դեմ մղված կատաղի ճակատամարտերում սովետական մարդիկ դրսևորեցին մեծագույն նվիրվածություն կոմունիզմին, անօրինակ արիություն, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի վեհ զգացումներ: Պատմության մեջ առհավետ կմնան հեղափոխության հերոսների, հնգամյակների հարվածայինների, հայրենիքի խիզախ պաշտպանների, բոլոր նրանց սխրանքները, ովքեր իրենց ուժերը և կյանքն իսկ չխնայեցին հանուն նրա բարգավաճման, հանուն ժողովրդի ազատության ու երջանկության:

Սովետական մարդկանց անձնվեր պայքարով և անխոնջ ջանքերով ստեղծված է հզոր պետություն՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: Կառուցվել է հզոր, պլանաչափորեն աճող էկոնոմիկայի, ժողովրդի բարեկեցության ու կուլտուրայի անշեղ վերելքի, բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնության, ազգերի և ազգությունների անխախտ բարեկամության հասարակություն, աշխատավոր մարդկանց իսկական ազատության հասարակություն:

Երկրի պատմական հաղթանակները օրենսդրականորեն ամրակայեց ՍՍՀՄ Սահմանադրությունը՝ աշխարհում առաջին սոցիալիստական համաժողովրդա-

կան պետության հիմնական օրենքը: «Նոր Սահմանադրությունը,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը,— կարելի է ասել, սովետական պետության ամբողջ վաթսունամյա զարգացման խտացված արդյունքն է: Այն վառ կերպով վկայում է, որ Հոկտեմբերի հռչակած գաղափարները, Լենինի պատգամները հաջողությամբ են կենսագործվում»: Սահմանադրությունն արտահայտեց բանվորների, գյուղացիների, մտավորականության, մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների կամքն ու շահերը: Այն կոմունիզմի կառուցման դարաշրջանի իսկական մանիֆեստն է:

Միահամուռ հավանություն տալով Սահմանադրությանը՝ մեր ժողովուրդը նոր ուժով հաստատեց, որ ինքն ամբողջովին ու լիովին պաշտպանում է սովետական պետության, կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Լենինի մեծ գործի հավատարիմ շարունակող, խաղաղության և սոցիալական առաջադիմության ականավոր մարտիկ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած քաղբյուրոյի նպատակասլաց, բեղմնավոր գործունեությունը:

Շարունակելով Հոկտեմբերի գործը, իրականացնելով կուսակցության լենինյան կուրսը՝ մեր երկիրն ակնբախ հաջողությունների է հասել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Վերջին տասնամյակում կրկնապատկվել է երկրի արդյունաբերական պոտենցիալը, նոր բարձունքի է հասել գյուղատնտեսությունը, զգալիորեն բարձրացել է ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը:

Սովետական հասարակության ամբողջ կյանքն ընթանում է ՍՄԿԿ XXV համագումարի գաղափարների ոգեշնչող ներգործության տակ: Սովետական ժողովուրդը խոր լավատեսությամբ է նայում գալիքին: Հաջողությամբ լուծվում են պատմական հսկայական կարևորություն ունեցող խնդիրներ, ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, կատարելագործվում են սոցիալիստական հասարակական հարաբերությունները, բարելավվում են հասարակության անդամների համակողմանի զարգացման պայմանները:

Առաջնորդվելով մարքսիզմ-լենինիզմի անմահ ուսմունքով և զարգացնելով այն, մեր կուսակցությունը վստահորեն հարթում է ապագայի ուղին: Լենինի դրոշով, կուսակցության ղեկավարությամբ մենք ստեղծել ենք զարգացած սոցիալիստական հասարակություն, կառուցում ենք և կկառուցենք կոմունիզմ: Ամրապնդվում է կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը՝ մեր բոլոր հաղթանակների աղբյուրը, կոմունիզմի լիակատար հաղթանակի երաշխիքը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը, ռեալ սոցիալիզմի կենդանի օրինակը խորապես ներգործում են համաշխարհային պատմության ընթացքի վրա: Մեզ հետ միասին են ընթանում եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդները: Համաշխարհային սոցիալիզմը վերածվել է արդիականության հզոր ուժի, հանդիսանում է ժողովուրդների ազատության, խաղաղության և միջազգային անվտանգության գործի պատվարը: Կապիտալի դեմ դասակարգային գոտեմարտերում աճում են միջազգային բանվոր դասակարգի դերն ու համախմբվածությունը: Աշխատավորների պայքարի ավանգարդում ընթանում են կոմունիստական ու բանվորական կուսակցությունները: Իմպերիալիզմի դիրքերը թուլացրած սոցիալիզմի հաղթանակների պայմաններում, ազգային-ազատագրական շարժման հարվածների տակ փուլ եկավ գաղութային ստրկության սիստեմը, շատ ժողովուրդներ կանգնում են հասարակության սոցիալիստական վերակառուցման ուղու վրա: Հոկտեմբերի գործը ոգեշնչում է նորանոր միլիոնավոր հեղափոխական մարտիկների: Այդ գործն ապրում ու հաղթանակում է, նրան է պատկանում ապագան:

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը սոցիալիզմի եղբայրական երկրների հետ բոլոր հեղափոխական, խաղաղասեր ուժերի աջակցությամբ հաստատակամ պայքար են մղում խաղաղության պահպանման ու ամրապնդման համար, սոցիալական առաջադիմության համար: Մենք այսուհետև ևս ամեն անհրաժեշտ բան կանենք խաղաղ պայմաններ ապահովելու մեր երկրում կոմունիզմի կառուցման համար, տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների հաստատման, նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքի կանխման համար:



Փառապանծ հոբելյանի օրը մենք դիմում ենք բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, ժողովրդական մտավորականությանը, աշխատավոր կանանց, սովետական զինված ուժերի քաջարի ռազմիկներին, մեր երիտասարդությանը՝ ջերմորեն կոչ անելով այսուհետև ևս ըստ արժանվույն շարունակել Հոկտեմբերի գործը, անդուլ ամրապնդել մեծ հայրենիքի հզորությունը, ՍՍՀ Միության ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը:

Մենք կոչ ենք անում է՛լ ավելի բարձր պահել տասներորդ հնգամյակի պլանները հաջողությամբ կատարելու, արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության դրոշը:

Մենք բոլոր աշխատավորներին կոչ ենք անում հաստատակամորեն հասնել աշխատանքի արտադրողականության անշեղ աճի, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, ավելի լայնորեն արմատավորել արտադրության առաջավորների փորձը, պայքարել հողի, հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, մետաղի, սարքավորումների, բոլոր նյութերի, աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեի ռացիոնալ օգտագործման համար:

Մենք բոլոր քաղաքացիներին կոչ ենք անում ամրապնդել ու զարգացնել սոցիալիստական ապրելակերպը, յուրաքանչյուր սովետական մարդու համակել բարձր գաղափարայնությամբ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքով, սովետական հայրենասիրությամբ և ինտերնացիոնալիզմով: ՍՍՀՄ Սահմանադրության անշեղ պահպանումը, իրենց համաժողովրդական պետության գործերին աշխատավորների ավելի ու ավելի լայն մասնակցությունը, քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների, ազատության և հասարակության հանդեպ նրանց պատասխանատվության օրգանական զուգակցումը մեր նոր հաղթանակների երաշխիքն են:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հաստատ վստահություն են հայտնում, որ լենինյան կոմունիստական կուսակցության շուրջը սերտորեն համախմբված սովետական մարդիկ նոր հաջողությունների կհասնեն կոմունիստական շինարարության ասպարեզում:

Կեցցե՛ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը:

Կեցցե՛ խաղաղությունը և ժողովուրդների բարեկամությունը:

Թող ամրապնդվի՛ ու բարգավաճի մեր հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Կեցցե՛ կոմունիզմ կառուցող հերոսական սովետական ժողովուրդը:

Փա՛ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ մեծ Լենինի կուսակցությանը:

**ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

**ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏ**

**ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

# ԱՇԽԱՐՀԻ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻՆ, ՊԱՌԼԱՄԵՆՏՆԵՐԻՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հանդիսավոր տոնակատարության օրերին Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը և սովետական կառավարությունը աշխարհի բոլոր երկրների ժողովուրդներին, պառլամենտներին ու կառավարություններին են դիմում խաղաղության և բարի կամքի ուղերձով:

Վեց տասնամյակ առաջ Ռուսաստանում, երկու մայրցամաքների՝ Եվրոպայի և Ասիայի հողում, կատարվեց սոցիալիստական հեղափոխություն, և սկսվեց մարդկության նվիրական երազանքի՝ այնպիսի հասարակության կառուցման կենսագործումը, որտեղ աշխատանքն ազատ է շահագործումից, որտեղ տիրում է սոցիալական արդարություն, որտեղ ազգային երկպառակության փոխարեն հաղթանակել է ժողովուրդների բարեկամությունը:

Հանդուգն, անօրինակ էր այն գործը, որին ձեռնամուխ եղան մեր ժողովուրդը, մեր կուսակցությունը: Այսօր, վաթսուն տարի անց, պարզ երևում է. 1917 թվականի հոկտեմբերին Ռուսաստանի բանվոր դասակարգը, աշխատավորները, բոլշևիկների կուսակցության առաջնորդությամբ, մեծ Լենինի գլխավորությամբ, ճիշտ ուղիով ընթացան դեպի նոր կյանք: Այդ բոցաշունչ հեղափոխականները եղան նոր հասարակության խորաթափանց ճարտարապետները:

Առաջին սոցիալիստական հեղափոխության դեմ ոտքի ելան հին աշխարհի բոլոր հետադեմ ուժերը: Հրով ու սրով, սովով և շրջափակմամբ նրանք փորձում էին խորտակել մեր հեղափոխությունը, մարել այն ջահը, որ լուսավորեց ողջ աշխարհը: Իմպերիալիզմի, ռեակցիայի և ֆաշիզմի ուժերի դեմ կատաղի գոտեմարտերում, հսկայական կորուստների, դաժան փորձությունների և զրկանքների գնով մեր ժողովուրդը պաշտպանեց իր ազատությունն ու անկախությունը, Հոկտեմբերի նվաճումները, սոցիալիզմի ապագան:

Սովետական ժողովրդի տիտանական ջանքերը, նրա զոհաբերությունները, նրա անսասան վճռականությունը տվեցին իրենց պտուղները: Մենք կառուցեցինք զարգացած սոցիալիստական հասարակություն: Մենք ստեղծեցինք աշխարհում առաջին այն պետությունը, որտեղ հուսալիորեն պաշտպանված են աշխատավորների արմատական շահերը, գործնականում և լիովին երաշխավորված են յուրաքանչյուր ազգի և ազգության, յուրաքանչյուր քաղաքացու իրավունքներն ու ազատությունները: Սովետական պետության վաթսունամյա զարգացման խտացված արդյունքը ՍՍՀՄ նոր Սահմանադրությունն է:

Սովետական ժողովուրդը հպարտանում է իր նվաճումներով: Այսօր մենք մեր առջև նոր, է՛լ ավելի վեհ նպատակներ ենք դնում և լավ ենք հասկանում այն պրոբլեմների բարդությունը, որոնք պետք է լուծվեն: Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության շուրջը սերտորեն համախմբված սովետական մարդիկ վստահորեն ընթանում են դեպի կոմունիստական այն իդեալի լրիվ իրականացումը, որը մարմնավորում է խաղաղություն, աշխատանք, ժողովուրդների ազատություն, հավասարություն, եղբայրություն ու երջանկություն:

Նրանք, ովքեր 1917 թվականի Հոկտեմբերին գնում էին կոմունիստների կուսակցության, Լենինի հետևից, հետևողական ինտերնացիոնալիստներ էին: Նրանք պայքարում էին ո՛չ միայն իրենց ժողովրդի երջանկության համար: Հոկտեմբերյան հեղափոխությունը արմատապես շրջեց համաշխարհային պատմության ընթացքը: Սովետների երկրից անմիջապես հետո սոցիալիզմի ու սոցիալիստական կողմնորոշման ճանապարհն ընտրեցին նաև Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի և Աֆրիկայի ուրիշ երկրներ: Քաղաքական և սոցիալ-տնտեսական խոշոր հաջողությունների հասան միջազգային բանվորական շարժումը և ազգային-ազատագրական շարժումը: Ջախջախվեց գաղութային սիստեմը, մեծ ու փոքր ժողովուրդները վստահություն ձեռք բերեցին իրենց ուժերի նկատմամբ, սեփական բախտի տերը լինելու իրենց անկապտելի իրավունքի նկատմամբ: Ընդլայնվում, ամրապնդվում է համադեմոկրատական շարժումը: Ավելի ու ավելի բարձր է լսվում խաղաղասեր ուժերի, առաջադեմ երիտասարդության ու կանանց ձայնը:

Մենք ի սրտե, եղբայրաբար ողջունում ենք սոցիալիստական երկրների ժողովուրդներին, որոնց հետ զոդված ենք նպատակների և իդեալների ընդհանրությամբ, անխախտ բարեկամության կապերով:

Մենք ջերմորեն ողջունում ենք գաղութատիրությունից ազատագրված և ազգային վերածննդի ու սոցիալական առաջադիմության ուղին բռնած ժողովուրդներին: Մենք խորապես համերաշխ ենք այն ժողովուրդների հետ, որոնք շարունակում են հերոսական պայքարը իրենց ազատության և անկախության համար: Մենք ողջույն ենք հղում կապիտալիստական երկրների մեր աշխատավոր եղբայրներին, որոնք պայքարում են իրենց կենսական իրավունքների ու շահերի համար:

Հետհոկտեմբերյան վեց տասնամյակներում մարդկությունը շատ է առաջ գնացել: Աննախանչելիորեն փոխվել է աշխարհը: Բայց այսօր էլ մարդկության առջև շատ սուր պրոբլեմներ են ծառացած, որոնք սպասում են իրենց լուծմանը:

Մարդկային հանճարի նվաճումները, գիտատեխնիկական առաջընթացի անսահման հնարավորություններն այժմ կարող են յուրաքանչյուր ժողովրդի, յուրաքանչյուր ընտանիքի, յուրաքանչյուր մարդու համար ապահովել արժանավայել կյանք: Մինչդեռ շատ երկրների մարդկանց հսկայական զանգվածների բաժինն են մնում սովը, աղքատությունը, հիվանդություններն ու անգրագիտությունը, իրավազրկությունն ու վաղվա օրվա նկատմամբ վախը, թշվառ ծերությունը:

Միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ դատապարտված են գործազրկության, զրկված են բնական իրավունքից՝ աշխատանքի իրավունքից: Մեր մոլորակի վրայից դեռ չեն ոչնչացվել գաղութատիրության, ֆաշիզմի և ռասիզմի մնացորդները: Եվ, վերջապես, գլխավորը՝ չի վերացվել համաշխարհային նոր պատերազմի վտանգը, չի վերացվել ջերմամիջուկային աղետի սպառնալիքը:

Սովետական պետության դրոշի վրա նրա ծննդյան ժամին գրվեց խաղաղության կոչը: Եվ ահա արդեն վեց տասնամյակ է, որ նա ամեն ինչ անում է խաղաղությունը պահպանելու համար: Խաղաղության համար, սպառազինությունների մրցավազքի դեմ, ընդհանուր և լրիվ զինաթափման համար մղվող անշեղ պայքարը՝ սովետական արտաքին քաղաքականության այս ազնիվ նպատակներն ամրակայված են ՍՍՀՄ Սահմանադրության մեջ: Այսպիսին է մեր ժողովրդի կամքը, որը լավ գիտե թե՛ «տաք» պատերազմի գինը, թե՛ «սառը» պատերազմի գինը:

Վերջին տարիներս բոլոր նրանց ընդհանուր ջանքերով, ում համար թանկ է խաղաղությունը, հաջողվեց միջազգային հարաբերություններում շրջադարձ կատարել առճակատումից դեպի լարվածության թուլացում, փոխ-

ըմբռնում և իրավահավասար համագործակցություն: Բայց բարեհոգության համար հիմքեր չկան:

Լարվածության թուլացման ճանապարհին նոր լուրջ խոչընդոտներ են հարուցվում: Խելացնոր կերպով արագացվում է սպառազինությունների մրցավազքը, որը ծայրահեղ վտանգավոր է դառնում: Միլիտարիզմը ո՛չ միայն խժռում է վիթխարի ռեսուրսներ, այլև իրական սպառնալիք է ստեղծում ամբողջ մարդկության համար:

Ծանր է պատասխանատվությունը նրանց, ովքեր ճշմարտության փոխարեն սուտ են սերմանում, բարեկամության փոխարեն՝ թշնամանք: Ովքեր խաղաղության քաղաքականության փոխարեն նորից քաշում են դեպի «սառը պատերազմը», մարդկությանը հրում դեպի միջուկային աղետ: Մեր դարում խաղաղ գոյակցությունը չունի և չի կարող այլ ընտրանք ունենալ:

Մենք դիմում ենք բոլոր երկրների ժողովուրդներին, պառլամենտներին ու կառավարություններին՝ կոչ անելով ամեն ինչ անել սպառազինությունների մրցավազքը կասեցնելու, մասսայական ոչնչացման նոր միջոցների ստեղծումն արգելելու, սպառազինությունների և զինված ուժերի կրճատման, զինաթափման ձեռնամուխ լինելու համար:

Մենք կոչ ենք անում հաստատակամորեն հասնել պայթունավ կոնֆլիկտների շուտափույթ և արդարացի կարգավորման, միջազգային լարվածության բոլոր օջախների վերացման:

Բոլոր երկրների ժողովուրդնե՛ր, աշխատավորնե՛ր, բարյացակամ մարդի՛կ: Խաղաղությունը, լարվածության թուլացումը, սոցիալական պրոգրեսը ընդհանուր կենսական գործ են: Համախմբվածությամբ ու վճռականությամբ է պայմանավորված հաջողությունը: Պատերազմի և հետադիմության ուժերը կնահանջեն խաղաղության միավորված կամքի առաջ: Հարկավոր է ստիպել, որ նրանք նահանջեն:

260-միլիոնանոց սովետական ժողովրդի անունից մենք հանդիսավոր կերպով հայտարարում ենք.

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետը, սովետական կառավարությունը, մեր ամբողջ ժողովուրդը հետայսու ևս ամենայն վճռականությամբ կձգտեն հասնել խաղաղության և խաղաղ գոյակցության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման, դրանց կրճատման՝ ընդհուպ մինչև միջազգային խիստ վերահսկողության ներքո ընդհանուր և լրիվ զինաթափումը:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետը, սովետական կառավարությունը, մեր ամբողջ ժողովուրդը առաջիկայում ևս կսատարեն նրանց, ովքեր պաշտպանում են ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, ովքեր հանդես են գալիս հանուն հումանիզմի և սոցիալական արդարության ազնիվ իդեալների:

Սովետական Միությունը, հավատարիմ լենինյան պատգամներին, այսուհետ ևս հետևողականորեն կընթանա խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի կուրսով:

**ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

**ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏ**

**ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

# ՊԱՏՄԱԿԱՆ ԲՆԱԳԻԾ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՀՈԴՎԱԾԸ «ՊՐՈԲԼԵՄԻ ՄԻՐԱ Ի ՍՈՑԻԱԼԻԶՄԱ» ԱՄՍԱԳՐՈՒՄ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսուներորդ տարին առանձնահատուկ տեղ կգրավի Սովետական Միության պատմության մեջ: Այդ ընդունման տարին է ՍՍՀՄ նոր Սահմանադրության, որում արտացոլված են Հոկտեմբերի հաղթանակից հետո կուսակցության ու ժողովրդի հեղափոխական-վերակերտիչ ողջ գործունեության արդյունքները և տրված է հետագա կոմունիստական շինարարության հստակ հեռանկարը:

ՍՍՀՄ նոր Հիմնական օրենքը աշխատավորների ամենալայն զանգվածների ստեղծագործության արդյունքն է: Այն մարմնավորում է նրանց փորձը, գիտելիքներն ու կամքը, հոգածությունը սոցիալիստական հայրենիքի բարգավաճման, նրա միջազգային հեղինակության աճի համար:

Սահմանելով սոցիալիստական պետության կառուցման հիմնական սկզբունքները՝ մեծ Լենինն ասում էր, որ նրա Սահմանադրությունը «խտացնում է այն, ինչ արդեն տվել է կյանքը, և կուղղվի ու կլրացվի պրակտիկ կենսագործման միջոցով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 26): Զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը, աշխարհում առաջին համաժողովրդական պետության ստեղծումն է այն գլխավորը, որ տվել է կյանքը մեր ժողովրդին սովետական նախորդ Սահմանադրության ուժի մեջ մտնելուց հետո անցած ավելի քան քառասուն տարիների ընթացքում:

1.

Զարգացած սոցիալիստական հասարակությունը նոր կարգի սոցիալ-տնտեսական հասունության օրինաչափ աստիճանն է կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի շրջանակներում: Դա, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, այն լիովին ամրապնդված սոցիալիզմն է, որից սկսվում է աստիճանական անցումը կոմունիզմին: Սոցիալիզմի զարգացման հենց այդպիսի աստիճանի է հասել մեր երկիրը:

Երբ մարքսիզմ-լենինիզմի կլասիկները, բարձրացնելով ժամանակի վարագույրը, նշում էին սոցիալիզմի և կոմունիզմի ուրվագծերը, նրանք չափազանց զգույշ էին: Ուտոպիայի ոչ մի նշույլ: Ոչ մի երևակայություն: Միայն այն, ինչ կարող է գիտականորեն ապացուցվել— զարգացման հիմնական տենդենցները, գլխավոր, սկզբունքային բնութագրերը: Տեսականորեն պարզ էր, որ անցումը կապիտալիզմից կոմունիզմին կընդգրկի պատմական մի տևական շրջան, որ նոր հասարակարգը հասունության մի աստիճանից կբարձրանա մյուսին: Բայց կոնկրետ ինչպիսին կլինեն այդ աստիճանները՝ նախօրոք չէր կարելի իմանալ: Ֆ. Էնգելսը գրում էր, որ կոմունիստական հասարակարգին անցնելու փուլերի հարցը «ամենադժվարինն է գոյություն ունեցող բոլոր հարցերից» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 38, стр. 108):

Առաջին անգամ Լենինին, Ռուսաստանի կոմունիստներին վիճակվեց պատասխանել այդ հարցին: Հասկանալի է, որ Լենինի ուշադրությունն ամենից առաջ գամված էր այն ժամանակաշրջանի անմիջական խնդիրներին, նոր հասարակարգի հիմքերի ստեղծմանը: Բայց հանճարի միտքը միշտ առաջ է անցնում իր դարաշրջանից: Արդեն սովետական իշխանության արշալույսին Լենինը խոսում էր «պատրաստի», «լրիվ», «զարգացած» սոցիալիզմի մասին՝ որպես հեռանկարի, սկսված սոցիալիստական շինարարության նպատակի մասին: Լենինյան հենց այդ գաղափարներն իսկ դրվեցին զարգացած սոցիալիստական հասարակարգի կոնցեպցիայի հիմքում, որը մշակվել է ՍՄԿԿ-ի, մյուս եղբայրական կուսակցությունների կոլեկտիվ ջանքերով:

ՍՍՀՄ-ի, սոցիալիստական համագործակցության մյուս երկրների փորձը

վկայում է, որ սոցիալիզմի հիմքերի ստեղծումը, այսինքն՝ շահագործող դասակարգերի վերացումը և արտադրամիջոցների հանրային սեփականության հաստատումը ժողովրդական տնտեսության բոլոր սեկտորներում դեռևս հնարավորություն չի ընձեռում սկսելու անմիջական անցումը կոմունիզմին: Նախ պետք է անցած լինեն սոցիալիզմի զարգացման որոշակի փուլեր՝ սեփական հիմքի վրա: Ընդ որում, պրակտիկան ցույց է տվել, որ սոցիալիզմի զարգացումը, կատարելագործումը պակաս բարդ, պակաս պատասխանատու խնդիր չէ, քան նրա հիմքերի ստեղծումը:

Ակնհայտ է, որ հասուն սոցիալիստական հասարակարգը պետք է հենվի բարձր զարգացած արտադրուժերի, հզոր, առաջավոր ինդուստրիայի, կոլեկտիվիստական սկզբունքների վրա խարսխված բարձր մեքենայացված խոշոր գյուղատնտեսության վրա: Հենց այդպիսին է այժմ սովետական էկոնոմիկան, որը և՛ մասշտաբներով, և՛ տեխնիկական հագեցվածությամբ արմատապես տարբերվում է այն էկոնոմիկայից, որ մենք ունեինք չորս տասնամյակ առաջ, երբ մեզ մոտ արդեն հաղթանակել էին սոցիալիստական արտադրահարաբերությունները քաղաքում և գյուղում:

Այդ ժամանակամիջոցում հասարակական համախառն արդյունքի ծավալը աճել է 18 անգամ, աշխատանքի էներգազինվածությունը արդյունաբերության մեջ՝ գրեթե 8, իսկ գյուղատնտեսության մեջ՝ ավելի քան 15 անգամ: Մեր այսօրվա էկոնոմիկան անհնար է պատկերացնել առանց ատոմային էներգետիկայի, էլեկտրոնիկայի, հաշվողական տեխնիկայի, կիսահաղորդիչ նյութերի արտադրության և ինդուստրիայի շատ այլ ճյուղերի, որպիսիք մենք չունեինք 1936 թվականին: Արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում ավելի քան եռապատկվել է ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացն ու արդյունավետությունը պայմանավորող ճյուղերի բաժինը:

Սոցիալիստական շինարարության սկզբնական փուլերում սովետական մարդիկ ստիպված էին իրենց ռեսուրսներն ու ջանքերը կենտրոնացնել ամենաառաջնահերթ խնդիրների լուծմանը, այն բանի վրա, որից կախված էր մեր պետության բուն գոյությունը: Իսկ այժմ, զարգացած սոցիալիզմի պայմաններում, ողջ ժողովրդական տնտեսության անընդմեջ աճի, հասարակության սոցիալիստական կազմակերպման առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության միացման հիման վրա հնարավոր եղավ էկոնոմիկայի նկատելի շրջադարձը դեպի մարդկանց նյութական ու կուլտուրական բազմապիսի պահանջմունքների առավել լրիվ բավարարում: Այլ կերպ ասած, այժմ սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակը ուղղակի ու անմիջականորեն դրվում է կուսակցության պրակտիկ քաղաքականության կենտրոնում: Դրանով իսկ առավել լրիվ ու վառ են բացահայտվում սոցիալիզմի՝ որպես արտադրաեղանակի և ապրելակերպի պատմական առավելությունները, դրա իսկական մարդասիրական էությունը:

Փոխվել, անհամեմատ ավելի բարձրացել է սովետական մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր մակարդակը: Նրանց ռեալ եկամուտները, 1936 թվականի համեմատությամբ, ավելացել են ավելի քան 5 անգամ: Էականորեն բարձրացել են սովետական մարդու ընդհանուր կուլտուրան ու կրթվածությունը. զուր չէ, որ նրան համարում են «ամենաշատ ընթերցողն աշխարհում»: Երկրի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում այժմ սովորում է մոտ 10 մլն մարդ՝ յոթ անգամ ավելի, քան քառասուն տարի առաջ. հիմնականում ավարտվել է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության: Ավելի ստեղծագործական, բովանդակալից է դարձել ինդուստրիայի և գյուղատնտեսության աշխատողների, բոլոր սովետական մարդկանց աշխատանքը: Արդեն հաղթանակած սոցիալիզմի պայմաններում աճել և կոլեկտիվիզմի ու ընկերական փոխօգնության ոգով դաստիարակվել են աշխատավորների մի քանի սերունդներ՝ զերծ շահագործողական հասարակության ճնշող, մարդու հոգեկան աշխարհը խեղող մթնոլորտից: Հասարակական գիտակցության մեջ ամուր հաստատվել է գիտական մատերիալիստական աշխարհայացքը:

Զարգացած սոցիալիզմի փուլում, ինչպես ցույց է տալիս մեր փորձը, զգա-



լիորեն բարձրանում է էկոնոմիկայի ճյուղայնացման մակարդակը, տեղի է ունենում սոցիալիստական սեփականության պետական (համաժողովրդական) և կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերի անշեղ մերձեցում: Վերջին տարիներս դրան ակտիվորեն նպաստում է միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը խորացնելու կուսակցության գիծը, ժամանակակից պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարները զարգացնող գիծը: Ներկայումս երկրում գործում են պետական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների համատեղ ջանքերով ստեղծված ավելի քան 7 հազար միջտնտեսային կազմակերպություններ ու միավորումներ: Դա նոր երևույթ է մեր սոցիալ-տնտեսական պրակտիկայում:

Խոր տեղաշարժեր են տեղի ունեցել նաև սովետական հասարակության սոցիալական կառուցվածքում: Սովետական բանվոր դասակարգը, որը նրա առաջատար ուժն է, այսօր իր շարքերում ունի ավելի քան 70 մլն մարդ և կազմում է երկրի զբաղված բնակչության երկու երրորդը (մինչդեռ 1936 թվականին կազմում էր ընդամենը միայն մեկ երրորդը): Մշտապես աճում են բանվորների հասարակական ակտիվությունը և քաղաքական հասունությունը, նրանց մասնակցությունը պետական կառավարմանը: Բանվորների բաժինը բոլոր աստիճանների սովետների դեպուտատների մեջ վերջին քառասուն տարում ավելացել է հինգ անգամ և կազմում է ավելի քան 42 տոկոս: Կատարելագործվում է բանվորների հանրակրթական և պրոֆեսիոնալ պատրաստությունը: Այժմ բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունի բանվորների 73,2 տոկոսը, իսկ քառասուն տարի առաջ՝ 8 տոկոսից պակաս: Զարգացած սոցիալիզմի պայմաններում և գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ աճում է արտադրողի նոր տիպ, որի գործունեության մեջ առավել ներդաշնակ է զուգակցվում ֆիզիկական և մտավոր աշխատանքը:

Էականորեն փոխվել է նաև մեր կոլտնտեսային գյուղացիությունը: Սոցիալական դրությամբ նա ավելի ու ավելի է մոտենում բանվոր դասակարգին, իսկ նրա կրթական մակարդակը և ապրելակերպը այժմ արդեն երբեմն քիչ է տարբերվում քաղաքաբնակներից: Կոլտնտեսությունում ծնված ու մեծացած ներկայիս գյուղացուն բնորոշ են կոլեկտիվիստական հոգեբանությունը, բարձր գաղափարայնությունը, նվիրվածությունը սոցիալիզմի ու կոմունիզմի գործին:

Իր ողջ ստեղծագործական եռանդը նոր հասարակարգի կառուցմանն է նվիրաբերում մեր մտավորականությունը, որը մեծ չափով համալրվում է բանվորների և գյուղացիների միջավայրից: Սովետական աշխատավորների ամենաարագ աճող ջոկատն է այդ: Անցած չորս տասնամյակում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետների թիվն ավելացել է արդյունաբերության մեջ 34, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 47 անգամ:

Սոցիալիզմը սովետական մարդկանց հոգում զարգացրել է երկրի իսկական տիրոջ զգացումը, նրանց համակել ողջ հասարակական կյանքի սոցիալիստական հիմունքներով ղեկավարման լենինյան գիտությանն ու արվեստին տիրապետելու ձգտումով: Աշխատավորների ամենալայն զանգվածները դարձել են սոցիալիզմի կադրերի ձևավորման անսպառ աղբյուր: Նրանք այն մարդիկ են, որոնք օրգանապես միակցում են կուսակցականությունն ու խոր բանիմացությունը, քաղաքական բարձր գիտակցականությունն ու նորի՝ զարգացած զգացումը, իրենց գործունեությունը քննադատաբար գնահատելու և մասսաների ձայնին զգայուն ունկնդրելու կարողությունը:

Զարգացած սոցիալիզմի ստեղծման պրոցեսում մեր երկրում ընդլայնվել է սոցիալիստական կարգի սոցիալական հիմքը: Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը զարգացավ այդ դասակարգերի և այժմ ամբողջովին ու լիովին սոցիալիզմի դիրքերում կանգնած ժողովրդական մտավորականության քաղաքական ու գաղափարական կուռ միասնության մեջ: Բանվորների, գյուղացիների և մտավորականության, ֆիզիկական ու մտավոր բոլոր աշխատողների անխախտ դաշինքը, որ ստեղծվել է ՍՍՀՄ-ում, կոմունիստական շինարարության հետագա հաջողությունների կարևորագույն աղբյուրն ու երաշխիքն է:

Պատմականորեն նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումն է մեր երկրում զարգացած սոցիալիզմի կարևոր հատկանիշը, սովետական հասարակության անսասան միասնության ցուցանիշը, ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության հաղթանակը։ Այդ նշանակում է, որ մեզ մոտ աստիճանաբար վճռական նշանակություն են ստանում սովետական մարդկանց վարքի, բնավորության, աշխարհայացքի ընդհանուր գծերը՝ անկախ սոցիալական և ազգային տարբերություններից։

Սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի սերտացման, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացման, բոլոր աշխատավորների՝ բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական դիրքերն անցնելու շնորհիվ մեզ մոտ աննախադեպ մերձեցել են բնակչության բոլոր խավերի ռեալ շահերն ու նպատակները, սոցիալական իդեալներն ու հոգեբանությունը։ Դրա հիման վրա էական փոփոխություններ են տեղի ունեցել նաև հասարակության քաղաքական սիստեմում։ Դրանց էությունը պրոլետարիատի դիկտատուրայի վերածումն է համաժողովրդական սոցիալիստական պետության։

Սրանք են այն օբյեկտիվ պրոցեսները, որոնք մեր կուսակցությանը հանգեցրին այն հետևության, որ ՍՍՀՄ-ում այժմ կառուցված է զարգացած սոցիալիզմ, այսինքն՝ ձեռք է բերվել նոր հասարակարգի հասունության այնպիսի աստիճան, այնպիսի ստադիա, երբ ավարտվում է բոլոր հասարակական հարաբերությունների վերակառուցումը՝ սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմունքներով։ Սոցիալիստական հասարակարգի կարևորագույն տարբերիչ հատկանիշներն են՝ սոցիալիզմի օրենքների գործադրման, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում դրա առավելությունների բացահայտման լիակատար ազատություն, սոցիալական սիստեմի օրգանական ամբողջականություն և դինամիզմ, դրա քաղաքական կայունություն, ներքին անսասան միասնություն։ Հասկանալի է, որ նոր կարգի զարգացման այս փուլում ևս, ընդ որում տևականորեն, պահպանվում է ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը։

Մենք ելնում ենք այն բանից, որ զարգացած սոցիալիզմի բոլոր հնարավորությունների իմացությունն ու օգտագործումը միաժամանակ և անցում է կոմունիզմի կառուցման։ Այլ կերպ ասած, զարգացման դիալեկտիկան այստեղ այնպիսին է, որ հասուն սոցիալիստական հասարակարգի կատարելագործմանը զուգընթաց տեղի է ունենում նաև դրա աստիճանական վերաճում կոմունիստականի։ Անհնար է անջատել այս երկու պրոցեսները, սահմանազատել դրանք։

Մենք խորապես համոզված ենք, որ ինչպիսին էլ լինեն սոցիալիզմ կառուցող երկրների յուրահատուկ պայմանները, սեփական հիմքի վրա դրա կատարելագործման փուլը, հասուն, զարգացած սոցիալիզմի փուլը սոցիալական վերափոխումների անհրաժեշտ օղակ է, զարգացման համեմատաբար տևական մի շրջան կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին։ Հասկանալի է, որ այդ անհրաժեշտությունը, այդ օրինաչափությունը յուրովի կկենսագործվի տարբեր սոցիալիստական երկրների պայմաններում։

Այսպես, ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիզմին համապատասխան, նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը լուծվեց նոր կարգի հիմքերի կառուցումից հետո միայն։ Հավանաբար, այդ ընդհանուր ուղի է բոլոր այն երկրների համար, որոնք սկսում են սոցիալիստական վերափոխումներ իրականացնել էկոնոմիկայի զարգացման թույլ կամ միջին մակարդակի պայմաններում։ Այն երկրներում, որոնք մինչև սոցիալիստական հեղափոխության հաղթանակի պահն արդեն կունենան բարձր զարգացած արտադրաուժեր, դրությունը, անշուշտ, շատ տարբեր կլինի։ Բայց այնտեղ ևս, անտարակույս, հարկ կլինի լուծել, օրինակ, հասուն սոցիալիզմի կառուցման ու կատարելագործման այնպիսի բարդ խնդիրներ, ինչպես՝ տիրապետումը սոցիալիստական հիմունքներով ողջ հասարակական կյանքի կազմակերպման դժվարին գիտությանը, այդ թվում ժողովրդական տնտեսության պլանավորման ու ղեկավարման գիտության, բանվոր դասակարգի սոցիալիստական շահերի և կոմունիստական իդեալների



հիման վրա հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը, քաղաքացիների սոցիալիստական գիտակցության դաստիարակումը, սոցիալիստական պետականության, դեմոկրատիայի կատարելագործումն ու զարգացումը։

## 2.

Մեծ Հոկտեմբերի համաշխարհային-պատմական նվաճումներից մեկն է սոցիալիստական դեմոկրատիան։ Առաջին անգամ դեմոկրատիայի իմաստը բացահայտվեց այդ բառի բուն նշանակությամբ, այսինքն՝ որպես ժողովրդի իշխանություն։ Առաջին անգամ քաղաքացիական և քաղաքական ռեալ իրավահավասարություն ձեռք բերին աշխատավորները՝ նրանք, ովքեր այն չէին տեսել շահագործողական և ոչ մի կարգում։ Դեմոկրատիայի սկզբունքներն առաջին անգամ տարածվեցին հասարակության կյանքի բոլոր ոլորտների, այդ թվում և նրա բազիսի՝ արտադրահարաբերությունների վրա։

Դեմոկրատիան, որն օրինաչափ ու անհրաժեշտ է սոցիալիզմի պայմաններում, իր ձևերով, ֆունկցիաներով, դրսևորումներով ինչ-որ քարացած բան չէ։ Այն զարգանում է հասարակության զարգացմանը զուգընթաց։ Հասկանալի է, որ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման աստիճանի մասին կարելի է դատել միայն այն դեպքում, երբ դրա համար կա հստակ չափանիշ։ Մարքսիստ-լենինյաններն ունեն այդպիսի չափանիշ։ Սոցիալիզմի ժամանակ, ինչպես նշում էր Լենինը, «քաղաքակրթված հասարակությունների պատմության մեջ առաջին անգամ բնակչության մասսան կբարձրանա այն աստիճանին, որ նա կկարողանա ինքնուրույնորեն մասնակցել ո՛չ միայն քվեարկություններին ու ընտրություններին, այլև ամենօրյա կառավարմանը» (հ. 25, էջ 637)։ Մեզ համար հենց այդ է եղել ու մնում որպես գլխավոր չափանիշ, և այդ չափանիշով ենք մենք կողմնորոշվում մեր դեմոկրատիայի հաջողությունները գնահատելիս, դրա հետագա զարգացման ու կատարելագործման ուղիները սահմանելիս։

Ելնելով այդ չափանիշից՝ մենք հաստատ կարող ենք ասել, որ զարգացած սոցիալիզմի մեր հասարակարգը դարձել է նաև զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի հասարակարգ։ Հասուն սոցիալիզմի փուլում, համաժողովրդական պետության պայմաններում աշխատավոր զանգվածների առավել լայն ու ակտիվ մասնակցությունը երկրի կառավարմանը ամուր կերպով հաստատվել է որպես սովետական հասարակության քաղաքական զարգացման կենտրոնական ուղղություն։

Սկսել են ավելի արդյունավետ աշխատել մեր պետական իշխանության ամենաներկայացուցչական մարմինները՝ Սովետները։ Առավել զարգացել են դրանց կազմավորման ու գործունեության դեմոկրատական սկզբունքները։ Աճել են դեպուտատների հեղինակությունը, լիազորությունները, ամրապնդվել նրանց կապերը մասսաների հետ։

Այժմ մեզ մոտ կան ավելի քան 2,2 մլն ժողովրդական դեպուտատներ։ Իսկ եթե նկատի ունենանք նաև նրանց, ովքեր նախկինում ընտրված են եղել սովետներում, ապա երկրում կարելի է արդեն հաշվել բազմամիլիոն մարդկանց, որոնք անցել են պետական կառավարման, քաղաքական ղեկավարման մեծ դպրոց։ Սովետներում այժմ քննարկվում և լուծվում են երկու անգամ ավելի շատ հարցեր, քան տասը տարի առաջ։ Այդ հարցերի մեծ մասը նախօրոք հանգամանորեն ուսումնասիրվում է մշտական հանձնաժողովների կողմից, որոնց թիվը ներկայումս կազմում է 330 հազար։ 1,8 մլն դեպուտատներից բացի, նրանց աշխատանքին մասնակցում են 2,6 մլն ուրիշ ակտիվիստ քաղաքացիներ։

Ավելի են խստացել աշխատավորների պահանջները այն մարդկանց նկատմամբ, որոնց նրանք ընտրում են որպես իրենց ներկայացուցիչներ։ Հայտնի է, որ մեր դեմոկրատիայի կարևոր տարրն է դեպուտատին ետ կանչելու ընտրողների իրավունքը։ Վերջին տասը տարում տարբեր աստիճանների սովետներից, ներառյալ և Գերագույն սովետը, ետ են կանչվել մոտ 4 հազար դեպուտատներ, որոնք այս կամ այն առումով չեն արդարացրել ընտրողների վստահու-

թյունը: Այնպես, որ, դեմոկրատական այդ իրավունքը մեզ մոտ ո՛չ միայն հռչակված է, այլև իրականացվում է գործնականորեն, ծառայում որպես իրենց գործունեության համար դեպուտատների պատասխանատվության բարձրացման լավ միջոց:

Դեպուտատներն սկսել են ավելի հաճախակի հաշվետու լինել ընտրողներին: ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների առաջարկությամբ նոր Սահմանադրության մեջ սահմանվել է մի դրույթ, որով հատկապես ընդգծվում է սովետների ու նրանց ստեղծած մարմինների պարտականությունը՝ սիստեմատիկաբար բնակչությանն ինֆորմացիա տալ իրենց աշխատանքի և ընդունած որոշումների մասին: Դա նպաստում է հրապարակայնության սկզբունքի՝ սովետների գործունեության կարևորագույն սկզբունքի, ավելի հետևողական կենսագործմանը, որոնց մասին Լենինն ասել է, որ դա «բոլորի համար բաց իշխանություն է, որ ամեն ինչ անում է մասսայի աչքի առջև, մատչելի է մասսային, ելնում է անմիջականորեն մասսայից, ժողովրդական մասսայի և նրա կամքի ուղղակի և անմիջական օրգանն է» (հ. 10, էջ 300):

ՍՍՀՄ-ի քաղաքական սիստեմի հիմքը հանդիսացող սովետները իսկական ժողովրդական իշխանության իրականացման կարևորագույն գործիք են: Բայց սոցիալիստական դեմոկրատիան գիտե նաև պետության ու հասարակական գործերի կառավարմանը աշխատավորների մասնակցության շատ այլ շարունակ կատարելագործվող ձևեր: Ժողովրդական իշխանության այդ ձևերից մի քանիսը նախկինում մեզ մոտ սահմանադրորեն վավերագրված չէին: Բայց դրանք ծագել, զարգացել են կյանքում: Հենց դրանց մասին էլ կցանկանայի փոքր-ինչ ավելի մանրամասն խոսել:

Մեր դեմոկրատական կյանքի պրակտիկայում հաստատ արմատավորվել են համաժողովրդական քննարկումները: Ժողովրդական տնտեսության զարգացման պետական ոչ մի պլան, մեր օրենսդրության ոչ մի խոշոր ակտ, օրինակ՝ ամուսնության և ընտանիքի մասին, կենսաթոշակի մասին, բնության պահպանության հարցերի մասին, վերջին տարիներին չի ընդունվել առանց դրա նախագծի համաժողովրդական դիսկուսիայի:

Պարզ է, որ այդպիսի համաժողովրդական համաժողովում միայն կարող էր դրվել նոր Սահմանադրության հարցը, այն հարցը, թե դա ինչպիսին պետք է լինի: ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից կազմված սահմանադրական հանձնաժողովը, մեծ թվով գիտնականների, իրավագետ մասնագետների, պետական ապարատի և հասարակական կազմակերպությունների փորձված աշխատողների օգնությամբ, նախապատրաստեց Հիմնական օրենքի նախագիծը, որի մասին հետո իրենց խոսքն ասացին ավելի քան 140 մլն մարդ՝ երկրի չափահաս բնակչության չորս հինգերորդից ավելին: Նրանք ելույթներ են ունեցել աշխատանքային կոլեկտիվների, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ժողովներում, սովետների նստաշրջաններում, ռադիոյով ու հեռուստատեսությամբ: Նրանք գրել են թերթերին ու սահմանադրական հանձնաժողովին: Աշխատավորների 180 հազար նամակները մեր դեմոկրատիայի կենդանի, իսկական փաստաթղթեր են:

Ով այդ օրերին մոտիկից հետևում էր մեր երկրի կյանքին, գիտե, որ դա ստեղծագործական եռանդի վիթխարի հորդումի ժամանակ է, բուռն վիճաբանությունների, մտահոգ վեճերի ժամանակ: Հիմնական օրենքի նախագծի վերաբերյալ կոնկրետ ուղղումների մասին մոտ 400 հազար առաջարկ են արել սովետական մարդիկ: Դրանցից շատերը վերաբերում էին մեր կյանքի ամենաէական հարցերին — սոցիալիզմի ժամանակ աշխատանքի դերին, սովետական պետության սոցիալական հիմքի սահմանմանը, սովետների աշխատանքում ընտրողների պատվիրանների հաշվառմանը, սոցիալիստական սեփականությունը պահպանելու՝ քաղաքացիների պարտականություններին, օժանդակ տնտեսություն վարելու իրավունքին և այլն:

Սահմանադրական հանձնաժողովին հարկ եղավ ջանալ լրջորեն վերլուծելու, խմբավորելու ստացված առաջարկությունները մինչև իր հանձնարարականները ներկայացնելը Գերագույն սովետի հաստատմանը, որը, հաշվի առնելով համաժողովրդական դիսկուսիաների ընթացքում արտահայտված բոլոր կարծիքները, ուղղումներ արեց 118 (173-ից) հոդվածներում և ավելացրեց մի հոդված ևս:

Այնպես որ, երբ մենք ասում ենք, թե Սահմանադրության իսկական կերտողը ողջ սովետական ժողովուրդն է, ապա դա չափազանցություն չէ, գեղեցիկ խոսք չէ: Այդ փաստ է: Եվ դա վկայում է այն մասին, որ մեզ մոտ չկա աշխատավորների օտարում քաղաքական իշխանության նկատմամբ, ամբողջովին հաղթահարվել է ողջ պետականի հանդեպ մասսաների վաղեմի անվստահությունը, որը հատուկ է շահագործողական հասարակությանը:

Սահմանադրության նախագծի քննարկման ընթացքում սովետական մարդիկ տիրոջ պես ցուցաբերեցին իրենց պահանջկոտությունը հասարակության բոլոր գործերի նկատմամբ: Բազմաթիվ սուր դիտողություններ արվեցին զանազան հիմնարկությունների, ձեռնարկությունների, կազմակերպությունների, դրանց ղեկավարների հասցեին: Մենք ամենայն ուշադրությամբ ենք վերաբերվում քաղաքացիների քննադատական ելույթներին, ձգտում ենք վերացնել նրանց բացահայտած թերությունները: Քննադատության ազատությունը մեր կուսակցությունը համարում է դեմոկրատական հասարակության զարգացման արդյունավետ գործիքը, նրա բոլոր հաստատությունների նորմալ գործունեության անհրաժեշտ պայմանը:

Մասնակցությունը համաժողովրդական քննարկումներին օգնում է սովետական մարդկանց՝ ավելի պարզ գիտակցելու իրենց ամենօրյա գործերի սերտ կապը հասարակական զարգացման ամենալայն հեռանկարների հետ: Կոմունիստական շինարարության հիմնական խնդիրների հետ աշխատավորների սեփական շահերի ու ձգտումների այդ կապը վառ կերպով դրսևորվում է նաև աշխատանքային կոլեկտիվների հասարակական-քաղաքական ակտիվության մեջ:

Մեր հասարակության մեջ աշխատանքային կոլեկտիվի դերի հետ կապված հարցերը գրավեցին Սահմանադրության նախագծի վերաբերյալ դիսկուսիաների մասնակիցների մեծ ուշադրությունը: Եվ դա հասկանալի է: Չէ՛ որ մեր սոցիալական օրգանիզմի այդ սկզբնական բջիջի մեջ են ծնվում ու զարգանում այն նախաձեռնությունները, որոնք ներգործում են ամբողջ երկրի կյանքի վրա:

Բավական է ասել, որ ձեռնարկության աշխատանքային կոլեկտիվից է սկսվում պետական պլանի կազմումը: Եվ բնական է, որ դրա կատարումն ու գերակատարումը ևս վճռական չափով կախված են աշխատանքային կոլեկտիվների աշխատանքի հստակությունից և նախաձեռնությունից: Վերցնենք, օրինակ, Մոսկվայի ավտոտրակտորային էլեկտրասարքավորումների № 1 գործարանը: Նրա աշխատանքային կոլեկտիվը տասներորդ հնգամյակի պլանի քննարկման ժամանակ մտցրեց ավելի քան 200 առաջարկություն և հասավ դրանց մեծ մասի կենսագործմանը: Դրա շնորհիվ գործարանը տվեց 2,1 մլն ռուբլու լրացուցիչ արտադրանք:

Աշխատանքային կոլեկտիվներում լուծվում են շատ հարցեր, որոնք դուրս են գալիս նեղ գերատեսչական շահերի սահմաններից: Այդ հարցերի շրջանի մեջ է մտնում և՛ սոցիալիստական մրցության կազմակերպումը, և՛ նյութական խրախուսման ֆոնդերի բաշխումը, և՛ պրոֆեսիոնալ որակավորման բարձրացումը, և՛ կադրերի տեղաբաշխումը, և՛ հոգատարությունը աշխատավորների հանգստի, կենցաղի նկատմամբ, նրանց հոգևոր պահանջմունքների բավարարման նկատմամբ: Բարձրացնել բժշկական սպասարկման որակը, ճշտել աճող բնակարանային ֆոնդի օգտագործման սկզբունքները, ավելի եռանդուն պայքար մղել բյուրոկրատիզմի դեմ, ավելի շատ ուշադրություն դարձնել երիտասարդության բարոյական դաստիարակությանը՝ ահա հասարակական լայն նշանակություն ունեցող այն պրոբլեմներից մի քանիսը միայն, որոնք բարձրացվել էին աշխատանքային կոլեկտիվներում՝ Սահմանադրության նախագծի քննարկման կապակցությամբ:

Աշխատավորների բազմաթիվ առաջարկություններով նոր Հիմնական օրենքում աշխատանքային կոլեկտիվներին վերապահված են լայն իրավունք-

ներ պետական և հասարակական գործերի քննարկման և լուծման, ձեռնարկությունների և հիմնարկությունների կառավարման գործում, իսկ բուն հոդվածը աշխատանքային կոլեկտիվի դերի մասին տեղափոխված է ՍՍՀՄ քաղաքական սիստեմի մասին գլուխը:

Սոցիալիստական դեմոկրատիայի խորացումը դարձել է երկրի տնտեսական առաջընթացի շարժիչ ուժերից մեկը: Արտադրական ռեսուրսների և ժողովրդական հարստության բազմապատկումն իր հերթին դարձել է նրա դեմոկրատական հիմունքների ամրապնդման ու զարգացման գործոն:

Հասուն սոցիալիզմի պայմաններում ընդլայնվել է սոցիալիստական դեմոկրատիայի տնտեսական բազան, քաղաքացիների իրավունքները հագեցվել են ավելի հիմնավոր նյութական բովանդակությամբ, ավելի ամրապնդվել են այդ իրավունքների երաշխիքները: Ամեն ոք, ով ՍՍՀՄ նոր Հիմնական օրենքը համեմատի նախորդ Սահմանադրության հետ, կարող է համոզվել, որ այն արտացոլում է որակական տեղաշարժեր սովետական մարդու իրավունքների և ազատությունների ծավալում:

Նոր Հիմնական օրենքը, հասկանալի է, հաստատել է նախորդ Սահմանադրության մեջ վավերագրված ազատությունները՝ խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների, փողոցային երթերի ու ցույցերի ազատությունը: Դրա հետ մեկտեղ սահմանադրական ձևակերպում են ստացել նաև մյուս քաղաքական իրավունքները, որոնք վաղուց մտել են հասարակական կյանքի պրակտիկայի մեջ: Սկզբունքորեն կարևոր է այն նոր հոդվածը, որտեղ ասված է, որ ՍՍՀՄ քաղաքացին իրավունք ունի մասնակցելու պետության, հասարակության գործերի կառավարմանը: Նախորդ Սահմանադրության համեմատությամբ, նոր Հիմնական օրենքը սովետական մարդկանց վերապահում է ավելի շատ իրավունքներ նրանց անձնական շահերի պաշտպանության գործում: Ուժեղացված են նաև քաղաքացիների քաղաքական իրավունքների երաշխիքները: Օրինակ, ակնհայտ է, որ քննադատության իրավունքը ավելի բովանդակալից է դառնում, երբ այն ամրապնդված է, ինչպես մեզ մոտ է արված, քննադատության համար հալածանքի սահմանադրական արգելքով և այդ արգելքը խախտելու մեջ մեղավոր անձանց պատասխանատվության կանչելու պահանջով:

Այժմ մարդկանց կյանքի բուն հիմքերը շոշափող սոցիալ-տնտեսական իրավունքների մասին: Բերեմ մի քանի օրինակ միայն, որոնցով կարելի է դատել այդ բնագավառում կատարված տեղաշարժերի մասին: Աշխատանքի իրավունքը տասնամյակներ շարունակ մեզ մոտ սովորական նորմ է: Այսօր այն ընդգրկում է իրենց կոչմանը, պրոֆեսիոնալ պատրաստությանը համեմատ մասնագիտություն, զբաղմունքի և աշխատանքի տեսակ ընտրելու իրավունք: Մենք այժմ կարող ենք այդ բանը երաշխավորել քաղաքացիներին՝ քանի որ ստեղծել ենք այնպիսի էկոնոմիկա, որը ոչ միայն հաստատապես աճող, այլև ավելի ու ավելի բազմակողմանի պահանջարկ է ներկայացնում բանվորական ուժի, մասնագետների նկատմամբ: Մենք այդ իրավունքը կարող ենք երաշխավորել նաև այն պատճառով, որ ստեղծել ենք ընդհանուր և մասնագիտական կրթության, պրոֆեսիոնալ ուսուցման, որակավորման բարձրացման բարձր զարգացած սիստեմ:

Նոր Սահմանադրությունը հաստատում է մարդու համար կենսականորեն կարևոր բնակարանի իրավունքը: Նախորդ Սահմանադրության մեջ այդ մասին չէր խոսվում: Այժմ դրա համար ստեղծված է նյութական հուսալի հիմք: Այժմ ամեն տարի կառուցվում են յոթ անգամ ավելի շատ բնակարաններ, քան 1936 թվականին: Նախկին Սահմանադրությունում ևս գրված է ծերության ժամանակ նյութական ապահովության իրավունքի մասին: Բայց այժմ, 1936 թվականի համեմատությամբ, տասնյակ անգամ աճել է այդ իրավունքից օգտվող զառամյալ մարդկանց թիվը: Պետական կենսաթոշակի միջին չափն էլ գրեթե եռապատկվել է: Սոցիալիստական դեմոկրատիան հռչակում է ո՛չ միայն քաղաքական, այլև սոցիալ-տնտեսական իրավունքներ, այն դրանք ոչ միայն հռչակում, այլև հուսալիորեն երաշխավորում է, հենց դա էլ նրա սկզբունքային տարբերություններից մեկն է բուրժուական դեմոկրատիայից: Հասուն սոցիա-



լիզմի հասարակարգում, դրա բարձր զարգացած տնտեսական պոտենցիալի պայմաններում, առանձնապես ցայտուն է դրսևորվում սոցիալիստական դեմոկրատիայի այդ տարբերիչ գիծը:

Լայն ազատություն տալով քաղաքացիների, նրանց ներկայացուցիչների ու կազմակերպությունների քաղաքական, տնտեսական, հոգևոր ակտիվության համար, մեր դեմոկրատիան այդ ակտիվությունն ուղղում է այն նպատակներին, որոնց իրականացմամբ շահագրգռված է ամբողջ ժողովուրդը, ամբողջ հասարակությունը: Դրա հետ մեկտեղ այն պետք է արտահայտի բնակչության տարբեր խմբերի բազմապիսի յուրահատուկ շահերը, դրանք կապակցելով ու համաձայնեցնելով ամբողջ հասարակության շահերի հետ: Այս առումով մեծ է հասարակական կազմակերպությունների դերը:

Այսպես, աշխատանքի շահերի պահպանությունը արհմիությունների մշտական հոգածության առարկան է: Նրանք գործում են վճռական, անհողդողդ, երբ ձեռնարկությունների որոշ ղեկավարներ մոռանում են աշխատանքային օրենսդրության նորմաների մասին, աշխատավորների սոցիալական կարիքների մասին: Անցյալ տարի արհմիութենական կոմիտեների պահանջով մոտ 10 հազար այդպիսի ադմինիստրատորներ ազատվել են պաշտոններից: Բայց մեզ մոտ չկա բուրժուական հասարակությանը հատուկ արմատական կոնֆլիկտը աշխատանքի և կապիտալի, բանվորի և ձեռնարկատիրոջ միջև: Այդպիսի պայմաններում արհմիություններն ամենից ավելի լավ են արտահայտում աշխատավորների շահերը, կազմակերպելով նրանց մասնակցությունը արտադրության, ամբողջ հասարակության գործերի կառավարմանը: Դրա արգասիքն է, օրինակ, մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների ակտիվությունը: Այժմ երկրում կա 130 հազար այդպիսի խորհրդակցություն, որոնց կազմի 64 տոկոսը բանվորներ են: Ամեն տարի խորհրդակցություններից ընտացվում է արտադրության արդյունավետության բարձրացմանը վերաբերող մոտ 1,5 մլն առաջարկություն: Ակնհայտ է, որ դա մեծ օգուտ է տալիս ժողովրդական տնտեսությանը: Բայց դրանով ընդլայնվում են նաև նյութական հնարավորություններն իրենց՝ աշխատավորների սոցիալական, կենցաղային կարիքների ավելի լավ բավարարման համար:

Կամ վերցնենք կոմերիտմիությունը՝ մեր երիտասարդության կազմակերպությունը: Պատանեկությանը հատուկ է ռոմանտիկայի ձգտումը: Եվ երբ կոմերիտմիությունը, օրինակ, հարյուր հազարավոր պատանիների ու աղջիկների ներգրավում է Բայկալ—Ամուրյան մայրուղու շինարարության մեջ, ապա դրանով երիտասարդության յուրահատուկ հետաքրքրությունը նա միաձուլում է համաժողովրդական մեծ շահի՝ Սիբիրում նոր տրանսպորտային ճանապարհի ստեղծման հետ:

Մի խոսքով, սոցիալիստական դեմոկրատիզմը զգալուն կերպով արձագանքում է հասարակական շահերի հարաճուն բազմազանությանը, լայն ասպարեզ բացում մասսաների նախաձեռնության և սոցիալ-քաղաքական ինքնագործունեության համար:

Սոցիալիստական պետականության և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը մի պրոցես է, որում հիմնական դերը պատկանում է կոմունիստների կուսակցությանը: Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը, սովետների երկրի ողջ վաթսունամյա պատմությունը ՍՄԿԿ-ին օժտել են մեր հասարակության ղեկավար և ուղղություն տվող դերով: Կուսակցության այդ դերը հստակ արտացոլված է սովետական պետության Հիմնական օրենքում:

Ղեկավարելով սովետների գործունեությունը՝ ՍՄԿԿ-ն չի փոխարինում դրանց, խիստ սահմանագծում է կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաները, իր գիծն իրականացնում ամենից առաջ սովետներում աշխատող կոմունիստների միջոցով: Լենինյան այդ սկզբունքի էությունը հստակ արտահայտված է երկրի Հիմնական օրենքում, ուր նշված է, որ բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում: Սովետական կոմունիստները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ քաջ գիտակցում են, որ մեր պետության և հասարակության մեջ ՍՄԿԿ-ի ղեկավար դերի սահմանադրական վավերագրումն ամենևին ինչ-որ արտոնու-

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտե՝

ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻՆ

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահություն

ընկեր Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎԻՆ

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդ

ընկեր Ֆ. Տ. ՍԱՐԳՍՅԱՆԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Խորին գոհունակության զգացումով ծանոթացա պետությանը հացահատիկ, խաղող, կարտոֆիլ, բանջարեղեն, շաքարի ճակնդեղ ու պտուղներ վաճառելու գծով մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման մասին ձեր հաղորդմանը:

Հանրապետության կոլտնտեսականներին և սովխոզների բանվորներին, գյուղի տնտեսության մասնագետներին ու գիտնականներին, վերամշակող, տրանսպորտային ձեռնարկությունների և ուսումնական հաստատությունների կոլեկտիվներին, գյուղատնտեսական ու մթերող կազմակերպությունների աշխատողներին, կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական մարմիններին, բոլոր աշխատավորներին ի սրտե շնորհավորում եմ աշխատանքային մեծ հաղթանակի առթիվ:

Ձեր ձեռք բերած հաջողությունները գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման միջոցառումների կոմպլեքսի իրականացման գործում գյուղատնտեսության աշխատողների անձնվեր աշխատանքի արդյունքն է, կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների ու գիտնականների, գյուղատնտեսական ու մթերող կազմակերպությունների աշխատանքային բարձր խանդավառության, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքի արդյունքը:

Հաստատ վստահություն եմ հայտնում, որ հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները այսուհետև էլ կբարձրացնեն դաշտերի ու ֆերմաների մթերատվությունը, կմեծացնեն հողագործական ու անասնապահական մթերքների արտադրության և մթերումների ծավալները, կպայքարեն գյուղատնտեսական ամբողջ արտադրանքի բարձր որակի համար:

Հայաստանի աշխատավորներին սրտանց մաղթում եմ հաջողությամբ ավարտել գյուղատնտեսական տարին, նոր բնագծերի հասնել հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում:

Լ. ԲՐԵԺՆԵՎ



ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ

Գերագույն սովետի նախագահության նախագահ

ընկեր ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ

Մենք, Հայաստանի հողագործների մեծ հաղթանակի՝ Հոկտեմբերի պանծալի 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու կապակցությամբ Ձեր, թանկագին Լեոնիդ Իլյիչ, հղած ողջույնի առթիվ գումարված միտինգի մասնակիցներս, արտահայտելով հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների զգացմունքները, կուսակցության մարտական շտաբին՝ ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին և անձամբ Ձեզ հղում ենք խորին շնորհակալության խոսքեր մեր աշխատանքը բարձր գնահատելու համար:

Հանրապետության գյուղատնտեսության աշխատողներին հղած Ձեր ջերմ ու սրտագին շնորհավորանքները ընդունվեցին մեծ ուրախությամբ, ստեղծագործական ակտիվության նոր վերելք առաջացրին բոլոր աշխատավորների մեջ:

Ուրախ ենք Ձեզ զեկուցելու, թանկագին Լեոնիդ Իլյիչ, որ հանրապետության աշխատավորները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը մեր հայրենիքի պանծալի հոբելյանը՝ մեծ Հոկտեմբերի 60-ամյակը արժանավայել դիմավորելու համար, ոգեշնչված ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունմամբ, բարձր բնագծեր են նվաճել տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում:

Երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերը, գիտության և կուլտուրայի բոլոր բնագավառներում հանրապետության նվաճումները կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարության, լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման, եղբայրական հանրապետությունների ժողովուրդների բարեկամության ու փոխօգնության արգասիքն են: Հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները լի են ջերմ երախտագիտության զգացմունքներով ՍՍՀ Միության բոլոր ժողովուրդների, առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի նկատմամբ՝ բարեկամության ու եղբայրության համար, կոմունիստական շինարարության գործում ինտերնացիոնալ փոխօգնության համար:

Սովետական Հայաստանի աշխատավորները մշտապես զգում են հարազատ կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի հոգատարությունը հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի բարձրացման նկատմամբ:

Այդ հոգատարության նոր, փայլուն վկայությունն է վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կողմից մեր հանրապետության համար հիրավի պատմական նշանակություն ունեցող որոշումների ընդունումը: Մեզ, գյուղատնտեսության աշխատողներին, առանձնապես ուրախացնում է «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և նրա արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» որոշումը, որի իրականացումը թույլ կտա լուծելու հանրապետության համար կենսականորեն կա-

րևոր պրոբլեմը: Մենք կկարողանանք ոռոգել տասնյակ հազարավոր հեկտար հողեր, մեծապես ավելացնել խաղողի, պտղի և բանջարեղենի արտադրությունը: Կկատարվի՛, իրողություն կդառնա հայ հողագործի դարավոր երազանքը ջրի մասին:

Իրենց առօրյա գործերում մեր հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները հետևողականորեն իրականացնում են ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի որոշումները. պլենումը սահմանեց գյուղատնտեսական արտադրության զարգացման այն գլխավոր ուղղությունը, որը պայմանավորեց երկրի, այդ թվում մեր հանրապետության, այսօրվա նվաճումները այդ բնագավառում: ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության ծրագրային պահանջի՝ մասնագիտացման ու համակենտրոնացման հիմքի վրա գյուղը ինտենսիվացնելու պահանջի գործնական իրականացմա՛նն է նպատակամղված այսօր հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների աշխատանքը:

Մենք մեզ հաշիվ ենք տալիս, թե մեզ վրա ինչպիսի բարձր պատասխանատվություն են դնում Ձեր ողջույնը և այն բարեմաղթությունը, որ Հայաստանի աշխատավորները պատվով կատարեն հոբելյանական տարվա և ամբողջ տասներորդ հնգամյակի ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: Մենք ամեն հնարավոր բան կանենք կուսակցության մեծ վստահությունն արդարացնելու համար, առավել մեծ հաստատակամությամբ սոցիալիստական մրցություն կծավալենք հողագործության և անասնապահության հետագա վերելքի, աշնան դաշտային աշխատանքների ամբողջ կոմպլեքսի հաջող ավարտման համար, կդնենք եկող տարվա բարձր բերքի ամուր հիմքը, կազմակերպված կանցկացնենք անասունների ձմեռումը, կավելացնենք հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը:

Թանկագին Լեոնիդ Իլյի՛չ:

Մենք բոլորս գտնվում ենք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Ձեր զեկուցման տպավորության տակ, մի զեկուցում, որի մեջ խորապես ու համակողմանիորեն ընդհանրացված է սովետական ժողովրդի անցած՝ մեծագործությունների ու հաղթանակների փառավոր ուղին, պարզորոշ գծված են կոմունիստական շինարարության ոգևորիչ հեռանկարները:

Այս բերկրալի օրը մենք հայտարարում ենք, որ հանրապետության աշխատավորները, ինչպես որ բոլոր սովետական մարդիկ, միահամուռ հավանություն են տալիս կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին իմաստուն քաղաքականությանը, որը ներթափանցված է սովետական մարդկանց բարօրության նկատմամբ խոր հոգատարությամբ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին և անձամբ Ձեզ հավաստիացնում ենք, որ այսուհետ ևս անձնվիրաբար կպայքարենք ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները, տասներորդ հնգամյակի պլանները կատարելու համար:

Հանրապետության աշխատավորների անունից Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, մեծ Լենինի գործի անխոնջ շարունակողին, խորին շնորհակալության խոսքեր ենք հղում ժողովրդի բարօրության համար կատարած Ձեր տիտանական աշխատանքի համար, Ձեզ մաղթում ենք քաջառողջություն, նոր ստեղծագործական ուժեր ու եռանդ՝ հանուն մեր մեծ Սովետական Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, հանուն կոմունիզմի հաղթանակի:

Կեցցե՛ մեր մեծ Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Փա՛ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՀՈԳԵՎՈՐ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔ

*«ՃԻՇՏ Է ԱՍՎԱԾ, չկա ոչինչ ավելի գործնական, քան լավ տեսությունը»: Ընկեր Լ. Ի. Բրեժնևի այս խոսքերը, որ նա ասել է կուսակցության XXV համագումարում՝ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, սովորաբար վերագրում են հիմնարար բնական գիտություններին: Բայց դրանք բնավ ոչ պակաս իրավունքով կարելի է վերագրել նաև հասարակական գիտություններին, որոնք վիթխարի ազդեցություն են ունենում սոցիալական պրակտիկայի վրա:*

*Եվ այդ խոսքերի կապակցությամբ ակամա հիշում ես Վ. Ի. Լենինի թևավոր միտքը. «Մարքսի ուսմունքն ամենազոր է, որովհետև այն ճշմարիտ է» (Երկեր, հ. 19, էջ 4): Այդ խոսքի մեջ պարզ ու լակոնիկ ձևով արտահայտված է անչափ խոր բովանդակություն: Ամենազոր է, որովհետև ճիշտ է, որովհետև ճշմարիտ է, որովհետև ճիշտ է բացատրում բնության, հասարակության և մարդկային մտածողության զարգացման ընթացքը, որովհետև պրոլետարիատին՝ մեր ժամանակի ամենահեղափոխական ուժին, վստահություն է տալիս իմպերիալիզմի դեմ, խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար, սոցիալական արդարության հասարակարգի կառուցման համար նրա մղած պայքարի արդարացիության նկատմամբ, վստահություն անխուսափելի հաղթանակի նկատմամբ:*

*Եվ մյուս կողմից, քանի որ հեղափոխական տեսությունը ճշմարտացի է, ապա ունի ձգողական մեծ ուժ բոլոր աշխատավորների համար, այն, տիրապետելով մասսաներին, դառնում է աշխարհի վերափոխման հզոր գործոն: Իսկ ի՞նչը կարող է ավելի գործնական լինել այդպիսի տեսությունից:*

*Ինչո՞ւ Մարքսի ուսմունքը, ինքն իրեն հարցնում էր Լենինը, կարողացավ տիրապետել միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր սրտերի: Այդ բանը տեղի ունեցավ այն պատճառով, որ Մարքսը, հայտնագործելով մարդկային հասարակության զարգացման օրենքները, հանգեց այն հետևության, թե բանվոր դասակարգի՝ նոր, սոցիալիստական հասարակարգ կերտողի, կազմակերպված գործողությունների շնորհիվ անխուսափելի է կապիտալիզմի կործանումը: Նա այդ բանը ապացուցեց կապիտալիստական հասարակարգի ամենաճշգրիտ, ամենամանրազնին, ամենախոր վերլուծության հիման վրա: Այն ամենը, ինչ ստեղծել էր մարդկային միտքը, նա վերամշակեց, քննադատության ենթարկեց, ստուգելով բանվորական շարժումով, և արեց այնպիսի սկզբունքային ընդհանրացումներ, որ չէին կարող անել բուրժուական շրջանակներով սահմանափակված կամ բուրժուական նախապաշարմունքներով կաշկանդված մարդիկ:*

*Մարքսիզմ-լենինիզմը մի ամբողջական և կուռ ուսմունք է, որն իրենից ներկայացնում է փիլիսոփայական, տնտեսական ու սոցիալ-քաղաքական հա-*

յացքների մի օրգանական միասնություն և բանվոր դասակարգի արմատական շահերի տեսական արտահայտությունն է, սոցիալիզմի ու կոմունիզմի համար նրա մղած պայքարի ծրագիրը: Դա այն տեսությունն է, որն այսօր ամենուրեք վերափոխում է աշխարհը մեր մոլորակի վրա: Սովետական Միությունն արդեն վաթսուն տարի կառուցում է այն նոր հասարակարգը, որը գիտականորեն կանխագուշակված է եղել այդ տեսությամբ և որի ուղիներն սկզբունքորեն որոշված են եղել: Եվրոպայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի շատ երկրներում սոցիալիզմը դարձել է և կամ դառնում է ռեալություն:

Եվ այժմ մեր ժամանակի առավել հրատապ հարցերը, որ առաջադրել է դրա օբյեկտիվ զարգացման բուն ընթացքը, իրենց պատասխանը գտնում են ՍՄԿԿ XXV համագումարի տեսական մշակումներում, մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումներում, նրա ղեկավարների ելույթներում:

Մասսաներին տիրապետած մարքս-լենինյան տեսությունը ո՛չ միայն հեղափոխական հզոր ուժ է, որը ոչնչացնում է ճնշման ու իրավազրկության աշխարհը և կառուցում նոր հասարակարգի լուսավոր շենքը, այն վերափոխում է նաև հենց մարդուն, ձևավորում է նրա դասակարգային գիտակցությունը, հոգևոր աշխարհը, նրա աշխարհայացքը, մտածողությունը: Այն ստեղծում է ամենաառաջավոր իդեալների համար պայքարող գիտակից մարտիկ: Մեր երկրում, զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում այն կոմունիստական տիպի անհատի դաստիարակության կարևորագույն միջոցն է:

Հետադարձ հայացք ձգելով մեր երկրի անցած վաթսունամյա ուղուն, որը հագեցած է վիթխարի մեծագործություններով, հասարակության կյանքի բոլոր կողմերի հիրավի հեղափոխական վերափոխումներով, հեղափոխական՝ ինչպես իրենց նպատակներով, այնպես էլ կենսագործման ժամկետներով, մենք պարզորոշ տեսնում ենք, որ այդ ամենն առավել խտացված ձևով արտահայտվել են մեկ բանում՝ սովետական մարդու մեջ:

Սովետական մարդը անցած վաթսունամյակի կարևորագույն արդյունքն է: Այդ մասին վառ ու ոգեշունչ բառերով ասվեց կուսակցության XXV համագումարում՝ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ. «Մարդ, որ կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում: Մարդ, որը կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության: Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը: Դա մի այնպիսի մարդ է, որը, լինելով ջերմագին հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ»:

Այս տարողունակ և ճշգրիտ բնութագրում ուշադրություն են գրավում այն տողերը, որոնցում մարդու անճանաչելի փոփոխությունը կապվում է ամենից առաջ այն բանի հետ, որ նա իր մեջ միացնում է գաղափարական համոզվածությունը, հսկայական կենսական եռանդը, կուլտուրան , գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը, հայրենասիրությունը միացնում է ինտերնացիոնալիզմի հետ: Այդ ամենը նույնպես մարքս-լենինյան տեսության գործնական կիրառումն են, մեր երկրի աշխատավորների կողմից նրա գիտակցական յուրացման արգասիքը:

Մարքսիզմ-լենինիզմը մի ուսմունք է, որի իմացությունն անհրաժեշտ է ամեն մի պրոֆեսիայի տեր մարդու համար՝ որտեղ էլ որ նա աշխատի. դաշտում թե՛ անասնապահական ֆերմայում, հաստոցի թե՛ ավտոմատ գծի մոտ, կոնստրուկտորական բյուրոյում թե տիեզերական կապի կառավարման կետի մոտ: Քանի որ այդ ուսմունքը օգնում է մարդուն՝ գիտակցելու իր տեղը հասարակության մեջ, հասկանալու իր մասնակցությունը նոր աշխարհի կառուցման մեծ նպատակների իրականացմանը, իր գիտելիքները դարձնելու համոզմունքներ, իսկ այդ համոզմունքները՝ կենսական ակտիվ դիրքորոշում:



Մենք հաճախ ենք հիշում Լենինի հայտնի դրույթը՝ հեղափոխական տեսությունը պրոլետարական շարժման հետ միացնելու անհրաժեշտության, գիտական հեղափոխական տեսությունը պրոլետարական գիտակցության մեջ, աշխատավոր մասսաների գիտակցության մեջ մտցնելու անհրաժեշտության մասին: Հիշում ենք, երբ խոսք է լինում մեր երկրի հեռավոր նախահեղափոխական պատմության մասին: Բայց այդ պրոցեսը հաղթական հեղափոխության հետ ամենևին չի վերջանում: Այն լոկ ընդունում է նոր ձևեր:

Ո՞րն է մարքս-լենինյան տեսությունը աշխատավոր մասսաների գիտակցության մեջ հաստատելու արդի փուլի յուրահատկությունը:

Նոր հասարակարգի կառուցման ընթացքում, կուլտուրական հեղափոխության ընթացքում մարքս-լենինյան տեսությունը դառնում է արդեն ո՛չ միայն բանվոր դասակարգի ավանգարդի, այլև աշխատավորների ավելի ու ավելի լայն զանգվածների աշխարհայացքի հիմքը: Զարգացած սոցիալիստական հասարակարգում գործնականորեն ամբողջ չափահաս բնակչությունը դաստիարակված է մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով:

Սովետական հասարակությունը բարձր կրթված հասարակություն է: Այդ մասին են վկայում վիճակագրության անկիրք, ճշգրիտ թվերը: Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված տասը մարդուց յուրաքանչյուր յոթերորդ-ութերորդն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն: Երկրում աշխատում են 24 միլիոն մասնագետներ՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ, այդ թվում՝ մոտ 4 միլիոն դիպլոմավոր ինժեներներ:

Այդ հասարակությունը միաժամանակ կարելի է անվանել շարունակ սովորող հասարակություն: Այժմ համաժողովրդական քննարկման դրված ՍՍՀՄ Սահմանադրության նախագծում նշվում է, որ մեր երկրում գոյություն ունի կրթության միասնական սիստեմ, որը ծառայում է երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը, հոգևոր և ֆիզիկական զարգացմանը, նրա նախապատրաստմանը աշխատանքի և հասարակական գործունեության: Ոչ միայն երիտասարդները, այլև հասակավորները մեծ մասամբ շարունակում են ուսումը՝ երեկոյան դպրոցներում, տեխնիկումներում, համալսարաններում, ասպիրանտուրայում և դոկտորանտուրայում, վերաորակավորման և որակավորման բարձրացման դասընթացներում, քաղաքական լուսավորության ցանցում: Շատերն ազատ ժամերին պարապում են ինքնակրթությամբ, քանի որ դա դարձել է նրանց մշտական հոգևոր պահանջմունքը:

«Գիտելիք» համամիութենական ընկերության դասախոսները, որոնք տարեկան կարդում են 25 միլիոն դասախոսություն, հավաքում են ավելի քան մեկ միլիարդ ունկնդիրներ:

Սովետական մարդու գաղափարական դաստիարակության գործում կարևոր դեր են կատարում քաղաքական լուսավորությունը, մարքսիզմ-լենինիզմի սիստեմատիկ ուսումնասիրությունը: Կուսակցական կրթության սիստեմում սովորում են մոտ 21 միլիոն մարդ, այդ թվում՝ մոտ 8 միլիոն անկուսակցականներ: Ավելի քան 410 հազար մարդ իրենց գիտելիքները համալրում են մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում: Միայն տնտեսագիտական կրթության սիստեմում ներկայումս սովորում է մոտ 35 միլիոն մարդ:

Մարքսիզմ-լենինիզմի մասսայական ուսումնասիրումը հասարակական գիտակցության զարգացման կարևորագույն առանձնահատկությունն է արդի փուլում: Սակայն, մասսայականությունից բացի, գործի հաջողությունը, ուսուցման որակը պայմանավորված են նրա բովանդակալիության, նրա տեսական մակարդակի նկատմամբ ամենօրյա հոգատարությամբ: Այժմ մեր հասարակության կուլտուրայի և կրթության զարգացման ամբողջ ընթացքով նախադրյալներ են ստեղծվել այդ խնդրի լուծումը խորացնելու, ավելի բարձր մակարդակի հասցնելու համար: Խոսքը, մասնավորապես, այն մասին է, որ ամենուրեք անցնենք տեսությունը ո՛չ միայն ուսումնասիրելու, ըմբռնելու, այլև այն յուրացնելու պահանջին: Այլ կերպ ասած, կարևոր է ո՛չ միայն գիտենալ մարքսիզմ-լենինիզմի դրույթները, այլև կարողանալ մարքսիստորեն մտածել,

կարողանալ իր գիտելիքները կիրառել տեսական և գործնական հարցերը ինքնուրույն լուծելու համար։ Հենց դրան էր կոչ անում մեզ Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Ուշագրավ է, որ նա, կոմերիտմիության համառուսաստանյան III համագումարում արտասանած իր նշանավոր ճառում, դիմելով մեծ մասամբ կիսագրագետ, իսկ երբեմն նաև բոլորովին անգրագետ երիտասարդներին, նրանց առջև ոչ թե պարզապես խնդիր էր դնում սովորել, գիտելիքներ կուտակել, յուրացնել գիտությունների «այբուբենը», մարքսիզմի «այբուբենը»։ Ո՛չ, նա նրանց առջև խնդիր էր դնում հաշվանքի հնարավոր ամենաբարձր կետից՝ իրենց հիշողությունը հարստացնել այն բոլոր հարստությունների իմացությամբ, որ մշակել է մարդկությունը։ Եվ ոչ թե պարզապես հիշողությունը հարստացնել, ոչ թե պարզապես անգիր անել դասագրքերում և հանրամատչելի գրքույկներում շարադրված «պատրաստի» հետևություններն ու լոզունգները, այլ, քննադատաբար վերամշակելով գիտության և կուլտուրայի նվաճումները, ինքնուրույն կերպով յուրացնել դրանք, սովորելով գործնականորեն կիրառել յուրացրածը։

Մարքսիզմ-լենինիզմը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց, դա պատրաստի պատասխանների ժողովածու չէ կյանքի բոլոր դեպքերի համար, տիեզերքի «ընդհանուրի համար պարտադիր» պատմական սխեմա կամ մեկընդմիշտ տրված տեսական «մոդել» չէ։ Մարքսիզմ-լենինիզմն ստեղծագործական, շարունակ զարգացող և հարստացող ուսմունք է, դա գոյություն ունեցածի իմացության մեթոդ է՝ նրա անընդհատ շարժման ու փոփոխության մեջ, դա հասարակության հեղափոխական վերակառուցման գիտական ծրագիր է և այդպիսի վերակառուցման համար պայքարի գործիք։

Եվ քանի որ այդպես է, ապա և մարքսիզմ-լենինիզմը հարկավոր է ուսումնասիրել ոչ թե որպես պատրաստի հետևությունների ու ձևակերպումների մի ժողովածու, այլ նրա պատմական կազմավորման, շարժման, գործողության մեջ։ Մարքսիզմ-լենինիզմի «կենդանի ոգին» ըմբռնելու համար, գնահատելու համար այն սկզբունքորեն նորը, որ նա ներմուծել է աշխարհըմբռնման մեջ, որը նրան տարբերում է նախորդ փիլիսոփայական և սոցիալ-տնտեսական ուսմունքներից, հարկավոր է իմանալ այդ ուսմունքները, հարկավոր է յուրացնել և քննադատաբար վերամշակել մարդկային կուլտուրայի ողջ ժառանգությունը, որը ակունք է ծառայել իր համար։ Հարկավոր է անձամբ, կարծես մտովի, անցնել այն ուղին, որ անցել են մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները՝ որոնելով գիտական տեսությունը, հարկավոր է անձամբ գեթ որևէ չափով «կրկնել», ապրել ստեղծագործական մտքի այն ջանքերը, որոնք հանգեցրին նոր աշխարհայացքին։

Տեսական մտածողության կուլտուրայի, ստեղծագործական ունակությունների զարգացման գործում հսկայական դեր է խաղում ամենից առաջ մարքս-լենինյան փիլիսոփայությունը։ Այն սովորեցնում է մտածել կատեգորիաներով, որոնք առավել լրիվ և խոր կերպով են ընդգրկում իրականությունը՝ որպես անընդմեջ զարգացման և փոփոխության բարդ, հակասական, փոփոխական պրոցես, սովորեցնում է չխուսափել սուր պրոբլեմներից և հակասական իրավիճակներից, այլ դրանք ըմբռնել հենց այդ հակասականության մեջ, կարծես փոխադարձաբար միմյանց բացառող հակադրությունների բախման մեջ։

Մարքսիստական փիլիսոփայությունը, ինչպես և ողջ մարքսիստական տեսությունը, ծագել է որպես մարդկության նախորդ ամբողջ հոգևոր զարգացման ընդհանրացման ու քննադատական վերամշակման արդյունք։ Եվ այդ պատճառով էլ Էնգելսը, նշելով, որ ընդհանրացման այն մակարդակներում, որոնց հասել է բնագիտությունը, էմպիրիկ մեթոդներն անզոր են, և որ այստեղ կարող է օգնել միայն տեսական մտածողությունը, գրում էր. «Բայց տեսական մտածողությունը բնածին հատկություն է միայն ընդունակության ձևով։ Այդ ընդունակությունը պետք է զարգանա, կատարելագործվի, իսկ դրա համար մինչև այժմ գոյություն չունի ոչ մի այլ միջոց, քան ամբողջ նախորդ փիլիսոփայության ուսումնասիրությունը»։



Մարքսիզմի կլասիկների երկերում, ինչպես հայտնի է, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի փիլիսոփայությունը ոչ մի տեղ շարադրված չէ որպես գաղափարների ինչ-որ մի ավարտուն գումար։ Բայց նրանք թողել են բազմաթիվ աշխատություններ, որոնցում ցույց է տրված, թե դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդի օգնությամբ ինչպես են լուծվում ամենաբարդ տնտեսական, քաղաքական և սոցիալական պրոբլեմները։ Այդ աշխատությունների թվում կենտրոնական տեղը պատկանում է Կապիտալ-ին։ Բայց, ըստ Լենինի, չի կարելի հասկանալ Կապիտալը, առանց ուսումնասիրելու Հեգելի Տրամաբանությունը։ Իր հերթին, չի կարելի հասկանալ Հեգելին, առանց հետաքրքրություն ցուցաբերելու դեպի Գյոթեն, Շելլինգը, Ֆիխտեն, Սպինոզան, Արիստոտելը, Պլատոնը...

Համանման դրություն գոյություն ունի և՛ քաղաքատնտեսության, և՛ գիտական սոցիալիզմի, և՛ կոմունիզմի մեջ։ Այստեղ ևս անհրաժեշտ է դիմել ամբողջ նախորդ կուլտուրային։

Մարքսը այնպիսի մի մարդու օրինակ էր, որը, իր ժամանակակիցներից ավելի խոր թափանցելով անցյալի կուլտուրական շերտերը, ավելի նշանակալիորեն առաջ անցավ իր ժամանակից, քան որևէ մեկը։ Լինելով համակողմանիորեն զարգացած անհատ, հանրագիտորեն կրթված մարդ, նա ունիվերսալ ձևով էլ դրսևորում էր իրեն. եղել է ո՛չ միայն տնտեսագետ, փիլիսոփա, սոցիոլոգ և պատմաբան, այլև հեղափոխական, կազմակերպիչ, վառ հրապարակախոս ու ժուռնալիստ, սեփական գաղափարների տաղանդավոր մասսայականացնող։ Նույնը կարելի է ասել Էնգելսի, Լենինի մասին։

Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերը, անգամ այն երկերը, որոնք նվիրված են, կարծես, ամենից ավելի «վերացական» տեսական հարցերին, աչքի են ընկնում զգայական մեծագույն շիկացմամբ, բանավիճական սուր և վառ բնույթով, դրանք կարծես վառված են դասակարգային մարտերի կրակով։ Այստեղ յուրաքանչյուր տողում տրոփում է ո՛չ միայն գիտնականի և հեղափոխականի կենդանի, որոնող միտքը, այլև բոցաշունչ հումանիստի, շահագործողների ու նրանց գիտնական կամակատարների, դիպլոմավոր լակեյների դեմ պայքարող մարտիկի ջերմ, անհանգիստ սիրտը։ Ինչպիսի ատելությամբ և ինչպիսի արհամարհանքով էր արտահայտվում Մարքսը, օրինակ, քաղաքատնտեսության վաճառված գրչակների մտքի գիտական «ստորության» մասին, որոնք իրենց գիտական հետևությունները հարմարեցնում են տիրապետող դասակարգի շահերին։

Մարքս-լենինյան տեսությունը «ակադեմիական» դոկտրինա չէ, որը հանգիստ-օբյեկտիվիստորեն իր «պատմության դատն» է անում պատրաստի ձևակերպումներով ու «դատավճիռներով», այլ հեղափոխական կրքոտությամբ տոգորված գիտություն է, որը հրաբորբոք ու այրող խոսքերով ուղղված է բոլոր երկրների միլիոնավոր աշխատավորներին ու շահագործվողներին։

Կարդալով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը, այլ բաներից բացի, գեղագիտական հաճույք ես ստանում նրանց գեղարվեստական փայլուն ձևից, ճիշտ ու պատկերավոր լեզվից։ Եվ այդ ամենը ո՞ւր է կորչում մեր մի քանի դասագրքերում, ձեռնարկներում, դասախոսական կուրսերում։ Որքան կաղլոնի, սխեմատիկ, չոր, անկիրք է երբեմն շարադրվում նյութը։ Կարո՞ղ է արդյոք այդպիսի դասավանդումը վարակել, իր հետևից տանել ունկնդիրներին։

Մեր ժամանակում արդեն քիչ է լինել պարզապես գիտակ, պարզապես կրթված մարդ։ Կարևոր է իր մեջ զարգացնել, դաստիարակել մտածողության որոշակի կուլտուրա, որը, իհարկե, անխզելիորեն կապված է բարոյական և գեղագիտական կուլտուրայի, իսկական ինտելիգենտության դաստիարակության հետ։

Մարքս-լենինյան տեսությունը մասսաների գիտակցությունն ավելի ու ավելի լայնորեն ու ակտիվորեն է հարստացնում աշխարհի նկատմամբ ճիշտ հայացքով, բազմապիսի գործնական խնդիրների լուծման նկատմամբ պատմա-

կանորեն ճիշտ մոտեցմամբ։ Մեր և սոցիալիստական մյուս երկրներում այդ բանին զգալի չափով նպաստում է կուլտուրական շինարարության, աշխատավորների քաղաքական լուսավորության, երիտասարդության գաղափարական դաստիարակության, ընդհանուր և մասնագիտական կրթության անշեղորեն զարգացող փորձը։ ՍՄԿԿ-ն մշտական ուշադրություն է հատկացնում նշված հարցերին, և ամենուրեք իրենց զգացնել են տալիս այդ կուսակցական հոգատարության դրական պտուղները։

Պատանիների ու աղջիկների մարքս-լենինյան կրթությունը բարձրացնելու, նրանց գաղափարական համոզվածությունը, կենսական ակտիվ դիրքորոշումը ձևավորելու ուղղությամբ մեծ աշխատանք է իրականացնում սովետական բարձրագույն դպրոցը։ Ընդսմին, կարևոր դեր են խաղում հասարակական գիտությունների ամբիոնները. նրանք շարունակ կատարելագործում են իրենց ուսումնամեթոդական, գաղափարադաստիարակչական և գիտահետազոտական գործունեությունը։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների՝ անցյալ տարի սեպտեմբերին Մոսկվայում կայացած համամիութենական խորհրդակցությունը նշեց, որ վերջին ժամանակներն զգալիորեն բարձրացել է դասախոսությունների գաղափարատեսական մակարդակը, որոնց ժամանակ ավելի լայնորեն են օգտագործվում արդի գիտության և հասարակական պրակտիկայի նվաճումները, մատուցվող ուսումնական նյութն ավելի օրգանականորեն է կապվում կոմունիստական շինարարության խնդիրների լուծման հետ։ Դասախոսներն ուժեղացրել են ժամանակակից բուրժուական գաղափարախոսության, ռեֆորմիզմի և ռևիզիոնիզմի հարձակողական քննադատությունը։ Բարձրացել է սեմինար պարապմունքների արդյունավետությունը։ Սեմինարներում ավելի հաճախ են կազմակերպվում ստեղծագործական բանավեճեր, քննարկվում են ուսանողական զեկուցումներն ու ռեֆերատները։ Տարածվել է սեմինար պարապմունքներին առաջատար գիտնականների, կուսակցության վետերանների, աշխատանքի հերոսների, խոշոր մասնագետների մասնակցության պրակտիկան։

Հասարակական գիտությունների ամբիոնների աշխատանքի, ուսանողների գաղափարական ողջ պատրաստության կատարելագործման մեջ առանձնապես մեծ դեր խաղաց «Մոսկվայի Ն. Է. Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանում և Սարատովի Ն. Գ. Չերնիշևսկու անվան պետական համալսարանում հասարակական գիտությունների դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացման ուղղությամբ տարվող աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

Բուհերի գիտնական հասարակագետները մշակում են ՍՄԿԿ պատմության, մարքս-լենինյան փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի հրատապ պրոբլեմները և գիտական հետազոտությունների արդյունքները լայնորեն օգտագործում ուսումնական պրոցեսում։

Սակայն ակնհայտ առաջադիմության հետ միասին դեռևս կան որոշակի, չվերացված թերություններ, որոնց հանդեպ չի կարելի աչք փակել։ Հանդիպում են կաղապարի, սխեմատիկ ձեռնարկներ և դասախոսական կուրսեր։ Բուհերում, կուսակցական ուսուցման խմբակներում մարքս-լենինյան տեսության դասավանդումը երբեմն տարվում է դասագրքերն ու գրքույկները ձանձրալիորեն վերապատմելու, միևնույն ճշմարտությունները բազում անգամ կրկնելու միջոցով։ Դեռևս կան դասախոսներ, որոնք քիչ են հոգում այն մասին, որ գիտելիքները դառնան համոզմունքներ, որ երիտասարդությունը տիրապետի տեսական և գործնական պրոբլեմները ինքնուրույն կերպով վերլուծելու ժամանակ մարքս-լենինյան տեսությունն ու մեթոդոլոգիան, դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդը կիրառելու կարողությանը։

Մարքս-լենինյան տեսությունը բուրժուական բազմաթիվ սոցիալական և փիլիսոփայական դոկտրինաների հետ համադրելիս երբեմն բավարարվում են գիտական աշխարհայացքի առավելությունների մասին լոկ հայտարարու-



թյուններով, իսկ թե կոնկրետ ո՞րն է այդ առավելությունը և ո՞րն է այս կամ այն հակամարքսիստական կոնցեպցիայի վնասակարությունը, համոզիչ կերպով ցույց չի տրվում։

Մարքսիզմ-լենինիզմի նման «հեշտացրած» ուսումնասիրումը վնասից բացի ոչինչ տալ չի կարող։ Այն միայն ձանձրույթ է պատճառում, սոցիալ-քաղաքական և փիլիսոփայական առարկաների նկատմամբ պատվաստում է մի վերաբերմունք՝ իբրև անգիր անելու օբյեկտի, ինչ-որ մի ձանձրալի, ձևականորեն պարտադիր, միայն քննություններ հանձնելու համար անհրաժեշտ բանի։ Հասկանալի է, որ ձևական մոտեցումը կենսականորեն այնպիսի մի կարևոր գործի նկատմամբ, ինչպիսին է աշխարհայացքային առարկաների յուրացումը, պատճառ է դառնում, որ տեսության ընդհանուր դրույթները հեշտությամբ վերածվում են դոգմաների, հետևաբար և՝ բովանդակազրկվում։ Դրա հետևանքով երևան են գալիս, մի կողմից, «սկեպտիկներ» և «հուսախաբվածներ», իսկ մյուս կողմից՝ տիրացուներ, դոգմատիկներ և պեդանտներ, որոնք ըմբռնում են տեսության ոչ թե անհանգիստ ոգին, այլ քարացած տառը, անկեղծորեն ենթադրելով, թե այդ «տառով» էլ սպառվում է մարքս-լենինյան տեսությունը։ Նման «մարքսիստների» վերաբերյալ, ինչպես հեգնանքով նկատել է Լենինը, «...Մարքսը հավանաբար կկրկներ մի անգամ Հայնեից իր բերած քաղվածքը. «Ես վիշապներ ցանեցի, բայց բերքահավաքն ինձ լվեր տվեց»» (ԵԼԺ, հ. 3, էջ 15)։

Վ. Ի. Լենինի ողջ գործունեությունը մարքսիստական տեսության ստեղծագործական զարգացման և այդ տեսության նկատմամբ նախ, այսպես կոչված, «լեգալ մարքսիստների», ապա՝ մենշևիկների, II Ինտերնացիոնալի պարագլուխների, բոլոր գույնի օպորտունիստների դոգմատիկ վերաբերմունքի դեմ մղած պայքարի վառ օրինակ է։

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո մարքսիզմի դոկտրինյորներն ու պեդանտները ինչպես արտասահմանում, այնպես էլ երկրի ներսում աշխատում էին ապացուցել, թե այդ հեղափոխությունը «վաղաժամ» է, թե Ռուսաստանը նախ պետք է զարգացնի իր արտադրաուժերը, և ապա միայն կատարի սոցիալիստական վերափոխումներ։ Ընդսմին, նրանք վկայակոչում էին մարքսիստական տեսության դրույթները։ Քանի որ, ըստ մարքսիզմի, նոր հասարակական կարգը ենթադրում է արտադրաուժերի ավելի բարձր մակարդակ, քան կապիտալիզմի օրոք է, ապա նախ հարկավոր է հասնել այդ մակարդակին, և ապա միայն ձեռնամուխ լինել պրոլետարական հեղափոխության ու իրականացնել սոցիալիստական միջոցառումներ։ Ընդհանուր սխեման կարծես թե ճիշտ է։ «Կարծես մարքսիզմ է»։ Իսկ իրականում ծաղր է մարքսիզմի, նրա ստեղծագործական բնույթի նկատմամբ։

Պատասխանելով դոկտրինյորներից մեկին, Ն Սուխանովին, Լենինը գրել է. «Սոցիալիզմ ստեղծելու համար,— ասում եք դուք,— քաղաքակրթվածություն է պահանջվում։ Շա՜տ լավ։ Իսկ ինչո՞ւ մենք չէինք կարող, նախ, ստեղծել մեզ մոտ քաղաքակրթվածության այնպիսի նախադրյալներ, ինչպիսին է կալվածատերերի արտաքսումը և ռուսաստանյան կապիտալիստների արտաքսումը, իսկ հետո արդեն սկսել շարժումը դեպի սոցիալիզմ։ Ո՞ր գրքերում եք կարդացել դուք, որ սովորական պատմական կարգի այդպիսի ձևափոխումներն անթույլատրելի են կամ անհնարին» (Երկեր, հ. 33, էջ 570)։

Մեկ ուրիշ դոկտրինյոր, որը գործում էր մարքսիզմի բնագավառում, ավստրիացի սոցիալ-դեմոկրատ Օտտո Բաուերը, «գիտական» շատ գրքեր է գրել դասակարգային պայքարի և ապագա պրոլետարական հեղափոխության մասին։ Բայց, երբ պրոլետարական հեղափոխությունը Ռուսաստանում դարձավ փաստ, Բաուերը վրդովմունքով հայտնաբերեց, որ այն տեղի է ունեցել «ոչ ըստ գրքերի», թե իբր հարկավոր չէր անմիջապես բռնագրավել կապիտալիստների և կալվածատերերի ունեցվածքը։ Այդ պեդանտը, գրել է Լենինը, «...լավ սերտել է (պեդանտները մտածել չգիտեն, նրանք գիտեն հիշել, կարող են ան-

գիր անել), որ ունեզրկողների ունեզրկումը թեորիապես հնարավոր է առանց բռնագրավման։ Նա միշտ այդ կրկնել է։ Նա այդ անգիր է արել։ Նա անգիր գիտեր այդ 1912 թվականին։ Նա հիշողությամբ կրկնեց այդ 1919 թվականին» (Երկեր, հ. 30, էջ 458)։

Հավանաբար, և՛ Սուխանովը, և՛ Բաուերը պատկանում են կրկնության անարժան առավել բնորոշ օրինակների թվին։

Մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրելու և դասավանդելու ժամանակ կարևոր է հետազոտել նրա գոյացման, ձևավորման, ստեղծագործական զարգացման պրոցեսը բոլոր փուլերում՝ հեղափոխական շարժման պատմության հետ, պրոլետարական կուսակցության պատմության հետ, ստրատեգիայի և տակտիկայի համապատասխան ձևափոխում պահանջող դասակարգային պայքարի փոփոխվող իրադրության հետ սերտ, կենդանի կապի մեջ։ Կարևոր է կոնկրետ օրինակներով բացահայտել ՍՄԿԿ-ի մշտական, սիստեմատիկ գործունեությունը՝ սկսած նրա ստեղծման պահից մինչև մեր օրերը՝ մարքսիզմ-լենինիզմը նրա անխախտ գիտական սկզբունքների ու պահանջների հիման վրա ստեղծագործաբար կիրառելու և զարգացնելու ասպարեզում։

Կարևոր է կարողանալ իսկական ստեղծագործական մարքսիզմը տարբերել ռևիզիոնիզմից, որը, քողարկվելով ստեղծագործական մոտեցման պահանջով, ամլացնում է հասարակության վերափոխման գիտական տեսության բուն հեղափոխական էությունը, մարքսիզմը նենգափոխելով ռևիզիոնիզմով։

Արևմուտքի ժամանակակից հասարակական մտքի համար ընդհանրապես բնորոշ է մարքսիզմի հետ «կոկետություն անելու», մարքսիստի զգեստ հագնելու, «իբր» մարքսիստական ֆրազաբանությամբ քողարկվելու ձգտումը, գիտական տեսության հեղինակությունն օգտագործելով մարտնչող պրոլետարիատի շրջանում մաքսանենգ ձևով թշնամական գաղափարախոսություն տարածելու համար։ Եվ այդ բանը նկատի ունենալով, կոմունիստական դաստիարակության հարցի մասին խոսելիս անհրաժեշտ է համոզիչ ցույց տալ մարքս-լենինյան տեսության սկզբունքային տարբերությունը «կեղծ մարքսիզմի» և «իբր մարքսիզմի» բոլոր ձևերից։

Այնտեղ, որտեղ մենք «թերամշակումներ» ունենք գաղափարական-աշխարհայացքային դաստիարակության գործում, այնտեղ այդ «վակուումը» կարող է, ինչպես հայտնի է, լցվել մարքսիզմից հեռու հայացքներով ու համոզմունքներով։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԸ, զարգացած սոցիալիստական հասարակարգի մարդը հոգևոր մեծ պահանջներ ունեցող անհատ է։ Նա ոչ միայն մասնագետ է իր նեղ, պրոֆեսիոնալ բնագավառում։ Նա ապրում է ներքին և միջազգային կյանքի ամենասուր և ամենաբարդ պրոբլեմների խորքում, նա ապրում է այդ պրոբլեմներով։ Նա ձգտում է ինքնուրույն կերպով հասկանալ դրանք, ունենալ գիտակցական, ակտիվ կենսական դիրքավորում։ Նա իրեն զգում է իր երկրի տերը, ակտիվ մասնակցություն է ունենում ձեռնարկության և ամբողջ հասարակության գործերի կառավարմանը։ Նա մասնակցում է տնտեսական, քաղաքական որոշումների մշակմանը։

Եվ այդ ամբողջ եռուն, բազմապիսի գործունեության մեջ նա ղեկավարվում է մի ճիշտ կողմնորոշիչով՝ մարքս-լենինյան տեսությամբ, դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդոլոգիայով։ «Մարքսիզմ-լենինիզմը,— ասված է կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար։ Նա մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնում, օգնում է որոշելու սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ուղղությունը շատ տարիների համար, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում»։

Իսկ դրանից հետևում է, որ մարքս-լենինյան տեսության ստեղծագործական խոր յուրացումը, իր գաղափարա-քաղաքական կրթության մշտական կատարելագործումը ամենակենսական անհրաժեշտություն են դառնում յուրա-



քանչյուր կոմունիստի համար։ Ոչ թե վերևից պարտադրված, ոչ թե արտաքին անհրաժեշտություն, այլ ներքուստ գիտակցված, բարձրագույն հոգևոր պահանջմունքի վերածվող անհրաժեշտություն։

Սովետական հասարակությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, նրանց նախաձեռնությամբ ու եռանդով, կոմունիզմ կառուցելու նրանց պատրաստակամությամբ ու կարողությամբ և, հետևաբար, նրանց այն իմացությամբ, թե ինչպես կառուցել կոմունիզմ, կոնկրետ ինչ միջոցներով լուծել այդ ճանապարհին բոլորի և յուրաքանչյուրի առջև ծառացող բազմաթիվ ու բարդ խնդիրները։ Նշանակում է, այդպիսի պայմաններում յուրաքանչյուր քաղլափոխին պահանջվում է մարքսիզմ-լենինիզմի ոչ միայն «գրքային» իմացություն, այլև գործնականորեն դրանից օգտվելու, իր գիտելիքները շարունակ խորացնելու, դրանք հարստացնելու կարողություն, կոնտեքստի մեջ մտցնելով պատմա-փիլիսոփայական, սոցիալ-քաղաքական և քաղաքատնտեսական ավելի ու ավելի լայն ընդհանրացումներ։

Հետևաբար, խոսքը մարքսիստական մշտական ինքնակրթության ներքին պահանջմունքի մասին է։ Մարքսիզմ-լենինիզմի իմացությունը, նրա տիրապետումը մեկ ուսումնական դասընթացի շրջանակներում չի տրվում, դրա համար պահանջվում է մտածողության անընդմեջ ինքնուրույն աշխատանք, որը շարունակ նորից ներգրավվում է պրակտիկայի մեջ, պահանջվում է որոշակի ճաշակի դաստիարակում այդ աշխատանքի նկատմամբ, որը ընդունակ է տալու հոգևոր մեծ բավարարություն և նույնիսկ հաճույք, քանի որ ընդլայնում է տեսողության հորիզոնները և բարձրացնում մտավոր հնարավորությունները, նպաստում անհատի ներքին ինքնահաստատմանը և հոգևոր հարստացմանը։

Մարքսիզմ-լենինիզմը մարդկության հոգևոր արժույթների մեծագույն գանձարան է, մի յուրատեսակ կուտակված ու խտացված, քննադատաբար վերամշակված ինտելեկտուալ էներգիա, որին տրված է հեղափոխական բարձր լարում։ Եվ մեզնից՝ այդ հարստության ժառանգորդներից յուրաքանչյուրիս խնդիրն է՝ անհատականորեն «լծվել» դրան, այն դարձնել սեփական ինտելեկտի էներգիա։

Երբ մարքսիզմի ավելի ու ավելի խորացված, ինքնուրույն ուսումնասիրումը, աշխարհայացքի շրջանակների մշտական ընդլայնումը դառնան ամենօրյա հոգևոր պահանջմունք, ավելի բնականորեն ու ամենից լավ կլուծվի Լենինի առաջադրած խնդիրը. «...վերցնենք մարդկային գիտելիքների ամբողջ գումարը... և վերցնենք այնպես, որ կոմունիզմը ձեզ համար ինչ-որ սերտած բան չլինի, այլ դառնա ձեր մտածածը, լինի այն հետևությունները, որոնք անխուսափելի են ժամանակակից կրթության տեսակետից» (Երկեր, հ. 31, էջ 351)։

Աշխատավորների անընդմեջ կրթության և ինքնակրթության անհրաժեշտությունը այժմ թելադրվում է գիտատեխնիկական հեղափոխությամբ, որը շարունակ նորացնում է տեխնիկան և տեխնոլոգիան, լրացնում մեր գիտելիքներն աշխարհի մասին։ Այն թելադրվում է սոցիալ-քաղաքական և տնտեսական վերափոխումների հարաճուն բարդությամբ ու դինամիկությամբ։ Բնական է, որ գաղափարաքաղաքական, փիլիսոփայական, տնտեսագիտական անընդմեջ կրթությունն ու ինքնակրթությունը դարձել են աշխատավորների ընդհանուր որակավորման մակարդակի անշեղ բարձրացման անբաժան մասը։

Ինքնուրույն ստեղծագործական աշխատանքի պահանջմունքը, ինքնուրույն մտածելու ընդունակությունն ու կարողությունը պետք է դաստիարակվեն դեռևս աշակերտական նստարանից։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, արդի պայմաններում, երբ շեշտակիորեն ու արագ աճում է մարդու համար անհրաժեշտ գիտելիքների ծավալը, արդեն անհնար է գլխավոր հույսը դնել փաստերի որոշ գումարի յուրացման վրա, կարևոր է պատվաստել իր գիտելիքները ինքնուրույն լրացնելու, գիտական և քաղաքական ինֆորմացիայի սրընթաց հոսանքի մեջ կողմնորոշվելու կարողություն։ Դրա համար պահանջվում է համապատասխանաբար վերակառուցել ուսուցման մեթոդները և բարելավել դասախոսների պատրաստումը։

Մարքս-լենինյան տեսության, հասարակագիտության ուսումնասիրումը, որն սկսվում է դպրոցում, շարունակվում է ուսումնարաններում, տեխնիկումներում, բուհերում, քաղաքական լուսավորության ցանցում, ինքնակրթության կարգով։ Կարևոր է, որ այդ բոլոր օղակներում ամբողջ ուսուցումը կառուցված լինի լենինյան «սովորել կոմունիզմ» սկզբունքին համապատասխան, ընթանա տեսական պրոբլեմները արդիականության գործնական հարցերի հետ սերտ կապակցության մեջ ստեղծագործաբար ուսումնասիրելու և աշխույժ կերպով քննարկելու իրադրության մեջ։

Կոմունիստական դաստիարակության ասպարեզում մեր ծավալած բազմապիսի գործունեության հաջողության և արդյունավետության գլխավոր ցուցանիշը սոցիալիստական հասարակության անդամների հոգևոր բարձր կուլտուրան է և իսկական կրթվածությունը, նրանց գաղափարայնությունը, գիտակցականությունը, հաստատ համոզվածությունը մարքս-լենինյան տեսության ճշմարտացիության նկատմամբ, ինչպես իր ընդհանուր և մասնագիտական կրթությունն անընդհատ բարձրացնելու, այնպես էլ գիտական աշխարհայացքին ավելի ու ավելի խոր տիրապետելու պահանջմունքը, որը ենթադրում է նոր հասարակարգի կառուցման ամբողջ աշխատանքին գործարար կերպով ու ձեռներեցորեն մասնակցելու ո՛չ միայն իմացություն, այլև կարողություն։

«Коммунист» № 11, 1977.

# ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱԶԱՏԱՐԱՐ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՈՒՂԵԾՐՈՒՄ

Ա. Ն. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխությունը պատմական իրադարձություն էր մեր լայնարձակ հայրենիքի, մոլորակի բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի կյանքում։ Հոկտեմբերից է սկիզբ առնում հայ ժողովրդի սոցիալական ու ազգային վերածնունդը, նրա աննախընթաց վերելքը։

Հայաստանի ազատագրման խնդիրը, հայ ժողովրդի պատմական ճակատագրում արմատական բեկում կատարելու հարցը եղել է բոլշևիկների կուսակցության, Վ. Ի. Լենինի գործունեության ծրագրային խնդիրներից մեկը, որի փայլուն լուծումն ապահովեց մեծ Հոկտեմբերի հաղթանակը։

Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը ռուսական հեղափոխության ընդհանուր քաղաքական խնդիրների շարքում առաջադրեց նաև ճնշված ազգերի, այդ թվում և հայ ժողովրդի, ազատագրման, ինքնորոշման իրավունքի հարցերը, ազգային պետականության կազմավորման, բոլոր ազգերի աշխատավորների ինտերնացիոնալ միասնության անհրաժեշտությունը, որպես նախապայման նրանց ազգային ու սոցիալական ազատագրման, ազգերի հետագա զարգացումը սոցիալիզմի ուղիով տանելու համար։

Հանուն այդ մեծ նպատակի պայքարի ելած լենինյան գործիչների շարքում էին նաև հայ ժողովրդի զավակները՝ Իսահակ Լալայանց, Արշակ Զուրաբյան, Բոգդան Կնունյանց, Ստեփան Շահումյան, Սուրեն Սպանդարյան, Ալեքսանդր Մյասնիկյան, Սարգիս Կասյան, Սարգիս Սրապիոնյան (Լուկաշին), Դանուշ Շահվերդյան, Ասատուր Կախոյան, Սարգիս Խանոյան, Արտաշես Կարինյան, Աշոտ Հովհաննիսյան, Սիմոն Տեր-Պետրոսյան (Կամո) և շատ ուրիշներ, որոնք իրենց ժողովրդի ազատագրման խնդրի լուծումը տեսնում էին ռուսական հեղափոխության հաղթանակի մեջ։

Ռուս մարքսիստների առաջին լրագրի՝ «Իսկրա»-ի էջերում լուսաբանվեցին հայ ժողովրդի վիճակը, նրա աշխատավոր զանգվածների հեղափոխական պայքարի խնդիրները։ 1902 թվականին հայ սոցիալ-դեմոկրատ լենինյանները հրապարակեցին իրենց «Մանիֆեստը», որում արտահայտված էր նրանց լիակատար համերաշխությունը ռուս մարքսիստների հետ և նախանշված էին հայ ժողովրդի սոցիալական ու ազգային-ազատագրական խնդիրները։ Վ. Ի. Լենինը, հանդես գալով «Հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստի մասին» հոդվածով, ողջունեց այն, շեշտեց հատկապես հայ մարքսիստների ճիշտ հարցադրումը՝ «ոչ թե ազգային ավտոնոմիայի, այլ քաղաքական ու քաղաքացիական ազատության և լիակատար իրավահավասարության պահանջ», «պետության

կազմի մեջ մտնող յուրաքանչյուր ազգության ինքնորոշման-իրավունքի պա-
հանջ» (տե՛ս Երկեր, հ. 6, էջ 411)։
1903 թվականին Ռուսաստանում գոյավորվեց լենինյան կուսակցությունը,
որի ծրագրում հստակ ուրվագծվեցին Ռուսաստանի ազգերի, դրանց թվում
և հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրության խնդիրները։ Այդ
ծրագրից բխող գլխավոր հարցերից մեկը աշխատավորների ինտերնացիոնալ
համախմբման և միասնական ուժերով հեղափոխական պայքարի կազմակեր-
պումն էր։
Հայ աշխատավորության ամենահոծ զանգվածները խորապես գիտակցե-
ցին բոլշևիկ-լենինյանների գաղափարների ճշմարտացիությունը, որոնցով և
տոգորվեցին։ Ռուսական առաջին հեղափոխության նախօրյակին, դեռևս
1903 թվականին, Բաքվում, Թիֆլիսում, Երևանում, Գանձակում, Շուշիում,
Ալեքսանդրապոլում, Կարսում և ուրիշ քաղաքներում հարյուր-հազարավոր հայ
աշխատավորներ դուրս եկան քաղաքական ցույցերի՝ արտահայտելով իրենց
ղայրույթն ընդդեմ միապետական կարգերի, բողոքելով ցարական ու սուլթա-
նական իշխանությունների կողմից հայերի նկատմամբ կիրառած բռնու-
թյունների դեմ։ «Քաղաքներին հետևեց նաև պրովինցիան,— գրում էր Ստ. Շա-
հումյանը։— 1903 թվականը շրջադարձային կետ էր կովկասահայերի պատմու-
թյան մեջ... քաղաքական կյանքի համար արթնացող հայ պրովինցիան տեղ-
տեղ զենքը ձեռքին դուրս եկավ իր կեղեքիչների դեմ» (Ստ. Շահումյան, Երկեր,
Հայպետհրատ, 1955, հ. 1, էջ 284)։
Կովկասահայերի հեղափոխական ելույթները նոր, ավելի մասսայական
ծավալ ստացան ռուսական առաջին հեղափոխության և դրան հաջորդող տա-
րիներին։ Հեղափոխական այդ շարժումները որոշակի ազդեցություն ունեցան
նաև արևմտահայ աշխատավորների վրա։ Նրանք ընդվզում էին սուլթանի դեմ,
նետվում պայքարի ասպարեզ, հաճախ գործում զենքով, հուսահատ ճիգեր թա-
փում՝ ազատագրվելու «սա անարգ ճակատագրեն»։ Սակայն այդ ճիգերն ան-
կարող եղան փոխել արևմտահայերի գոյավիճակը։
Բոլշևիկյան կուսակցության կենտրոնական օրգանը «Հայկական հարցի
մասին» հոդվածում շեշտում էր, թե Ռուսաստանի պրոլետարիատը «բազմիցս
իր բողոքն է հայտնել ընդդեմ Թուրքիայում կատարվող գազանությունների։
Առաջավոր բանվորները գիտակցում են և անհրաժեշտ են համարում, որ Թուր-
քահայերի վիճակը պետք է փոփոխել Թուրքիայի հին պետական կարգերը հիմ-
նովին վերակազմելու միջոցով»։ «Մարքսիստները հայտարարում են, որ Արև-
մտյան Հայաստանի ճակատագրի որոշման գործում գլխավոր խոսքը պետք է
պատկանի իրենց՝ արևմտյան հայերին» («Պրավդա», 1914, 1-ը փետրվարի)։
Այդպես էին դնում բոլշևիկներն ամեն մի ճնշված ազգի, այդ թվում նաև
հայ ժողովրդի իրական ազատագրման հարցը։ Ժողովուրդն ինքը պետք է որոշեր
իր բախտը, իր պետական կազմավորման կամ մեկ այլ պետության կազմի
մեջ մնալու խնդիրը։ Բայց այդպես չէին ուզում «հզորները»։ Վ. Ի. Լենինը շեշ-
տում էր, որ իմպերիալիստական պետություններն իրենց տիրապետությունն
իրականացնում են միմիայն մշտական, անընդհատ, երբեք չդադարող պատե-
րազմներով, որոնք շատ հաճախ հանգում են անզեն ժողովուրդների ամենա-
դազանային բնաջնջման, ոչնչացման (տե՛ս Երկեր, հ. 24, էջ 502)։
Իմպերիալիստական պետությունների կիրառած գենոցիդի քաղաքակա-
նության առաջին զոհը դարձավ արևմտահայությունը։ Լենինի հավատարիմ
աշակերտ Ս. Մ. Կիրովը 1916 թվականին հրապարակեց «Տառապյալ ժողովուրդ»
խորագրով հոդվածներ՝ լուսաբանելով արևմտահայության կացության ու ճա-
քառումների դժվարին հարցերը։ Տալով բուրժուական հասարակարգում հայ
ժողովրդի կրած տառապանքների բնութագիրը, Գ. Օրջոնիկիձեն գրել է. «Նոր
պատմության մեջ քիչ կան այնպիսի ժողովուրդներ, որոնք տված լինեին այն-
պիսի մեծ զոհեր, ինչպես հայերը, և քիչ կան այնպիսի երկրներ, որտեղ թա-
փած լինեին այնքան արյուն, որքան Հայաստանում... Վանի շրջակայքում,
Ալաշկերտի հովտում և Հայաստանի մյուս վայրերում, ինչպես նաև ամբողջ



Անատոլիայում փռված են հայ ժողովրդի ոսկորները...» (Г. К. Орджоникидзе, Статьи и речи, М., 1956, стр. 412)։
Այսպիսի տխուր ու մռայլ պատկեր ուներ արևմտահայության բուն գոյա-
վիճակը XX դարի սկզբում, առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ։
Այդպիսի բախտի էին արժանացրել հայ ժողովրդին կալվածատիրական-կապի-
տալիստական հասարակարգը, բուրժուական, իմպերիալիստական մեծ տերու-
թյունները, նրանց գայլաբարո դիվանագետները։
ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ Վ. Ի. Լենինը, առաջադրելով սոցիալիս-
տական հեղափոխության սոցիալ-քաղաքական արմատական խնդիրները, ուր-
վագծեց Ռուսաստանի ժողովուրդների ինքնորոշման իրավունքը, նրանց ինքնու-
րույն սովետական պետականության կազմավորման ծրագիրը. «Թող Ռուսաս-
տանը դառնա ազատ հանրապետությունների միություն»,— ասաց Վլադիմիր
Իլյիչը 1917 թվականի հունիսի 9-ին սովետների համառուսաստանյան առաջին
համագումարում արտասանած իր ճառում (տե՛ս «Պրավդա», 1917 թ., հունի-
սի 30)։
Հաղթանակած սոցիալիստական հեղափոխության առաջին դեկրետներում
և նոր ընտրված սովետական կառավարության՝ լենինյան ժողկոմխորհի որո-
շումներում մշակվեցին և օրենքի ուժով հաստատվեցին Հայաստանում սովե-
տական հանրապետություն ստեղծելու հիմնական դրույթները, որոնք բխում
էին կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության սկզբունք-
ներից։ Այդ սկզբունքներն արձանագրվեցին Սովետական Ռուսաստանի ժող-
կոմխորհի 1917 թ. դեկտեմբերի 29-ին ընդունած «Թուրքահայաստանի մա-
սին» դեկրետում և դրանից բխող դեկլարացիաներում, որոնցում Սովետական
Ռուսաստանի կառավարությունը դատապարտում էր ուժեղ ազգությունների
կողմից փոքր և թույլ ազգերի տերիտորիաների ամեն մի զավթում և նրանց
բռնի միացում, անկախ այն բանից, թե երբ է տեղի ունեցել այդ անեքսիան։
Սովետական կառավարության հռչակած քաղաքականությունը ջերմորեն
ընդունեցին հայ ժողովրդի վերապրող զանգվածները, որոնք պայքարի ելան
իրենց տրված մեծ իրավունքներն իրականացնելու համար։ Երևանում, Ալեք-
սանդրապոլում, Ղափանում, Սևանում, Կարսում, Սարիղամիշում, Վանում և
Հայաստանի շատ այլ վայրերում 1917 թ. վերջերին և 1918 թ. սկզբներին
բանվորները, գյուղացիները և հեղափոխական զինվորներն ընտրեցին աշխա-
տավորների դեպուտատների սովետներ, որոնք կոչված էին դառնալու իշխա-
նության օրգաններ, կենսագործելու Հոկտեմբերյան դեկրետներով հռչակված
իրավունքները և Հայաստանը դարձնելու սովետական հանրապետություն,
ռազմաքաղաքական դաշինքով միավորելու Սովետական Ռուսաստանի հետ։
Ժողկոմխորհը 1917 թ. դեկտեմբերին Ստ. Շահումյանին նշանակեց Կովկասի
գործերի արտակարգ կոմիսար, որին հանձնարարվեց՝ իր ընդհանուր, մեծ խնդ-
իրների հետ միաժամանակ «ամեն կարգի օժանդակություն ցույց տալ» հայ
ժողովրդին՝ նրան տրված իրավունքներն իրականացնելու համար։
Սովետական Ռուսաստանի կառավարությունը 1918 թ. հունվարի 15-ին
քննարկեց գաղթած հայերին օգնելու հարցը։ Ժողկոմսովետի որոշմամբ 6 մլն
194 հազար ռուբլի անվերադարձ հատկացվեց հայ աշխատավորների կարիք-
ների համար։
Սովետների համառուսաստանյան III համագումարը, որ տեղի ունեցավ
1918 թ. հունվարին, ընդունեց Լենինի գրած «Աշխատավոր և շահագործվող
ժողովրդի իրավունքների դեկլարացիան», որը լրիվին սևեռվեց սովետական
առաջին Սահմանադրության մեջ։ Պատմական այդ փաստաթղթում հավանու-
թյուն տրվեց ժողկոմխորհի քաղաքականությանը Հայաստանի նկատմամբ,
վավերացվեց Հայաստանը Հայկական Սովետական Հանրապետություն դարձ-
նելու ծրագիրը։
Սակայն այս անգամ էլ հայ ժողովրդի բախտը չբերեց։ Նրա դեմ կանգնե-
ցին արտաքին ու ներքին հակասովետական ուժերը։
1918 թ. սկզբներից գերմանական իմպերիալիզմի բանակները ներխու-
ժեցին սովետական երկրի արևմտյան մարզերը, զավթեցին Բելոռուսիան, Ուկ-

րաինան, Ղրիմը, Մերձբալթիկան, իսկ կայզերական Գերմանիայի դաշնակից Թուրքիան իր բանակները ուղղեց Հայաստանի և ամբողջ Անդրկովկասի վրա: Սկսվեց օտարերկրյա ռազմական ինտերվենցիան:

Հայ ժողովրդի կենսունակ ուժերը հակահարվածներով դիմավորեցին թուրքական զավթիչների հարձակմանը: Նախ Էրզրումի շրջանում, Սարդարապատի ճակատամարտում, Ղարաքիլիսայում, Ապարանում և Գողթան-Արևիկի լեռնանցքներում հայ զինվորներն ու աշխարհազորականները հերոսական մարտեր մղեցին գերակշռություն ունեցող թուրքական հորդաների դեմ, կասեցրին նրանց շարժումը դեպի Էջմիածին, Երևան, Զանգեզուր, Սևան, Լոռի-Փամբակ: Արևելահայությունը փրկվեց գենոցիդից:

Սակայն այն ժամանակ, երբ հայ աշխատավորները դաժան մարտերում պաշտպանում էին հայրենիքը և գերագույն լարումով ճիգեր գործադրում Հոկտեմբերի դեկրետներով իրենց տրված մեծ իրավունքները կենսագործելու և հեղափոխության բարիքներից օգտվելու համար, թիկունքից հարված էին պատրաստում ազգային դավաճանները՝ մտնելով հակահեղափոխական գործարքների մեջ, կազմակերպելով հակասովետական ուժերին: Այդպես ստեղծվեց Անդրկովկասյան սեյմը, որն Անդրկովկասն անջատեց Սովետական Ռուսաստանից և կատաղի պայքար կազմակերպեց ընդդեմ Բաքվի կոմունայի, ռուսական հեղափոխական զորքի և Անդրկովկասի բոլոր հեղափոխական ուժերի, իշխանությունը հանձնեց Վրաստանում՝ մենշևիկներին, Հայաստանում՝ դաշնակցականներին, իսկ Ադրբեջանում՝ մուսավաթականներին:

Դառնալով կառավարող կուսակցություն, դաշնակցությունը՝ նրա պարագլուխներից կազմված կառավարությունը, արտաքին քաղաքականության մեջ մերժեց Սովետական Ռուսաստանի և սովետական մյուս հանրապետությունների հետ համագործակցման ուղին և կողմնորոշվեց նախ դեպի թուրք-գերմանական բլոկը, ապա՝ Անտանտի տերությունները՝ Անգլիա, Ֆրանսիա, ԱՄՆ-ը, ինչպես նաև հանցավոր կապեր հաստատեց ռուս սպիտակ-գվարդիական գեներալներ Կոլչակի, Դենիկինի և Վրանգելի հետ:

Ներքին կյանքում դաշնակցական կառավարությունն իր գոյության առաջին օրերից մինչև վերջ պայքար կազմակերպեց ընդդեմ աշխատավորների հեղափոխական շարժումների, ցրեց բանվորների և գյուղացիների սովետները, մերժեց Հոկտեմբերի դեկրետներով հռչակված սոցիալ-քաղաքական վերափոխությունների ուղին, հաստատեց բուրժուազիայի դիկտատուրա: Շուրջ երեք տարում այն հրապարակեց 318 օրենք, որոնց բովանդակությունը չշոշափեց երկրի սոցիալ-տնտեսական հարաբերությունները, չխախտեց խոշոր սեփականատերերի դիրքերը, անձեռնմխելի թողեց շահագործման հիմունքները: Գաղափարական հարցերում և հարևան ժողովուրդների հետ փոխհարաբերություններում դաշնակցության վարած կուրսը բորբոքում էր նացիոնալիստական կրքեր և հարուցում ազգային գժտություններ: Հայ ժողովուրդը խորթացել էր հարևաններից և մնացել մենակ թուրքական վտանգի առջև: Այդ վտանգը ռեալ, մահացու դարձավ 1920 թ. աշնանը, երբ թուրքական զավթիչների բանակը հարձակվեց Հայաստանի վրա, իսկ դաշնակցական կառավարությունը, մերժելով Սովետական Ռուսաստանի հետ համագործակցությունը և Հայաստանի բախտը կապելով Արևմուտքի իմպերիալիստական պետությունների հետ, ձախողեց երկրի պաշտպանությունը՝ հանրապետության կենսական տարածությունների մոտ կեսը թողնելով կարաբեքիրյան հորդաներին:

Նոր գաղթ, նոր ջարդեր: Հայերի ազգացրումը շարունակվում էր այս անգամ նաև Արևելյան Հայաստանից: Հայաստանի հանրապետության 1 մլն 300 հազար բնակչից 1920 թ. վերջերին մնացել էր 720 հազար մարդ, իսկ մնացածները կամ կոտորվել էին կամ արտագաղթել:

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՏԱՌԱՊԱԼԻ ԳՈՅԱՎԻՃԱԿՈՒՄ արմատական բեկում կատարելու, նրա փրկության ու վերածննդի միակ հնարավորությունը, միակ ուղին մնում էր մեծ Հոկտեմբերի հռչակած սկզբունքների իրականացումը, Հայաստանում սովետական հանրապետության կազմավորումը և Ռուսաստանի



ու մյուս սովետական հանրապետությունների հետ նրա եղբայրական միավորումը:

Այդ ճշմարիտ ուղին նշմարում էին Հայաստանի կոմունիստները և աշխատավորների լայն զանգվածները: 1920 թ. հունվարին ՀԿ(բ)Կ առաջին ընդհատակյա համաժողովը որոշեց հանրապետության բանվորների, գյուղացիների և ողջ աշխատավորական խավերի ուժերը համախմբել, զինված պայքարի հանել ընդդեմ բուրժուազիայի իշխանության, երկրում հաստատել սովետական հանրապետություն: 1920 թ. մայիսին այդ պայքարը բռնկվեց նոր ուժով, վերածվեց զինված ապստամբության: Հայաստանի մի շարք կենտրոններում՝ Կարսում, Սարիղամիշում, Ալեքսանդրապոլում, Նոր Բայազետում, Զանգեզուրում և այլուր ստեղծվեցին ռազմահեղափոխական կոմիտեներ. Ալեքսանդրապոլի հեղկոմը Հայաստանը հայտարարեց Սովետական Հանրապետություն, որը, սակայն, այդ ժամանակ չկարողացավ վերջնականապես հաստատվել և հաղթանակել: Մայիսյան ապստամբությունը ճնշվեց:

1920 թ. հոկտեմբերի 12-ին Լենինը պաշտոնական նամակ հղեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյին՝ առաջարկելով ընդունել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հարցադրումը և վճռական գործողություններ ձեռնարկել Հայաստանը Սովետական Հանրապետություն հռչակելու, այնտեղ կազմավորվող սովետական կառավարությանը ռազմաքաղաքական օգնություն ցույց տալու, Հայաստան կարմիր բանակի զորքեր ուղարկելու, թուրքական զավթիչների վայրագություններին վերջ դնելու և հայ ժողովրդի ճակատագիրը կոմունիստական կուսակցության ձեռքը վերցնելու մասին (տե՛ս В. И. Ленин, ПСС, т. 54, стр. 717):

Պատմական այդ ակտը կատարվեց 1920 թ. նոյեմբերի 29-ին: Հայաստանը հռչակվեց սովետական հանրապետություն, հայկական բուրժուազիայի, նրա «դաշնակցություն» կուսակցության տիրապետությունը տապալվեց: Ծնվեց Սովետական Հայաստանը, որը մեծ Հոկտեմբերի օրինական զավակն էր: Հայաստանի կոմունիստները, իրենց ձեռքը վերցնելով իշխանությունը, անդուլ պայքար ծավալեցին՝ Հայաստանում իրականացնելու սոցիալ-քաղաքական վերափոխություններ, որոնք սահմանվել էին մեծ Հոկտեմբերի դեկրետներով և կենսագործվել Սովետական Ռուսաստանում:

Հայ ժողովրդի հույժ տառապալի կյանքում արմատական շրջադարձ նշանավորող հիմնական սկզբունքները ձևակերպվեցին Սովետական Հայաստանի առաջին իսկ օրենսդրական ակտերում և ամբողջովին ամրագրվեցին Հայկական ՍՍՀ առաջին Սահմանադրության մեջ:

Սովետական Հայաստանում հաստատվեցին նոր, աշխատավորական, հեղափոխական քաղաքական կարգեր, ընտրվեցին բանվորների և գյուղացիների դեպուտատների սովետներ՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի օրգաններ:

Սովետական Հայաստանի երկունքը շատ ծանր եղավ: 1921 թ. Ալ. Մյասնիկյանը գրում էր. «Սովետական Հայաստանը ստացավ գաղթականներից ու թշվառներից բաղկացած մի այլասերվող ու ապամարդկայնացած ժողովուրդ: Սա չափազանցություն չէ, այլ՝ փաստ: Նա ստացավ որբերի և կմախքացած երեխաների հարյուր հազարավոր մի բանակ: Մեր երկիրը որբերի ու գաղթականների մի վայր է. սա վշտի, հեծեծանքների, սուգի ու տառապանքների մի դժոխք է: Եվ աշխատավորական Հայաստանը, ինչ էլ որ լինի, այդ դժոխքը կվերածի մարդկային կացության»: Սակայն ի՞նչ ճանապարհով: Սովետական Հայաստանը մենակ իր ուժերով անկարող էր դուրս գալ այդ վիճակից:

Լենինը պատգամել է, որ միայն Սովետական Հանրապետությունների Միությունն է կախյալ և փոքր ազգերի փրկությունը (տե՛ս В. И. Ленин, ПСС, т. 41, стр. 167): Սովետական Հայաստանը հանդիսացավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմակերպման նախաձեռնողներից մեկը: 1922 թ. ստեղծվեց ՍՍՀՄ-ը. Սովետական Հայաստանը դարձավ նրա իրավահավասար հիմնադիր անդամը՝ ՌՍՖՍՀ, Ուկրաինական, Բելոռուսական, Ադրբեջանական և Վրացական սովետական հանրապետությունների հետ միասին: Ծավալվեց փոխադարձ օգնություն հանրապետությունների միջև: Հինավուրց Հայաստանը վերածնվեց:

Սովետական իշխանությունը Հայաստանում հաստատեց խաղաղ ապրելու ու աշխատելու պայմաններ, վերջ դրեց օկուպացիոն իշխանությունների ու տեղական մաուզերիստական խմբերի կամայականություններին: Հոկտեմբերի դեկրետների կենսագործումով մեկընդմիշտ վերջ տրվեցին ազգային խտրականությանն ու չարդերին, քայլ առ քայլ բարյացակամ հարաբերություններ հաստատվեցին հարևան ժողովուրդների միջև, ծավալվեց լայն համագործակցություն: Արմատապես վերակառուցվեց հանրապետության հասարակական կյանքը, պետականացվեցին արտադրության հիմնական միջոցները՝ գործարանները, երկաթուղին, հողը, ջուրը, ընդերքը, բանկերը և այլն. խոշոր սեփականատերերն ունեզրկվեցին. կազմակերպվեց հանրային, սոցիալիստական տնտեսություն, որն սկսեց զարգանալ աննախընթաց թափով:

Կոմունիստական կուսակցությունը և միութենական կառավարությունը, կիրառելով նախկինում ճնշված ազգերի փաստական անհավասարությունը վերացնելու քաղաքականություն, Սովետական Հայաստանում (ինչպես նաև մյուս հանրապետություններում) ապահովեցին կապիտալ ներդրումների և տնտեսական զարգացման ավելի արագ և բարձր տեմպեր: Նախապատերազմյան երեք հնգամյակներում (1928—1941 թթ.) Սովետական Միության արդյունաբերության արտադրանքն ավելացավ 6,5, իսկ Սովետական Հայաստանինը՝ 15 անգամ. իններորդ հնգամյակում (1971—1975 թթ.) Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի միջին աճը 43 տոկոս էր, իսկ Սովետական Հայաստանինը՝ 67, տասներորդ հնգամյակում (1976—1980 թթ.) պլանավորված է ՍՍՀՄ-ում այդ աճը հասցնել 35—39, Սովետական Հայաստանում՝ 43—47 տոկոսի:

Սոցիալիստական շինարարության 50 տարիներին (1927—1977 թթ.) Սովետական Հայաստանում կառուցվել, ընդարձակվել ու գործարկվել են շուրջ 700 գործարան, ֆաբրիկա, էլեկտրակայան և այլ մեծ կամ փոքր արդյունաբերական ձեռնարկություն: Միայն հետպատերազմյան 30 տարիներին Հայաստանի արդյունաբերության արտադրանքն ավելացել է ավելի քան 33, իսկ 1976 թվականին՝ նախասովետական ամենաբարձր մակարդակի համեմատ՝ 290 անգամ: Այժմ աշխարհի ավելի քան 70 երկրներ է առաքվում 180 տեսակի արդյունաբերական արտադրանք՝ «Պատրաստվել է Հայաստանում» մակնիշով:

Սովետական Հայաստանի տարածքի վրա նախասովետական ժամանակներում կար 900 գյուղ, որոնց բնակիչների 85 տոկոսը չքավոր ու միջակ տընտեսատերերն էին. նրանց էր պատկանում բոլոր օգտագործելի հողերի միայն 18 տոկոսը: Գյուղացին աղքատ էր, տառապում էր ձեռքի ծանր աշխատանքով, ապրում կարիքի մեջ: Սոցիալիստական հեղափոխությունը հեղաշրջեց գյուղը, պետությունը Սովետական Հայաստանի գյուղատնտեսության մեջ 1921—1928 թթ. ներդրեց 10 մլն ռուբլի, 1928—1941 թթ.՝ 278 մլն, պատերազմի տարիներին ևս՝ 42 մլն, իսկ սովետական կարգերի սկզբից մինչև 1961 թվականը՝ 1 մլրդ 497 մլն ռուբլի: Դրան պետք է ավելացնել նաև կոլտնտեսությունների միջոցներից կատարված ներդրումները՝ 2 մլրդ 674 մլն ռուբլի: Իսկ հետագա երեք հնգամյակներում այդպիսի ներդրումները շատ ավելի ծավալուն դարձան:

Ներկայումս Սովետական Հայաստանում կան 371 կոլտնտեսություններ և 384 պետական տնտեսություն (սովխոզ). կառուցվել է ոռոգման խիտ ցանց, գյուղատնտեսական աշխատանքները հիմնականում մեքենայացված են և լայնորեն կիրառվում է էլեկտրականությունը: Ամբողջովին փոխվել է գյուղի պատկերը: Վերացել է ճանապարհազրկությունը: Սովետական Հայաստանում կառուցված ավտոմոբիլային ճանապարհների երկարությունը 1976 թ. հասավ 8.580 կիլոմետրի:

Արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը սոցիալիզմի հիմքի վրա կառուցելու շնորհիվ վերափոխվեց հայ ժողովրդի սոցիալ-դասակարգային կառուցվածքը: 1976 թ. հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ աշխատում էին 1 մլն 22 հազար բանվորներ ու ծառայողներ, որոնցից 715 հազարը՝ արդյունաբերական ու շինարարական ձեռնարկությունների բանվորներ:



Հայաստանի պատմական առաջընթացում մեծ Հոկտեմբերի գաղափարների հաղթանակով կատարված արմատական շրջադարձի կարևորագույն ցուցանիշներից մեկն էլ կուլտուրայի աննախադեպ վերելքն է:

Սովետական իշխանության առաջին իսկ տարիներից հանրապետության քաղաքներում ու գյուղերում բացվեցին բազմաթիվ դպրոցներ: 1921 թ. հիմնըվեց Հայաստանի պետական համալսարանը, ծավալվեց գրագիտության ուսուցումը մեծահասակների համար: Պետությունը վճռական միջոցներ ձեռնարկեց անցյալի արժեքավոր ժառանգությունը և պրոգրեսիվ ավանդույթները պահպանելու, ուսումնասիրելու, լայնորեն օգտագործելու նոր կյանքի ստեղծման համար:

Ներկայումս Սովետական Հայաստանում կա 1.535 հանրակրթական դըպրոց, որից 891-ը լրիվ միջնակարգ՝ 651 հազար աշակերտով և 43.600 ուսուցիչներով. հանրապետությունում գործում են 13 բարձրագույն ուսումնական հաստատություններ՝ 56 հազար ուսանողներով և 63 միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններ (տեխնիկում, ուսումնարան), որտեղ 54 հազար երիտասարդներ ու պատանիներ սովորում են տարբեր մասնագիտություններ: Այժմ Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ ավելի քան 220 հազար մասնագետներ, իսկ գիտական հիմնարկություններում՝ 18 հազար գիտական աշխատողներ: Մոտ 10 հազար բժիշկ է աշխատում հանրապետության գյուղերում ու քաղաքներում: Սովետական Հայաստանում համակողմանի զարգացել են արվեստն ու գրականությունը, մամուլն ու հրատարակչական գործը, թանգարաններն ու կուլտուր-լուսավորական հիմնարկությունները:

Այսպիսով, սոցիալիզմի հաղթանակը հիմնովին հեղաշրջեց Սովետական Հայաստանի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական կյանքը, անցյալի գիրկն անցան հետամնացությունը, աղքատությունն ու խավարը. ժողովուրդը թռիչք կատարեց դեպի սոցիալիստական լուսավոր կյանքի բարձունքները:

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՃԱԿԱՏԱԳՐՈՒՄ մեծ Հոկտեմբերի ունեցած նշանակության կարևորագույն արտահայտություններից մեկն էլ սոցիալիստական հայ ազգի կազմավորումն է՝ իր նոր սոցիալ-քաղաքական նկարագրով:

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելիս հանրապետությունն ուներ ընդամենը 720 հազար բնակչություն: Սովետական իշխանությունը վերջ դրեց հայերի արտագաղթին, սկսեց հայ ժողովրդի ցրված զանգվածների հավաքումը Սովետական Հայաստան: Դրա հետ մեկտեղ, ժողովրդի նյութական բարեկեցության արմատական բարելավման շնորհիվ, տեղի ունեցավ բնակչության բնական աճ: Մի կողմից ժողովրդի ցրված մասերի կոնսոլիդացիայի և, մյուս կողմից՝ բնական աճի արդյունքը եղավ այն, որ մեկ սերնդի կյանքի ընթացքում, մոտ կես դարում հանրապետության բնակչությունը հասավ մոտ 3 մլն-ի:

Հոկտեմբերի մեծ ուժով վերածնված և վերափոխված հայ ժողովուրդը, հայկական սոցիալիստական ազգը կազմում է սովետական ազգերի համատեղության, նրանց պետական միավորման՝ Սովետական Միության իրավահավասար անդամը: Երբեմնի թշվառ, անզոր, անհետացման վտանգի ենթակա հայ ժողովուրդը կարողացավ ազատություն նվաճել, անցավ շատ փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց, խոյացավ դեպի վեր, արժանի տեղ գրավեց սովետական ժողովուրդների ընտանիքում: Սովետական Հայաստանի ժողովուրդը պատվով քննություն բռնեց մեծ Հայրենականի տարիներին, թիկունքում թե ռազմաճակատում արժանի ավանդ ներդնելով հաղթանակի գործում:

Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյա տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում, խոսելով Սովետական Հայաստանի ժողովրդի բնորոշ առանձնահատկությունների մասին, Լ. Ի. Բրեժնևն ասաց.

«Նախ և առաջ դա բարձր կուլտուրան, կենցաղում մարդկանց հետ շփվելիս ունեցած կուլտուրան է, աշխատանքային կուլտուրան, գիտական մտքի բարձր թռիչքը և արվեստի վառ ինքնատիպությունը: ...Երկրորդ բնորոշ առանձնահատկությունն այն է, որ նա հայրենասերների ժողովուրդ է, որ ջերմ սիրում է իր հայրենի երկիրը՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանը... Սովետական Հայաստանի ժողովուրդը... հայրենասիրության ոգին սքանչելիորեն զուգորդում է սովետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր, հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ: Լինել հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ՝ նշանակում է խորապես ըմբռնել սոցիալիստական աշխարհայացքը, սոցիալիստական մշակույթը, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 251):

«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը,— հաստատում է ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը,— միասնական միութենական բազմազգ պետություն է՝ կազմված ազգերի ազատ ինքնորոշման և իրավահավասար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների կամավոր միավորման հիմունքով: ՍՍՀՄ-ը մարմնավորում է սովետական ժողովրդի պետական միասնությունը, բոլոր ազգերին և ազգություններին համախմբում կոմունիզմի համատեղ կառուցման նպատակով»:

Սովետական Հայաստանը ՍՍՀՄ կազմող 15 իրավահավասար սոցիալիստական պետություններից մեկն է, որի հետագա զարգացումն ու ծաղկումը, նրա ժողովրդի անվտանգությունը երաշխավորված են Սովետական Միության հզորությամբ:



# ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ

## ՀՐԱԲՈՐԲ ԱՅՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ



Մեր աշխատակիցը զրույց ունեցավ 1907 թվականից ՍՄԿԿ անդամ, հեղափոխության վետերան, Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, սոցիալիստական աշխատանքի հերոս Արտաշես Կարինյանի հետ, որի ծննդյան 90-ամյակը պատշաճ հանդիսավորությամբ նշվեց այս տարի:

Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի առթիվ, անդրադառնալով հեղափոխական խոշորագույն իրադարձություններին և անցքերին, որոնց մասնակիցն է եղել ինքը, ընկ. Ա. Կարինյանն ասաց և հետևյալը.

— Բազմաթիվ ու բազմազան են այն ակնարկները, հոդվածներն ու երկերը, որոնք հրատարակվել են ոչ միայն մեր մեծ սովետական հայրենիքում, այլև սոցիալիստական ու մյուս երկրներում, և պերճախոս բնութագրում են հեղափոխական անցքերն ու իրադարձությունները, բոլշևիկների կուսակցության ծավալած բեղմնավոր գործունեությունը, մեծ Հոկտեմբերի հերոսական դրվագները, սովետական ժողովրդի վեհապանծ գործերը: Եվ այդ ամենն այսօր թելադրում են նվաստիս՝ անդրադառնալ բացառապես մի շարք հիշարժան իրական դեպքերի, որոնց ականատես և մասնակից եմ եղել նաև ես:

Այժմ, երբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է հարազատ կուսակցության XXV համագումարի պատմական որոշումները և արժանավայել գործերով է նշանավորում պանծալի Հոկտեմբերի 60-ամյակը, մեծ խորհուրդ կա այն բանում, որ սոցիալիստական հեղափոխության և դրան նախորդած դեպքերի մասնակիցներս այսօր մեր մտորումներն ենք հաղորդում նոր սերնդին:

1906—1910 թվականներին, սովորում էի Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում, ընդգրկված էի համալսարանի մարքսիստական կազմակերպության մեջ: Հիշում եմ այսպիսի մի դեպք, որն ինձ վրա թողել է անջնջելի տպավորություն այն առումով, որ բախտ եմ ունեցել հանդիպելու Լենինին: Համալսարանի մարքսիստական կազմակերպության երկու ղեկավարներ՝ Շալվա Էլիավան ու Նիկոլայ Կրիլենկոն, խնդրել էին Վ. Ի. Լենինին՝

դասախոսություն կարդալ մի խումբ ուսանողների համար: Հեղափոխության վայրէջքի ու ռեակցիայի տարիներն էին: Այդ ժամանակ Իլյիչը Ֆինլանդիայում էր: Ի դեպ ասեմ, որ 1906—1907 թվականներին ընդհատակյա հեղափոխական գործունեություն ծավալելու նպատակով բոլշևիկները կազմակերպել էին գաղտնի բնակարաններ նաև ֆիննական տարբեր բնակավայրերում: Այդպիսի բնակավայրերից էր Տերիոքի ծովափնյա ավանը, ուր տեղի են ունեցել հատուկ կոնֆերանսներ: Եվ ահա համալսարանի ուսանողներս, որպես «տուրիստներ», երկաթուղով Պետերբուրգից մեկնեցինք սկզբում սահմանամերձ Բելոօստրով, ապա իջանք Տերիոքիի կայարանում: Հեղափոխական ուսանողներիս նախապես հայտնի էին նշանաբանը և կայարանի մոտ մեզ սպասող հմուտ ուղեկցողը՝ ուղևորության ղեկավարներից մեկը: Եվ ահա երեք թե չորս ուսանողներից բաղկացած մեր խումբը մոտեցավ անշուք մի շենքի, որը ֆիննական բանվորական միության ակումբն էր և օգտագործվում էր կոնսպիրատիվ նպատակներով: Շրջապատում խորհրդավոր անդորր էր: Փայտյա սանդուղքով բարձրացանք, դուռը բացվեց, և մենք տեսանք մեզնից առաջ ժամանած ուսանողներին. նրանք զրուցում էին Շ. Էլիավայի և միջահասակ ֆիննացի բանվորի հետ: Վերջինս հենց ինքը՝ Լենինն էր:

Լենինի առաջարկությամբ ամբիոնին մոտեցրինք փայտյա հասարակ նստարանները: Հիշում եմ, Լենինը հայտնեց, թե գուցե ավելի լավ կլիներ ընտրել նպատակահարմար տեղ, ապա զրուցել: Սկսվեց զրույց-դասախոսությունը. այն սրտաբաց ու անկաշկանդ էր և խոր տպավորություն թողեց մեզ վրա: Դասախոսությունը կրում էր մտերիմ զրույցի, ունկնդիրներիս համար անակնկալ, պարզ հավաքույթի բնույթ: Վ. Ի. Լենինի տեսական ընդհանրացումներն ու բանիմաց խորհուրդները օգնեցին հեղափոխական ուսանողներիս՝ ճիշտ կողմնորոշվելու ստեղծված իրադրության մեջ: Հետագայում այդ հավաքույթի մասին ես զեկույց եմ հանձնել Շալվա Էլիավային և Վրաստանի կոմկուսակցության քարտուղարներից մեկին՝ Միշա Կախիանիին: Հատկապես Կախիանիի առաջարկությամբ իմ ուրույն նկարագրական ակնարկը թարգմանվեց և տպագրվեց վրացերեն «Կոմունիստի» լրագրի երկրորդ էջի հատուկ թերթոնում: Ի դեպ, Մ. Կախիանիի հետ ես մոտիկ ծանոթ էի տակավին այն օրերին, երբ նա Մոսկվայի համբավավոր Զամոսկվորեչիե թաղամասում շրջանային կոմիտեի քարտուղար Պետրոսյանի հետ պրոպագանդիստական արդյունավետ աշխատանք էր տանում բանվորների շրջանում:

Նույն այդ օրերին Պետրոսյանի հետ ընկերական մտերիմ կապեր ուներ Մոսկվա ժամանած բաքվեցի բանվոր-բոլշևիկ Բաղրամյանը: Թանկարժեք «թութունի» ու ծխախոտի հմուտ «մասնագետ» էր նա և սիրում էր նվիրել մեզ գեղեցիկ տուփերով զանազան ծխախոտներ-սիգարեթներ:

...Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի գործում խոշոր դեր է խաղացել քաղաքական, գաղափարական ու կազմակերպական նախապատրաստական այն ողջ աշխատանքը, որ ձեռնարկվել էր հին Պետերբուրգում, ապա՝ Մոսկվայում, Բաքվում, Կիևում, Օդեսայում և ուրիշ քաղաքներում, որտեղ տեղի են ունեցել նշանակալից շատ դեպքեր: Առանց վարանման կարելի է ասել, որ պատմական այդ հրաբորբ շրջանում՝ 1906—1917 թվականներին ծավալված բանվորական ու ժողովրդական շարժումները և բոլշևիկյան մամուլի ակտիվ գործունեությունը մեծապես նպաստել են համառուսական պրոլետարիատի, աշխատավոր գյուղացիության, առաջավոր մտավորականության գաղափարական կոփմանն ու հեղափոխական վերելքին: Հարկ չեմ համարում անդրադառնալ հեղափոխական շարժումներին, պատմությանն ու դեպքերին, քանի որ հրապարակի վրա կա հարուստ գրականություն: Միայն կուզեի վերհիշել և ընթերցողների ուշադրությունը հրավիրել ուժգին այն պայքարի վրա, որ մղվում էր թեկուզ հենց «Իդեալիզմի պրոբլեմներ» ստվարածավալ ժողովածուի շուրջը համախմբված ռուսական լիբերալիզմի և լիբերալ նարոդնիկության հակագիտական տեսությունների դեմ: Կարծում եմ, դրանով ակներև կդառնան այդ ժամանակաշրջանում տեղի ունեցած գաղափարական բախումների շատ ուրույն բնույթն ու ուղղությունը: Ես չէի ցանկանա այժմ հիշատակել այն մեծ ազդեցությունը, որ թողել է հեղափոխական մարքսիզմի ուսմունքը նույնիսկ բացահայտ հակասական գաղափարներ ունեցող այլակերպ իդեալիստների՝ ռեֆորմիստների-ռևիզիոնիստների մտացածին, կեղծ գիտական մարզանքների վրա: Լավ հայտնի է, որ իրականում նման մարզանքները, նույնիսկ Բերդյաևի, Տուգան-Բարանովսկու և նման ուրիշ գիտունների ճիգերը հետապնդում էին մի հիմնական նպատակ՝ համակերպվել հեղափոխական մարքսիզմի դրույթների աղճատված մեկնաբանություններին և «լեգալ մարքսիզմի» միջոցով բթացնել հեղափոխական մարքսիզմի զորավոր միտքը, թուլացնել նրա հարաճուն վերելքի ուժն ու թափը: Այդ ժամանակաշրջանում տեղի ունեցող բախումներն ու ծավալված վեճերը հաճախ արթնացնում էին նույնիսկ միամիտ ընթերցողներին և նրանց դարձնում ավելի ակտիվ ու եռանդուն:

Հեռավոր այդ օրերին ես, ինչպես վերը հի-



շատակեցի, Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետի ուսանող էի և լավ եմ հիշում, որ առանձնապես «արդյունաբերական ճգնաժամերի» կամ «ռուսական գործարանի պատմությանը» նվիրված լեգալ մարքսիստ-տնտեսագետ պատմաբանի հրատարակություններն իրենց բովանդակությամբ և ուղղությամբ նկատելի չափով օգնում էին անցյալի էջերն ուսումնասիրողներին և նպաստում հեղափոխական մարքսիզմի ջահակիրների արդյունավետ գործունեությանը:

Դժվար է գերագնահատել Վ. Ի. Լենինի Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում գրքի նշանակությունը, որտեղ վիճակագրական հարուստ նյութի ուսումնասիրությամբ ու վերլուծությամբ վերհանված են կապիտալիստական հարաբերությունների հաստատման առանձնահատկությունները Ռուսաստանում:

Մեծ հայտնություն էր Վ. Ի. Լենինի փիլիսոփայական բացառիկ մենագրությունը՝ Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ-ը, որն ուղղված էր այն ժամանակ Ռուսաստանում լայնորեն տարածված իդեալիստական տարբեր հոսանքների դեմ և խոր գիտականությամբ լուսաբանում էր դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքները:

Գաղափարական այդ սուր պայքարի տարիներին Վ. Ի. Լենինի աշխատությունները մեծապես նպաստեցին մարքսիստական հեղափոխական հայացքների տարածմանն ու արմատավորմանը, ռեակցիայի պայմաններում բանվորների, հեղափոխական ուժերի համախմբմանը և ճիշտ կողմնորոշմանը, հակամարքսիստական հոսանքների, սուբյեկտիվ սոցիոլոգիայի դպրոցի մունետիկների մերկացմանն ու պարտությանը:

Հրաշունչ այդ տարիներին իսկ ձևավորվել, կոփվել են Լենինի առաջին զինակիցներն ու համախոհները, որոնք անմնացորդ նվիրաբերվեցին հեղափոխության մեծ գործին:

Նրանցից անջնջելի տպավորություն է թողել մարքս-լենինյան գաղափարների անխոնջ պրոպագանդիստ Ալեքսանդրա Կոլոնտայը, որը նոր էր եկել արտասահմանից: Մեր համալսարանական անլեգալ խմբակը խնդրել էր ֆիննական բանվորական շարժման ակտիվ մասնակցին և կանանց հարցի այդ քաջագիտակին՝ հանդես գալ հրապարակային դասախոսությամբ (տոմսերի գումարը պետք է հատկացվեր անլեգալ «Կարմիր խաչին»՝ հեղափոխական կալանավորներին օգնելու նպատակով):

Համալսարանի դահլիճը լեփ-լեցուն էր: Առաջին աթոռները գրավել էին համալսարանի պրոֆեսուրայի երիտասարդ ներկայացուցիչները: Ամբիոնին մոտեցավ Ալեքսանդրա Կոլոնտայը: Գեղեցիկ, հմայիչ ու տպավորիչ էր տաղանդավոր հռետորուհին: Ոչ մի գիրք կամ թղթի կտոր՝ սեղանին. խոսում էր ազատ, անկաշկանդ, ասես զրուցում էր, գրական աղբյուրներից բերված մեջբերումներն ասում էր անգիր:

Հիշում եմ և նույն դահլիճում Ա. Լունաչարսկու կարդացած դասախոսությունները, որոնցից հավաքված գումարը նույնպես հատկացվեց «Կարմիր խաչին»: Նրանցից մեկի թեման այնքան հրատապ էր և տոմսերն այնպես արագ սպառվեցին, որ դասախոսությունը կրկնվեց:

Լունաչարսկին երիտասարդ էր, առույգ ու եռանդուն: Քննադատության կրակը նա ուղղում էր հակամարքսիստական տեսությունների դեմ, բացահայտում ռուսական նեոնարոդնիկների, ձախ էսեռների, մաքսիմալիստների սխալ հայացքները: Քանի որ այդ օրերին, այսպես կոչված, «սուբյեկտիվ սոցիոլոգիայի» դպրոցի տեսաբան Ն. Կ. Միխայլովսկին, մշակելով «Մեծ մարդկանց մասին» ուսմունքը, գլխավորապես հենվում էր Թոմաս Կարլայլի Հերոսներն ու հերոսականը հանրահայտ գրքի ռուսերեն թարգմանության վրա, Լունաչարսկին իր երրորդ դասախոսությամբ վճռականորեն մերկացրեց իդեալիզմի բոլոր հետևորդների գաղափարական սնանկությունը, ինչպես և ֆրանսիացի սոցիոլոգ Տարդի մտահայեցության մակերեսայնությունը:

Պետերբուրգի զանազան ակումբներում կազմակերպվող համերգները, երաժշտական և ասմունքի երեկոները նույնպես մարքսիստ ուսանողներն օգտագործում էին սովորողների կրթական ու գեղագիտական մակարդակի բարձրացման և նրանց հեղափոխական առաջավոր հայացքների ձևավորման նպատակով: Այն երեկոներին, երբ մայրաքաղաքի համերգասրահի բեմից հնչում էր մեծատաղանդ բանաստեղծ Վալերի Բրյուսովի «Քարտաշը» բանաստեղծությունը, դահլիճում թնդում էին բուռն ծափահարությունները, և ունկնդիրները չէին ցանկանում հպատակվել ոստիկանության սահմանած ռեգլամենտին: Այդ պոեմը բացահայտ բողոք է հին աշխարհի, ցարական կարգերի դեմ, ներծծված հեղափոխական պաթոսով:

...Լենինյան բանակի առաջավոր ջոկատներից էր Բաքվի բազմազգ, ինտերնացիոնալ բոլշևիկյան կազմակերպությունը:

Մեծ Հոկտեմբերի նախամուտին արդեն ես Բաքվում էի, աշխատում էի որպես հրապարակագիր ու պրոպագանդիստ: Բազմազգ արդյունաբերական-բանվորական Բաքու քաղաքն անմիջականորեն արձագանքում էր Պետրոգրադի և Մոսկվայի հեղափոխական շարժումներին և հսկայական դեր էր խաղում այդ շարժումների, հեղափոխական ավանդույթների տարածման ու արմատավորման գործում ոչ միայն Անդրկովկասում, այլև համայն Հարավային Ռուսիայում:

Անհնար է գերագնահատել համաժողովրդական այն ցույցերի, հեղափոխական իրադարձությունների վճռական դերը, որոնք տեղի էին ունենում սև ոսկու քաղաքում և որոնց մասին շատ բան է արձանագրվել մամուլի էջերում ու գրականության մեջ:

...Անհնար է խորին ակնածանքով չհիշել Բաքվի հերոսական կոմունայի անզուգական ղեկավարներին՝ Ստեփան Շահումյանին, Ալյոշա Ջափարիձեին, Մեշադի Ազիզբեկովին, Իվան Ֆիոլետովին և մյուսներին, որոնց հետ ինձ բախտ է վիճակվել աշխատել: Բաքվի կոմունան մեծ Հոկտեմբերի անմիջական արձագանքն էր, սովետական իշխանության մարմնացումը Կովկասում: Այն հզոր փարոս էր, որի անմար լույսը սփռվեց խավարի մեջ խարխափող ողջ Արևելքի վրա:

Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել ոչ միայն Բաքվի հեղափոխական պրոլետարիատի դերը, այլ նաև հերոսական Բաքվի կոմունայի մեծատաղանդ ղեկավարին՝ Ստեփան Շահումյանին: Նրան ուղղված հեռագրում առաջնորդը բացահայտել է Բաքվի կոմունայի իրական գործունեության կարևորագույն նշանակությունը սովետական Ռուսիայի հետ ամրակուռ կապի ստեղծման, լենինյան գաղափարների իրականացման գործում: Բաքվի կոմունայի կառավարության մեջ ես զբաղեցնում էին արդարադատության կոմիսարի պաշտոնը և տեսնում էի, թե ինչպես Բաքվի կոմունան մեծ ազդակ էր համարվում ճնշված ազգերի պայքարի համար, և նրա լուսավոր ցոլքերը հասնում էին Կովկասի ամենահեռավոր անկյունները:

Բաքվի կոմունայի պայքարը հերոսական էր, այն մղվում էր Վ. Ի. Լենինի դրոշի ներքո՝ ընդդեմ իմպերիալիզմի, իմպերիալիստական պետություններին ձայնակցող ու հլու ենթարկվող սև ու դաժան զանգվածների, որոնք ճգնում էին Բաքվի 26 կոմիսարների գնդակահարման միջոցով ի չիք դարձնել սովետական Ռուսիայի հանդեպ Անդրկովկասի ժողովուրդների ունեցած ջերմ համակրանքը, նրա թողած հեղափոխական խոր ազդեցությունը: Այդ բարեկամությունն ու ազդեցությունը խոչընդոտում էին իմպերիալիստական պետությունների նկրտումների իրականացմանը Անդրկովկասում:

...Տարիները հրաշունչ էին, հեղափոխական հորձանքները՝ հզոր ու առինքնող: Եվ տարիների հեռվից դժվար է մտաբերել նախահոկտեմբերյան և հետհոկտեմբերյան այն բոլոր դեպքերն ու անցքերը, որոնք խարխլեցին հին աշխարհի հիմքերը: Դա տարեգիրների գործն է, և այդ կատարվում է: Սակայն այն, ինչ պահպանվել է հուշերումս, իրոք, ռոմանտիկ, հերոսական դրվագներ են և, կարծում եմ, ուշագրավ կլինեն նաև արդի սերունդների համար: Երջանիկ եմ, որ մասնակիցն եմ Հոկտեմբերյան վաթսունամյա երթի և իմ ավանդն ունեմ նոր կյանքի ստեղծման գործում:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՅՐՈՒՂԻՆԵՐՈՎ

ԺԱՄԱՆԱԿԸ ՇԱՏ ԲԱՆ է ջնջում հիշողություններից ու տպավորություններից: Այն կարծես ֆիլտրում է այդ ամենը և թողնում միայն ուսանելին ու հիշարժանը: Ինչպես բոլոր տարեց մարդիկ, ես էլ հաճախ անձնատուր եմ լինում անցյալի հուշերին: 77-ամյա իմ կյանքից, բնականաբար, միշտ առանձնանում, առաջին պլանի վրա է մղվում 1917 թվականը՝ իր պատմական իրադարձություններով ու դեպքերով:

Ես ապրում էի Բաքվում: Դա, ճիշտ է, Պետրոգրադ կամ Մոսկվա չէր, բայց այստեղ խոր արձագանք էին գտնում այն բոլոր կարևոր իրադարձությունները, որ տեղի էին ունենում հեղափոխության խոշորագույն կենտրոններում: Հիշում եմ 1917-ի մայիսմեկյան տոնակատարությունը: Ռուսաստանի տարբեր քաղաքներից, այդ թվում և Պետրոգրադից ու Մոսկվայից, Բաքու էին եկել բանվորական պատվիրակություններ: Տոնակատարությունը հիշարժան էր ոչ միայն նրանով, որ Աշխատավորների միջազգային համերաշխության օրը առաջին անգամ նշվում էր լեգալ պայմաններում, այլև այն բանով, որ անցավ բացառապես բոլշևիկյան լոզունգների ներքո՝ «Կորչի պատերազմը», «Կեցցե՛ սովետների իշխանությունը», «Հողը՝ գյուղացիներին»... Իսկ դա ստույգ վկայությունն էր այն բանի, որ աշխատավորական զանգվածները հետզհետե ավելի ու ավելի էին համախմբվում բոլշևիկների շուրջը:

Փետրվարյան հեղափոխությունից հետո քաղաքական կյանքը Բաքվում առհասարակ խիստ ակտիվացել էր: Հեղափոխությունից անմիջապես հետո այստեղ Ստեփան Շահումյանի ղեկավարությամբ սկսեց լույս տեսնել «Բակինսկի ռաբոչի» բոլշևիկյան թերթը, որը կարճ ժամանակամիջոցում լայն մասսայականություն նվաճեց: Թերթը կարդում էին գրաճանաչ բոլոր բանվորները՝ անկախ կուսակցական պատկանելությունից:

Եվ ահա մի անգամ, որքան հիշում եմ մայիսի վերջերին, թերթում հաղորդում եղավ այն մասին, որ այդ օրը աղջիկների գիմնազիայում



Շահումյանը ելույթ է ունենալու: Առանց հապաղելու շտապեցի այնտեղ: Դահլիճը լեփլեցուն էր: Հավաքվել էին ամենատարբեր համոզմունքի տեր մարդիկ, և դա հասկանալի էր. կուսակցություններից յուրաքանչյուրը, իսկ դրանք բավական մեծ թիվ էին կազմում, պայքարում էր բանվորական մասսաներին իր կողմը գրավելու համար: Մինչ կժամաներ Շահումյանը (նա հայտնել էր, որ կգա կես ժամ ուշացումով), ժողովում արդեն բուռն կրքեր էին բորբոքվել: Բացելով ժողովը, Ա. Ջափարիձեն ցանկացողներին խնդրեց ելույթ ունենալ: Առաջինը հանդես եկավ աջ էսեռ Ումանսկին: Նա անվերապահորեն պաշտպանում էր ժամանակավոր կառավարության քաղաքականությունը, իսկ բոլշևիկներին քննադատում էր իմպերիալիստական պատերազմը դադարեցնելու նրանց լոզունգների համար: Ժողովականները զայրալից բացականչություններով պատասխանեցին այդ հռետորին:

Հետո ամբիոնին մոտեցավ մենշևիկ Այոլոն: Սա դեռ չէր ավարտել իր խոսքը, երբ դահլիճ մտավ Շահումյանը: Բոլորը ոտքի կանգնեցին: Ծափերը և աղմուկը խլացնում էին Այոլոյի ասածները, ու նա ստիպված թողեց ամբիոնը: Խոսքը տրվեց Շահումյանին: Պարզ ու հստակ նա շարադրեց հեղափոխության խնդիրները իշխանությունը բանվորների, գյուղացիների ու զինվորների սովետներին հանձնելու գործում, մերկացրեց ժամանակավոր կառավարության դավաճանական քաղաքականությունը և այն խայտառակ դերը, որ այդ քաղաքականության պաշտպանության նպատակով ստանձնել էին մենշևիկները, էսէռները, ազգայնական կուսակցությունները : Իր ելույթը Շահումյանն ավարտեց հողի ու պատերազմի դադարեցման վերաբերյալ բոլշևիկյան հայտնի լոզունգների հռչակմամբ, որոնք ընդունվեցին բուռն ծափահարություններով: Շահումյանից հետո մյուս կուսակցություններից ոչ ոք այլևս չհամարձակվեց ելույթ ունենալ:

Շահումյանի ելույթի ու նրա թողած ազդեցության տպավորությունն այնքան խորն էր, որ մենք՝ երիտասարդ բանվորներս, դուրս գալով դահլիճից, գրկախառնվում էինք ու երդվում ընդմիշտ հավատարիմ մնալ հեղափոխությանն ու բոլշևիկյան կուսակցությանը:

Երկրորդ անգամ ինձ բախտ վիճակվեց Շահումյանին լսելու 1918 թ. մարտի սկզբին՝ Բաքվի Մայիլովի անվան թատրոնում: Հոկտեմբերյան հեղափոխությունն արդեն կատարվել էր, և Շահումյանը ՌՍՖՍՀ ժողկոմխորհի կողմից նշանակվել էր որպես Կովկասի գործերի արտակարգ կոմիսար: Անդրկովկասը ծանր օրեր էր ապրում. բուրժուանացիոնալիստական կուսակցություններն իրենց ազգադավ քաղաքականությամբ ամեն գնով փորձում էին այն կտրել Սովետական Ռուսաստանից ու վերածել նրա դեմ մղվող պայքարի պլացդարմի: Շահումյանի ելույթն ուղղված էր այդ դավաճանական քաղաքականության մերկացմանը:



1918 թ. մարտի 18-ին սկսվեց մուսավաթական «վայրի դիվիզիայի» ապստամբությունը: Այն ժամանակ ես կարմիրգվարդիական զինվոր էի: Բոլորս համակված էինք հեղափոխական Բաքուն իմպերիալիստական ոտնձգություններից պաշտպանելու վճռականությամբ: «Վայրի դիվիզիան», որքան էլ սպառնալից էր նրա անունը, չդիմացավ բանվորական Բաքվի հուժկու հարվածներին և պարտություն կրեց: Քաղաքում հաստատվեց սովետական իշխանություն՝ հանձին Բաքվի կոմունայի:

Կոմունայի անկումից հետո իշխանությունը զավթեցին մուսավաթիստները: Կուսակցությունն ընդհատակ անցավ: Ես գրաշար դարձա և աշխատում էի այն տպարանում, ուր անկուսակցական անվան տակ տպագրվում էր բոլշևիկյան «Նաբատ» թերթը, որն ըստ էության փոխարինում էր «Բակինսկի ռաբոչի»-ին: Լրագրի խմբագիրը փաստորեն կուսակցության Բաքվի կոմիտեի ակտիվ գործիչ Լոմինաձեն էր: Խմբագրությունում էր աշխատում նաև հիանալի հեղափոխական, ակտիվ բոլշևիկ Օլգա Շատու-

նովսկայան: Գրեթե բոլոր գրաշարները կուսակցության անդամ էին: Թերթը շարունակում էր «Բակինսկի ռաբոչի»-ի փայլուն տրադիցիաները: Մուսավաթական իշխանությունները քանիցըս փակեցին այն, բայց ամեն անգամ հրատարակվում էր մի նոր անվամբ՝ «Պրոլետարի», «Ռաբոչի», և փաստորեն շարունակեց լույս տեսնել մինչև սովետական կարգերի հաղթանակը:

1919 թ. նոյեմբերին Բաքվի ընդհատակյա կոմիտեի քարտուղար Սարգիս Դանիելյանն ինձ առաջարկեց կուսակցական աշխատանք կատարելու նպատակով անհապաղ մեկնել Երևան և լինել Արմենկոմի տրամադրության տակ: Այդ մասին տեղյակ դարձվեց Արմենկոմի անդամ Ա. Նուրիջանյանը: Մի քանի օր անց, կուսակցական համապատասխան փաստաթղթերով ես մեկնեցի Հայաստան՝ Նուրիջանյանի հետ նախապես պայմանավորվելով հանդիպել Ալեքսանդրապոլում: Սանահին կայարանում հանդիպեցի ընկերներ Կասյանին ու Մռավյանին, որոնք դաշնակցական կառավարության որոշմամբ արտաքսվել էին Հայաստանից: Ինձ համար դա շատ օգտակար հանդիպում էր, քանի որ հնարավորություն տվեց հանգամանորեն տեղեկանալու Հայաստանի քաղաքական իրադրությանը:

Ալեքսանդրապոլ հասնելուն պես ներկայացա ընդհատակյա կոմիտեի քարտուղարին, որի ազգանունը, եթե չեմ սխալվում, Գրիգորյան էր: Նա ինձ առաջարկեց աշխատանքի անցնել Ալեքսանդրապոլում: Կոնսպիրատիվ նկատառումներով ձևակերպեցին իբրև հին Հայաստանի աշխարհագրության դասատու: Բայց շուտով այստեղ եկավ Նուրիջանյանը, որը և նպատակահարմար գտավ ինձ ուղարկել Երևան՝ Արմենկոմի տրամադրության տակ:

Նոյեմբերի վերջերին արդեն Երևանում էի: Հանդիպեցի Սերգո Մարտիկյանին, որին գիտեի Բաքվի ընդհատակից, ինչպես նաև Թավաքալյանին, Խանջյանին, Հասրաթյանին, Շահգելդյանին, Տեր-Սիմոնյանին, Ալավերդյանին և այլ ընկերների: Նշանակվեցի Արմենկոմի հրահանգիչ՝ Էջմիածնի գավառում: Իսկ 1920 թ. փետրվարին (կամ մարտին) Սաթո Չոլախյանին և ինձ իր մոտ կանչեց Արմենկոմի քարտուղար Հայկազ Կոստանյանը և առաջարկեց ձեռնամուխ լինել «Գյուղացու ձայն» թերթի հրատարակմանը: Դա Հայաստանի գյուղացիական միության օրգանն էր: Միության ղեկավար, պառլամենտի անդամ Մելքոնյանը, որն այն ժամանակ սուսկ համակրում էր մեր կուսակցությանը, միաժամանակ համարվում էր թերթի խմբագիրը, իսկ իրականում այդ դերը կատարում էր Դրաստամատ Տեր-Սիմոնյանը:

Մենք գործի անցանք: «Գյուղացու ձայնը» շաբաթաթերթ էր, բայց լույս էր տեսնում այնպես, ինչպես թույլ էին տալիս հանգամանքները: Սաթոն զբաղվում էր թերթի առաքմամբ, իսկ ես էջերը պատրաստում էի տպագրական մեքենայի համար: Հիշում եմ, թե ինչպես ըստեղծվեց մայիսմեկյան համարը: Շատ աշխատեց հատկապես Դ. Տեր-Սիմոնյանը. չէ՞ որ նախապատրաստվում էր մայիսյան ապստամբությունը: Թերթն իր էջերում պետք է արտացոլեր Հայաստանի աշխատավորության կամքն ու պատրաստակամությունը՝ պայքարելու հանուն սովետական իշխանության:

Աշխատեցինք ամբողջ երեք շաբաթ: Ապրիլի վերջին շարվածքն արդեն պատրաստ էր, օտիսկները հանված էին սրբագրության համար: Հենց այդ ժամանակ էլ տպարան եկավ ընկ. Մելքոնյանը: Նա կարդաց նյութերը (այսպես, թե այնպես՝ թերթն իր ստորագրությամբ էր լույս տեսնելու) և, դառնալով մեզ, ասաց. «Լսեք, նա, ով կարդա այս թերթը, անպայման կասի, որ սա բոլշևիկյան թերթ է, իսկ դրա տակ իմ՝ անկուսակցական մարդու, ստորագրությունն է դըրված»:

Այս խոսակցության մասին մենք տեղյակ պահեցինք ընկ. Տեր-Սիմոնյանին: Շուտով Մելքոնյանին հրավիրեցին Արմենկոմ, ընդունեցին կուսակցության մեջ, կոոպտացիայի կարգով Արմենկոմի կազմի մեջ մտցրին: Շատ չանցած, նա արդեն Ալեքսանդրապոլի ռազմահեղափոխական կոմիտեի անդամ էր*:

«Գյուղացու ձայնի» մայիսմեկյան համարը բարեհաջող լույս տեսավ և տարածվեց ողջ Հայաստանում: Թերթն աշխատավորությանը կոչ էր անում ոտքի ելնել հանուն Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի: Թերթի հաջորդ համարը նվիրվելու էր մայիսմեկյան տոնակատարության արդյունքների ամփոփմանը: Համարի նշանաբանն էր՝ «Հանուն սովետական իշխանության, կորչի դաշնակների իշխանությունը»: Մայիսի 5-ին համարը լրիվ պատրաստ էր արդեն, նյութերին ծանոթացել ու հավանություն էին տվել Արմենկոմի ընկերները: Պատրաստվում էինք սկսել թերթի տպագրությունը, երբ տպարան ներկայացավ կարճահասակ մի մարդ՝ զինված մաուզերիստի հետ: Այդ մարդը դիմեց մեզ ու ասաց. «Դաշնակցության արևելյան բյուրոյի որոշմամբ ձեր թերթը փակվում է»: Երբ մենք նրանից պահանջեցինք ներկայացնել համապատասխան գրավոր կարգադրություն այդ մասին, նա մի կտոր թուղթ վերցրեց, իր ասածները գրեց թղթի վրա, հետո այն հանձնեց մաուզերիստին և կարգադրեց շարվածքը հանել տպագրական մեքենայից, ցրել այն, իսկ մեզ՝ աշխատողներիս, տանել ոստիկանատուն:

*Մայիսյան ապստամբության ճնշումից հետո Մելքոնյանին հաջողվեց փախչել Ալեքսանդրապոլից և թաքնվել Էջմիածնի գավառի հայրենի գյուղում: Այստեղ էլ նրան բռնեցին դաշնակցական ոստիկանները և Երևանի ճանապարհին, իբրև թե փախուստի փորձ անելու համար, գնդակահարեցին:*



Ոստիկանատանը մեզ խուզարկեցին, բայց ոչինչ չհայտնաբերեցին: Երկու շաբաթ անց ինձ ազատ արձակեցին: Անհապաղ ներկայացա Սերգո Մարտիկյանին: Պարզվեց, որ իշխանությունները հաշվեհարդար են տեսել նաև կուսակցության Երևանի կոմիտեի հետ, որի նախկին կազմից չէր ձերբակալվել միայն Ա. Խանջյանը: Հենց նա էլ դարձավ նորաստեղծ կոմիտեի նախագահ, իսկ կոմիտեի կազմի մեջ մտան Վահան Շահգելդյանը, Լևոն Հովհաննիսյանը, Արամ Մանուչարյանը, Հասրաթյանը և տողերիս հեղինակը:

Մենք գործի անցանք: Կոմիտեի առջև ծառացած գլխավոր խնդիրը մինչև Մայիսյան ապըստամբությունը եղած կուսբջիջների վերականգնումն էր: Շուտով, սակայն, Երևանի կոմիտեին հարկ եղավ զբաղվել շատ ավելի լայն մասշտաբի խնդիրներով: Դա տեղի ունեցավ այն բանից հետո, երբ ձերբակալվեցին Արմենկոմի ազատ մնացած երկու անդամները ևս՝ Ալավերդյանն ու Մարտիկյանը, և մեր կոմիտեն ստիպված էր փոխարինել նաև Արմենկոմին:

Այս պայմաններում մեզ, բնականաբար, հարկ էր լինում հաճախ մեկնել Հայաստանի շրջանները և տեղերում ծանոթանալ գործերի դրությանը: Եղա Ղարաքիլիսայում, ուր մեր կապավորը դեղատան աշխատակից Վաղինակ Մռավյանն էր (Ասքանազ Մռավյանի եղբայրը), և Դիլիջանում: Այս երկու տեղերում կուսկազմակերպությունները շարունակում էին գործել: Իսկ Նոր Բայազետում, օրինակ, կազմակերպությունը Մայիսյան ապստամբությունից հետո ամբողջովին ջախջախվել էր, և երբ ես եղա այնտեղ, ինձ հաջողվեց տեսնել նրա անդամներից միայն մեկին:

Մենք բոլորովին կտրված էինք Զանգեզուրից: Մամուլում լուրեր էին լինում այնտեղ կատարվող իրադարձությունների մասին, բայց մենք մեր սեփական ինֆորմացիան ունենալու խիստ անհրաժեշտություն էինք զգում: 1920 թ. հուլիսի վերջերին կամ օգոստոսի սկզբին Երևանի կոմիտեում հարց դրվեց մոտիկից ծանոթանալու Զանգեզուրի քաղաքական իրադրությանը: Այդ նպատակով ինձ հանձնարարեցին մեկնել Գորիս: Պետք է նշել, որ Գորիսում բավական խառը իրավիճակ էր: Այստեղ, ճիշտ է, արդեն սովետական իշխանություն էր հաստատվել, բայց հետո խմբապետ Համազասպի բրիգադը գավթել էր քաղաքը և տեր ու տնօրեն դարձել: Սակայն այդ վիճակը տևեց մի քանի օր միայն: Շուտով ապստամբած զանգեզուրցիներին Շուշիից օգնության հասան 11-րդ կարմիր բանակի զորամասերը և դաշնակցական բանդաներին դուրս վռնդեցին Զանգեզուրի սահմաններից:

Գորիսից մեկնեցի Բաքու ու ներկայացա Հայաստանի կոմկուսի Կենտկոմի արտասահմանյան բյուրոյին՝ ընկերներ Կոստանյանին ու Նուրիջանյանին, հանգամանորեն զեկուցեցի նրանց ընդհատակում գործող մեր կուսկազմակերպությունների վիճակի մասին:

1920 թ. օգոստոսի վերջերին նորից Երևանում էի: Մեր կոմիտեի գրեթե ամբողջ կազմը ձերբակալվել ու նետվել էր Երևանի բանտը: Ազատ էր մնացել միայն Լևոն Հովհաննիսյանը, որն աշխատում էր իբրև հեռագրիչ: Խոր կսկիծով իմացա մեր կազմակերպությանը հասած ծանր կորուստների մասին. դաշնակ դահիճները գազանաբար գնդակահարել էին ընկերներ Ալավերդյանին, Մուսայելյանին և Ղարիբջանյանին: Բանտից անստորագիր մի նամակ ստացա: Աղասի Խանջյանից էր: Նա խնդրում էր կենտրոնին (Մոսկվային) տեղյակ պահել դաշնակցականների գազանային արարքների մասին: Լևոն Հովհաննիսյանի հետ պատրաստեցինք հեռագրի տեքստը: Հովհաննիսյանին հաջողվել էր դա Մոսկվա հաղորդել այն պահին, երբ դաշնակցական կառավարության արտաքին գործերի նախարար Շանթը ուղիղ գծով Մոսկվայից բանակցում էր իր կառավարության հետ:

Ավարտվում էր 1920 թվականի սեպտեմբերը: Քաղաքական իրադրությունը Հայաստանում հետզհետե շիկանում էր: Անտանելի ծանր վիճակ էր ստեղծվել թուրքական ռազմաճակատում, մարտեր էին մղվում Օլթիի ու Սարիղամիշի շրջաններում: Մեկը մյուսի ետևից Երևան էին գալիս անգլիական դիվանագետներն ու գեներալները: Դաշնակցական կառվարությունը նրանց ձեռքին զենք էր դարձել: Շուկայի հրապարակում (այժմ՝ Կոմունարների այգի) կախաղան էր սարքված՝ «Մահ հայ ժողովրդի դավաճաններին՝ բոլշևիկներին» մակագրությամբ: Ամենուրեք ձերբակալություններ էին կատարվում, բանտերը լեփ-լեցուն էին քաղաքական բանտարկյալներով:

Բանտի ընկերներն ավելի ու ավելի հաճախ էին պահանջում ստեղծված իրավիճակի մասին տեղյակ պահել ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյին: 1920 թ. հոկտեմբերի սկզբին ես մեկնեցի Թիֆլիս և այնտեղ հանդիպեցի կուսակցության Կովկասյան բյուրոյի քարտուղարներից մեկի՝ Սանդրո Թումանյանի հետ: Պետք է ասել, որ Թիֆլիսում կոմունիստական կազմակերպություններն արդեն գործում էին լեգալ ձևով, բայց և այնպես ռեպրեսիաները շարունակվում էին: Այստեղ սպասում էին ՌՍՖՍՀ-ի մշտական ներ-

կայացուցիչ Ս. Մ. Կիրովի ժամանմանը, իսկ ներկայացուցչության մի խումբ աշխատողներ, այդ թվում և Ս. Տեր-Գաբրիելյանը, արդեն գտնըվում էին Թիֆլիսում: Ս. Թումանյանի խորհըրդով ես հանդիպեցի ընկ. Տեր-Գաբրիելյանի հետ: Առաջին անգամ էի տեսնում նրան: Մեր զրույցը երկար տևեց: Տեր-Գաբրիելյանն ամեն կերպ հանգստացնում էր ինձ և հավատացնում, որ քաղաքական իրադրությունը Հայաստանում շուտով կփոխվի: Նա նկատի ուներ Մոսկվայում վարվող բանակցությունները և այն, որ Հայաստանում նույնպես շուտով իր գործունեությունը պիտի սկսեր ՌՍՖՍՀ-ի մշտական ներկայացուցչությունը:

Տեր-Գաբրիելյանի հանձնարարությամբ ես նորից մեկնեցի Բաքու և այնտեղ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի արտասահմանյան բյուրոյին ներկայանալուց անմիջապես հետո, ընդգրկվեցի 11-րդ կարմիր բանակի հայկական առանձին գնդի կազմում: Շուտով հայտնի դարձավ, որ գունդը 31-րդ դիվիզիայի զորամասերի թվում պետք է մտնի Հայաստան՝ օգնելու ապըստամբած աշխատավորությանը: Հայտնի չէր, սակայն, թե որտեղ մենք պետք է անցնեինք սահմանը: Նախապես ենթադրվում էր, որ դա տեղի էր ունենալու Բասարգեչարի շրջանում, և մենք, իրոք, մի քանի օր մնացինք Բասարգեչարի մոտակայքում: Բայց հետո այստեղից մեզ տեղափոխեցին Աղստաֆա, իսկ այնտեղից էլ՝ Ղազախ:

Նոյեմբերի 28-ի վաղ առավոտյան անցանք սահմանը և շարժվեցինք դեպի Քարվանսարա (այժմ Իջևան): Խճուղու երկու կողմերում սմենուրեք գյուղացիներ էին խմբվել, որոնք կարմիր դրոշներով ողջունում էին մեր մուտքը: Իրիկնադեմին մենք արդեն Քարվանսարայում էինք: Խանդավառ ոգևորությամբ բնակչությունն ընդունեց իր ազատարարներին:

Նոյեմբերի 29-ին, ավտոմեքենայով Քարվանսարա եկավ Սովետական Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն՝ ընկերներ Կասյանը, Նուրիջանյանը և Կոստանյանը: Տեղի ունեցավ աշխատավորների միտինգ, որտեղ ընկ. Կասյանը հռչակեց Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի վերաբերյալ պատմական դեկլարացիան:

Հաջորդ օրն ինձ ազատեցին գնդից և նշանակեցին գավառի արտակարգ հանձնաժողովի նախագահ ու ռազմահեղափոխական կոմիտեի նախագահի տեղակալ: Այդ նույն օրն այստեղից հեռագիր ուղարկվեց կուսակցության առաջնորդ Վ. Ի. Լենինին՝ Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի մասին:

Հայ ժողովրդի համար անմոռանալի է 1920 թվականի նոյեմբերի 29-ը, որից սկիզբ առավ նրա նոր պատմությունը: Իսկ դրա համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղծվել էին արդեն մեծ Հոկտեմբերի հաղթանակով: Ահա թե ինչու մեր ժողովուրդը, ինչպես և սովետական երկրի մյուս բոլոր ժողովուրդները, մեծ Հոկտեմբերի փառապանծ տարելիցը նշում են որպես իրենց ամենանվիրական ազգային տոնը:

**ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ (ԱՐՏՈ)**
**ՍՄԿԿ անդամ 1917 թ. սեպտեմբերից**

# ՄԱՐՏՆՉՈՒՄ ԷԻՆՔ ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ աշխատանքային սխրանքներով դիմավորեցին մեծ Հոկտեմբերի պանծալի հոբելյանը: Նրա նախօրեին մեր երկրի բարձրագույն օրգանը՝ Գերագույն սովետը, ընդունեց նոր Սահմանադրությունը: Եվ այդ նշանակալի իրադարձություններն իմ հոգում արթնացրին ջերմ հուշեր:

...Հոկտեմբերյան մեծ հեղափոխության լուրը ես լսեցի Ալեքսանդրապոլում (Լենինական), երբ 17 տարեկան էի և սովորում էի առևտրական ուսումնարանում: Ուսուցիչներից մեկը՝ ռուս զինվորական, մեզ շարք կանգնեցրեց և տարավ դեպի զորանոցները՝ զինվորների հետ համատեղ նշելու այդ իրադարձությունը: Հետո ես ընդունվեցի ռազմական դպրոց, մասնակցեցի Ղարաքիլիսայի (Կիրովական) կռիվներին, որ մղվում էին Հայաստան ներխուժած թուրքական զորքերի դեմ: Հետագայում ինձ բախտ վիճակվեց դառնալ 11-րդ կարմիր բանակի զինվոր:

Քսան թվականի վերջերին, հայ ժողովրդի համար օրհասական այդ օրերին, 11-րդ կարմիր բանակի օգնությամբ Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն:

Երբ Հայաստանի կոմկուսակցությունն ու Սովետական Հայաստանի հեղկոմը, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ, նոր էին ձեռնամուխ եղել ավերված երկրի վերակառուցմանն ու անօթևան գաղթականների տեղավորմանը, դաշնակցականները, գաղտնի կապ հաստատելով





թուրքական բանակի շտաբի ներկայացուցիչների հետ, զենք բարձրացրին Հայաստանի նորաստեղծ աշխատավորական իշխանության դեմ: Սկսվեցին քաղաքացիական կռիվները:

Դաշնակների ավանտյուրան մեծ վտանգ էր սպառնում երիտասարդ սովետական հանրապետությանը: Անհրաժեշտ էր անհապաղ միջոցներ ձեռնարկել:

Փետրվարի կեսերին Հայաստանի կարմիր զորագնդերը, պարտիզանական ջոկատները, ինչպես և 11-րդ կարմիր բանակի տեղի ստորաբաժանումները ետ քաշվելով՝ կենտրոնացան Ղամարլուում: Այստեղ փոխադրվեց ՀԿ (բ) Կ Կենտկոմը և Հայաստանի Հեղկոմը:

Դեռևս 1920 թ. դեկտեմբերի սկզբներին Ղամարլուի կուսշրջկոմը (քարտուղար՝ Գ. Այվազյան, հետագայում՝ Ա. Մուրադյան) և շրջհեղկոմը (նախագահ՝ Ռ. Դաշտոյան) անհրաժեշտ գտան իրենց տրամադրության տակ ունենալ լրացուցիչ զինված ջոկատ: Նրանք դիմեցին ՀԿ (բ) Կ Կենտկոմին, Հայաստանի հեղկոմին և հայկական կարմիր բանակի հրամանատարությանը՝ տեղում հեծյալ ջոկատ կազմակերպելու խնդրանքով: Կարճ ժամանակամիջոցում ստեղծվեց 120 մարտիկներից բաղկացած ջոկատ, ստորաբաժանումների հրամանատարներ նշանակվեցին կուսշրջկոմի կողմից ուղարկված այնպիսի կոփված կոմունիստներ, ինչպիսիք էին Հովհաննես Կոստանյանը, Պետյա Բաբայանը, Արարատ Խուդոյանը:

Ջոկատն օր-օրի համալրվում էր կոմունիստներով և տեղի ակտիվ գյուղացիներով, որոնք անցյալում եղել էին բանակում և գիտեին ռազմական գործը: Այդտեղ տեղաբաշխված առաջին առանձին հայկական հրաձգային բրիգադի կոմիսարն էր Լիպարիտ Մխչյանը: Բրիգադի կազմում էր և մեր հեծյալ ջոկատը, որն իր մարտական ակտիվ գործողություններով Ղամարլուի շրջանում մեծապես օգնեց սովետական իշխանության ամրապնդմանը: Նկատենք, որ դեռևս 1919 թ. Ղամարլուի շրջանում գոյություն ուներ ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպություն, որը տեղում ղեկավարում էր գյուղացիության պայքարը դաշնակների դեմ: Եվ, պատահական չէ, որ 1921 թ. փետրվարին ՀԿ (բ) Կ Կենտկոմը, Հայաստանի հեղկոմը, հայկական կարմիր բանակի հրամանատարությունը նպատակահարմար գտան տեղափոխվել Ղամարլու:

1921 թ. փետրվարի 15-ին հայկական կարմիր բանակի հրամանատարությունը տեղեկություններ է ստանում, որ Բաշ-Գառնիում կենտրոնացել են դաշնակցականների զինված ուժերը, որոնց նպատակն է հարձակվել Երևանի վրա և դրանով իսկ սկսել իրենց ավանտյուրան:

Հայկական կարմիր բանակի հրամանատար Մ. Վ. Մոլկաչանովը որոշում է Գառնիի ուղղությամբ ուղարկել երկու զորամաս՝ մեկը Երևանից, մյուսը՝ Ղամարլուի շրջանից: Նրա նպատակն էր Ղամարլուից ուղարկված զորամասի ուժերով Բաշ-Գառնիից քշել դաշնակներին և նրանց գցել Երևանի զորամասի հարվածի տակ ու ոչնչացնել: Ղամարլուի զորամասում կար 300 մարդ 2-րդ հայկական գնդից. նրան էին տրամադրվել նաև 4-րդ լեռնային հրետանային մարտկոցը և Ղամարլուի հեծյալ ջոկատի մեկ դասակ: Զորամասը գլխավորում էր 2-րդ գնդի հրամանատար Ա. Ֆիշելևիչը:

Ինչպես հետագայում պարզվեց, դաշնակները Բաշ-Գառնիում ունեին մեծ թվով տեղանքին լավ ծանոթ զինված ուժեր, որոնք մի քանի անգամ գերակշռում էին կարմիր բանակի զորամասերին: Դաշնակների առավելությունը նաև այն էր, որ նրանք գտնվում էին անմատչելի դիրքերում:

Ֆիշելևիչի զորամասը Բաշ-Գառնիին մոտենալիս ընկնում է ծանր վիճակի մեջ և, չնայած ուժեղ դիմադրությանը, մեծ կորուստներ կրում: Ուժերն անհավասար էին, Ֆիշելևիչը, ավելորդ զոհերից խուսափելու համար, ստիպված նահանջում է դեպի Աղբաշ՝ այժմ Արևշատ: (Հետագա մարտական գործողությունների ժամանակ հերոսի մահով զոհվեց Ա. Ֆիշելևիչը: Նրան թաղեցինք Արևշատի գերեզմանոցում):

Այդ տագնապալի լուրը հասնում է Ղամարլու: Կուսշրջկոմը որոշում է շտապ մոբիլիզացնել

շրջանի բոլոր կոմունիստներին, գյուղերի հեղկոմների նախագահներին և ակտիվիստներին, կազմել նրանցից կոմունիստական ջոկատ և օգնել կարմիր բանակի զորամասերին՝ ետ մղելու թշնամուն: Հենց նույն գիշերը, կարճ ժամանակում կուսշրջկոմի կոչով ներկայացավ 300 մարդ: Ինձ նշանակեցին այդ ջոկատի հրամանատար:

Գիշերային խավարում հայկական առաջին առանձին բրիգադի կոմիսար Լիպարիտ Մխչյանի ջանքերով զենք բաժանվեց կոմունիստներին: Նրա ղեկավարությամբ այդ ջոկատը ուրիշ ստորաբաժանումների հետ շարժվեց Աղբաշ—Գառնիի ուղղությամբ: Մեզ հետ էր նաև բրիգադի շտաբի կոմիսար Սեներերիմ Ենոքյանը, որը հետագայում, երբ Լ. Մխչյանը ծանր վիրավորվեց, նրա փոխարեն նշանակվեց բրիգադի կոմիսար:

Ժամանակին օգնության հասանք: Մեզ տեսնելով՝ Ֆիշելևիչը շատ ուրախացավ: Մեր ջոկատը Մխչյանի հրամանով անցավ գրոհի: Հակառակորդը չէր սպասում այդ հարվածին, ուստի շփոթվեց և խուճապի մատնվեց:

Չնայած թշնամու ուժերի գերակշռությանը, մեր մարտիկները, որոնց մեծ մասը կոմունիստներ էին, արհամարհելով մահը, անձնուրաց նետվում էին մարտի: Հակառակորդը, չդիմանալով մեր հարվածին, նահանջեց դեպի Բաշ-Գառնի: Փետրվարի 17-ի երեկոյան Լ. Մխչյանը մեկնեց Երևան, որտեղ դրությունը լուրջ էր, և մարտերը ծավալվում էին քաղաքի մատույցներում:

Ավելորդ զոհերից խուսափելու համար ե ե[illegible]նելով ստրատեգիական նկատառումներից, Հայաստանի Հեղկոմը, ՀԿ(բ)Կ Կենտկոմը և կարմիր բանակի հրամանատարությունը որոշում են թողնել Երևանը և նահանջել դեպի Ղամարլու:

Մեր ջոկատը հրաման ստացավ առաջ շարժվել Իմանշալուի (այժմ՝ Մխչյան) ուղղությամբ և ապահովել Երևանից նահանջողների անվտանգությունը: Կռվի այս պատասխանատու հատվածում էր կոմիսար Մխչյանը: Մինչև փետրվարի 20-ը մեր ջոկատը համառորեն պաշտպանեց այդ բնագիծը: Թշնամին, լրացուցիչ ուժեր նետելով մարտի մեջ, փորձեց շրջանցել մեզ, բայց ջոկատը, որպես հետնապահ զորամաս, անթերի կատարեց իր մարտական խնդիրը:

Երբ մենք Ղամարլուում էինք, մեզ միացավ Ներքին Ղույլասարի (այժմ Դիմիտրով) ասորիներից կազմված մոտ 40 մարտիկների խումբը՝ կոմունիստ Պավել Բաբանի ղեկավարությամբ:

Հայկական կարմիր բանակի զորամասերը (2-րդ և 3-րդ հրաձգային գնդերը), 20-րդ դիվիզիայի (ռուսական) 178-րդ գունդը, հրետանային 3 մարտկոցներ և 2 գրահագնացք դասավորվեցին Չիմանքենդ, Վեդի, Ենգիջա, Կարալար, Քիչիկ Վեդի (Փոքր Վեդի), Խոր-Վիրապ բնագծում:

Մեր ջոկատը համալրեց 3-րդ հայկական գունդը և դարձավ նրա 3-րդ գումարտակը, որի կազմում էին 7-րդ, 8-րդ և 9-րդ վաշտերը, 3-րդ գնդացրային խումբը: Կոմունիստները հիմնականում ընդգրկվեցին 8-րդ վաշտի մեջ, և այն կոչվեց կոմունիստական. վաշտի հրամանատար նշանակվեցի ես:

Հետագա մարտերում մեր վաշտն աչքի ընկավ, և նրա 14 մարտիկներ ու հրամանատարներ պարգևատրվեցին Հայկական ՍՍՀ Կարմիր դրոշի շքանշանով:

Երևանից նահանջած կոմունիստներից, սովետական և կուսակցական աշխատողներից (մոտ 300 մարդ, Ն. Ս. Ցանիշևսկու գլխավորությամբ) կազմակերպվեց կոմունիստական ջոկատ, որն արիաբար մասնակցեց դաշնակների դեմ մղված կռիվներին:

Մեր զորքերը գտնվում էին ծանր պայմաններում. չունեինք բավարար պարենամթերք, պակասում էր ռազմական հանդերձանքը, հատկապես՝ հրետանին: Չնայած դրան, մեր ռազմիկները թշնամու դեմ կռվում էին արիաբար և ջախջախիչ հարվածներ հասցնում նրան: Խռովարարների զորամասերում կային նաև մեծ թվով մարդիկ, որոնց դաշնակները ներքաշել էին բռնի կերպով:

Հայաստանի հեղկոմը (նախագահ՝ Ս. Կասյան), կարմիր բանակի հրամանատարությունն ամեն կերպ ջանում էին վերջ տալ արյունահեղ կռիվներին: Այդ նպատակով նրանք բազմիցս առաջարկեցին ավանտյուրայի ղեկավարներին՝ վայր դնել զենքը: Բայց դաշնակցական սպաներն ու խմբապետները մերժում էին մեր առաջարկները և շարունակում իրենց բանդիտական գործողությունները:

Ղամարլուի ռազմաճակատում մարտական գործողությունները տևեցին գրեթե 45 օր: Այդ ժամանակամիջոցում մեր զորքերը երկու անգամ անցան հարձակման Երևանի ուղղությամբ (փետրվարի 25-ին և մարտի 14-ին)՝ Սովետական Հայաստանի մայրաքաղաքն ազատագրելու նպատակով: Բայց, նկատի ունենալով, որ հյուսիսից օգնության եկող 11-րդ կարմիր բանակի զորամասերը, դաժան ձմռան ու սաստիկ ձյան պատճառով, չէին կարողացել առաջ շարժվել Ախտայից (Հրազդան), մեր զորքերը ետ քաշվեցին և նորից ամրացան իրենց ելման կետերում:

Մարտի 8-ին հակառակորդը մեզ համար անսպասելիորեն անցավ հարձակման: Նրա նպատակն էր ջախջախել մեր զորքերը Ղամարլուի ռազմաճակատում և ապա ուժերը տեղափոխել հյուսիս (Ախտա—Ելենովկա), որտեղից նրանց սպառնում էին 11-րդ կարմիր բանակի զորամասերը:

Թշնամուն հաջողվեց Խոր-Վիրապի տեղամասում շրջանցել մեր զորամասերը և թափանցել թիկունք: Մեր զորքերն անցան հակահարձակման և ետ շպրտեցին հակառակորդին: Այդ օրը մեծ սխրանք գործեց մեր բրիգադի կոմիսար Լ. Մխչյանը: Նա կազմակերպեց ջոկատ ու, զրահագնացքի օգնությամբ թափանցելով հակառակորդի թիկունքը, ջախջախիչ հարված հասցրեց թշնամուն: Նրա հրամանով մեր գումարտակը նույնպես անցավ հարձակման ու շրջանցելով թշնամուն՝ հարվածեց թիկունքից: Հակառակորդը լիովին ջախջախվեց՝ Խոր-Վիրապի ճահճուտներում թողնելով բազում դիակներ: Քիչիկ Վեդի գյուղի մոտ Լ. Մխչյանը ծանր վիրավորվեց և տեղափոխվեց Նախիջևան՝ զինվորական հոսպիտալ: Ապրիլի 2-ին, Երևանն ազատագրելուց հետո, նրան տեղափոխեցին Երևանի զինվորական հոսպիտալ, որտեղ ապրիլի 16-ին նա մահացավ: Բոցաշունչ բոլշևիկի դին հողին հանձնվեց կոմունարների այգում՝ Ս. Ալավերդյանի, Ս. Մուսայելյանի և Բ. Ղարիբջանյանի շիրիմների մոտ: Ղամարլուի ռազմաճակատում դաշնակների դեմ մղվող կռիվներին մասնակցում էր անվանի բանաստեղծ Եղիշե Չարենցը. Լ. Մխչյանի մտերիմ ընկերն էր նա և նրա մահից հետո գրեց **Իմ ընկեր Լիպոն** բալլադը:

Ղամարլուի ռազմաճակատում կարմիր բանակի տարած հաղթանակը նպաստավոր պայմաններ ստեղծեց՝ հետագա մարտական գործողությունները Դարալագյազում, ապա Զանգեզուրում ծավալելու և դաշնակ մաուզերիստական խմբերին գլխովին ջախջախելու, Հայաստանում սովետական կարգերն ամրապնդելու համար:

Քաղաքացիական կռիվների տարիներին մեր զորամասում իրենց քաջությամբ աչքի ընկան Ներսես Բալայանը, Գևորգ Սաֆրազբեկյանը, Յաշա Մարտիրոսյանը, Սերյոժա Մարտիրոսյանը, Նավասարդ Սարդարյանը և շատ ուրիշներ: Մարտիկների համակրանքն էր վայելում զինբժիշկ Ռուբեն Յոլյանը (հետագայում հռչակավոր վիրաբույժ, պրոֆեսոր): Ղամարլուի ռազմաճակատում հանուն սովետների ամրապնդման հերոսաբար մարտնչում էին նաև տեղացի պարտիզաններ Արտաշես Ամիրզադյանը, Սամսոն Մարտիրոսյանը, Խաչատուր Նազարյանը, Վանուշ Առաքելյանը, Արամ Շահգելդյանը, Գրիգոր Բաբայանը, Մային Վարդանյանը, Ռեհան Ֆահրադյանը, Սաթենիկ Վարդանյանը և ուրիշներ: Ուրախությունս անսահման էր, երբ զորամասի շարքի առաջ Ալ. Մյասնիկյանն ինձ հանձնեց ՀՍՍՀ Կարմիր դրոշի շքանշան:

Այդ ահեղ օրերից անցել է գրեթե վաթսուն տարի: Ես երջանիկ եմ, որ Հոկտեմբերի երկիրը գլխավորում է մարդկության առաջընթացը, դարձել է խաղաղության ու դեմոկրատիայի պատվարն ամբողջ աշխարհում: Երջանիկ եմ և այն բանի համար, որ ինձ բախտ վիճակվեց մասնակցելու ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի՝ մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված համատեղ նիստին, որ տեղի ունեցավ նոյեմբերի 2-ին, Մոսկվայում:

Հոբելյանական այդ նիստում հանրագումարի բերվեցին սովետական ժողովրդի պատմական նվաճումները: Այն անցավ աշխարհի պրոգրեսիվ մարդկության համախմբվածության նշանաբանով: Նիստում հանդես եկան նաև արտասահմանյան երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների շատ ներկայացուցիչներ: Նրանք բարձր էին գնահատում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վճռական դերն իրենց երկրներում հեղափոխական պրոցեսի խորացման գործում և երախտագիտություն էին արտահայտում ՍՄԿԿ Կենտկոմին այն բանի համար, որ իրենց հնարավորություն է տրված՝ մասնակցելու մեծ տոնակատարությանը, ծանոթանալու այն խոշոր նվաճումներին, որ ձեռք է բերել սովետական ժողովուրդը՝ ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ:

Ինձ վրա առանձնապես անջնջելի տպավորություն թողեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, որը հագեցած էր տեսական խոր ընդհանրացումներով, մեր երկրի ժողովուրդների լուսաշող ապագայի նկատմամբ խոր հավատով:

**Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

**ՍՄԿԿ անդամ 1920 թ.,**

**պաշտոնաթող գնդապետ**

# ԱՆՁՆՎԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԳԱՍԻՔԸ

Հ. Հ. ՏՈՆՈՅԱՆ
ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐՆ աննախընթաց նվաճումներով են դիմավորում մեծ Հոկտեմբերի պանծալի տարելիցը։ Նրանց տոնական զեկույցների ընդհանուր ոգուն միանգամայն համահնչուն են և այն հասումները, որոնք ձեռք են բերել մեր շրջանի աշխատավորները։

Գրեթե մեկ տարի է անցել այն օրերից, երբ մենք հանգամանորեն քննարկում էինք մեր անելիքները, որոշում այն բնագծերը, որոնք պետք է նվաճվեին հոբելյանական տարում։ Այդ գործի մեջ ներգրավվել էր բառիս բուն իմաստով շրջանի ողջ աշխատավորությունը։ Պետք էր տեսնել, թե ինչպիսի՜ ակտիվությամբ, եղած հնարավորությունները լիովին բացահայտելու և կյանքի կոչելու գործի կարևորության ինչպիսի՜ ըմբռնմամբ էին վերաբերվում այդ խնդրին ամենատարբեր զբաղմունքի տեր մարդիկ՝ բանվորները, հողագործները, մտավորականները... Եվ դա, իհարկե, բնական է. մենք պատրաստվում էինք դիմավորելու հիրավի պատմական տարելից՝ 60-ամյակը այն նշանավոր իրադարձության, որով դրվեց մեր նոր կյանքի սկիզբը։

Մեր մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման համար հզոր խթան հանդիսացավ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, որի նախագծի համաժողովրդական քննարկմանը նրանք մասնակցեցին մեծ խանդավառությամբ։ Յուրաքանչյուր ախուրյանցի Սահմանադրությունն ընկալում է որպես արդի դարաշրջանի, իր հավասարը չունեցող ամենահումանիստական փաստաթուղթ։ Այն տոգորված է աշխատավորության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման, նրա հոգևոր աշխարհի հարստացման նկատմամբ սովետական պետության ու կոմկուսակցության ջերմ հոգատարությամբ։ Չէ՛ որ Սահմանադրությունը հստակորեն սահմանել է սովետական քաղաքացիների իրավունքները, ազատություններն ու պարտականությունները։

Մեր տնտեսական ու սոցիալ-կուլտուրական բոլոր նվաճումները մեծ Հոկտեմբերի հաղթանակի և ՍՍՀՄ նախորդ սահմանադրությունների գործողության անմիջական արդյունքն են։ Եվ մենք այսօր մեծ հավատով ենք նայում զարգացած սոցիալիզմի երկրի Հիմնական օրենքին, որը նոր հեռանկարներ է բացում աշխատավոր մարդկանց է՛լ ավելի պայծառ ապագայի համար։

Այսօր, երբ վաթսունամյա բարձունքից հայացք ենք նետում անցած ճանապարհի վրա, պարզորոշ տեսնում ենք այն լավն ու նորը, որ ձեռք ենք բերել այդ տարիներին։

Թվերը կարող են լույս սփռել հնի ու նորի վրա, արտացոլել մեծ վերափո-



խումների իրական պատկերը։ Մինչև հեղափոխությունը Ախուրյանի շրջանն ընդգրկող տարածքում եղել է երեք տասնյակից ավելի բնակավայր, բայց գործել է ընդամենը 11 ծխական դպրոց։ Շիրակցին չէր կարող երազել անգամ առողջապահական և կուլտուր-կենցաղային օջախների մասին։ Իսկ ա՞յժմ։ Այժմ շրջանում կան 33 հանրակրթական միջնակարգ և ութամյա դպրոց, 20 մսուր-մանկապարտեզ, երաժշտական երեք դպրոց, երկու միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություն, որտեղ սովորում են տասնմեկ հազարից ավելի մանուկներ, պատանիներ ու աղջիկներ։ Այսօր շրջանի բնակչության առողջության պահպանման գործով զբաղվում են ավելի քան 300 բուժաշխատողներ։ Բոլոր գյուղերն ունեն կուլտուրայի իրենց օջախները՝ ակումբներ, կուլտուրայի տներ, գրադարաններ։

Այո՛, Ախուրյանը վերափոխումների մեծ քայլեր է արել։ Ամենուրեք, նախկին գետնափոր հյուղակների փոխարեն, հառնել են կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների բարեշեն, նորատիպ առանձնատները։ Էլեկտրականությունն ու գազօջախը, հեռուստացույցն ու հեռախոսը, ժամանակակից կահույքն ու սառնարանը, կենցաղային մյուս հարմարանքները ամուր մուտք են գործել ախուրյանցիների կենցաղը։ Տարեցտարի ավելանում է մեր մարդկանց վաստակը, բարձրանում նրանց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը, հարստանում հոգևոր աշխարհը։

ԱԽՈՒՐՅԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐՆ իրենց աննախադեպ նվաճումները համարում են մեծ Հոկտեմբերի, կուսակցության և սովետական կառավարության հոգատարության արգասիք։ Եվ օրինաչափ է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը բարձրացրել է նրանց ակտիվությունը, նոր լիցք հաղորդել ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման, պետական պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար ծավալած նրանց հերոսական պայքարին։

Սոցիալիստական գործարար մրցություն ծավալելով ի պատիվ այդ մեծ տարելիցի, շրջանի աշխատավորական կոլեկտիվները հոբելյանական տարվա յուրաքանչյուր օր նշանավորում են հայրենասիրական կոնկրետ գործերով, ձգտում ժամկետից շուտ կատարել պետական առաջադրանքները, նվաճել նոր բնագծեր, տասներորդ հնգամյակը դարձնել իրոք բարձր արդյունավետության ու որակի հնգամյակ։

Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալված սոցմրցությունը համընդհանուր վերելք է առաջացրել մեր կոլեկտիվներում։ Նրանք ընդօրինակում են առաջավորների փորձը, դառնում արտադրության առաջընթացը խթանող հայրենասիրական նախաձեռնությունների հեղինակ։ Տակավին տարեսկզբին ախուրյանցիները հանրապետությունում առաջիններից մեկը արձագանքեցին ռոստովցիների՝ «Ապրում ես գյուղում, տիրապետիր տեխնիկային» նախաձեռնությանը։ Շուտով կուսկազմակերպությունների լայն աջակցությամբ տնտեսություններում ստեղծվեցին մեխանիզատորների պարտադիր ուսուցման դասընթացներ, 100-ից ավելի հմուտ և առաջավոր մեխանիզատորներ՝ վարպետ-դաստիարակներ, ստանձնեցին երիտասարդներին գյուղատնտեսական տեխնիկային ծանոթացնելու շեֆությունը։ Այդ դասընթացներում սովորող ավելի քան 300 պատանիներ ընթացիկ տարվա գարնանացանի նախօրյակին ստացան գյուղական մեխանիզատորի վկայական։ Սա նոր ու լավ երևույթ է, որը պետք է ավելի խորացնենք ու զարգացնենք «Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու, նրա պահպանումը բարելավելու, կոլտնտեսությունները և սովխոզները մեխանիզատորների կադրերով ապահովելու և նրանց գյուղատնտեսության մեջ ամրացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կենսագործման նպատակով։

Մեր մարդկանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացման արգասիք են նրանց նախաձեռնությամբ ծավալված հայրենասիրա-

կան շարժումները։ Լայն թափ հաղորդելով հոբելյանական տարվա մրցությանը՝ մի շարք տնտեսություններ պատրաստակամություն հայտնեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի 1977 թ. պլանները կատարել նոյեմբերի 7-ին։ Կուսշրջկոմը պաշտպանեց աշխատավորական կոլեկտիվների այդ նախաձեռնությունը և նրանց սահմանած նոր բնագծերը համարեց որպես հոբելյանական տարվա սոցիալիստական պարտավորություններ։ Այդ պայքարը լավ արդյունքներ է տալիս։ Շրջանը ժամկետից չորս ամիս շուտ զեկուցեց պետությանը կաթի վաճառքի տարեկան պլանը կատարելու մասին։ Արդեն հոկտեմբերի 1-ի դրությամբ, նախատեսված 8.830 տոննայի փոխարեն, մթերակայան էր հանձնվել 9.353 տոննա կաթ։ Շատ տնտեսություններ ժամկետից շուտ կատարել են անասնապահական բոլոր տեսակի մթերքների վաճառքի տարեկան առաջադրանքները։

Հանրապետությունում լայնորեն տարածվեց շրջանի գյուղատնտեսության աշխատողների՝ կուսշրջկոմի հավանությանն արժանացած նախաձեռնությունը՝ հանրային հոտի համար մեկուկես տարվա կեր կուտակելու վերաբերյալ։ Մեր երկրագործներն իրենց խոսքի տերը եղան։ Նրանք ոչ միայն կատարեցին կերի կուտակման առաջադրանքները, այլև զգալի քանակությամբ փոխանցիկ ֆոնդ ստեղծեցին հաջորդ մսուրային շրջանի համար։

«Հոբելյանական տարվա բերքահավաքին հարվածային տեմպեր, բարձր որակ» նշանաբանով ծավալված պայքարը հնարավորություն ընձեռեց մեր երկրագործներին՝ սեղմ ժամկետում ավարտել հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը և գերակատարել հացահատիկի արտադրության ու վաճառքի պլանները։

Շատ են գյուղի մարդկանց լավ գործերն ու արտադրության առաջընթացին ուղղված հայրենասիրական նախաձեռնությունները։ Մեր երկրագործներն ու անասնապահները քանիցս շահել են հանրապետական դրոշներ ու մրցանակներ, իսկ համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթելու համար շրջանը չորս տարի է ահա անընդմեջ արժանանում է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին։ Միութենական և հանրապետական մրցանակներ են նվաճել նաև մի շարք առաջավոր տնտեսություններ, գյուղատնտեսության հարյուրավոր աշխատողներ պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով։

Կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը նույնպես արտադրության մարդկանց ու առաջավոր կոլեկտիվների նկատմամբ կիրառում են նյութական ու բարոյական խրախուսանքի բազմազան միջոցներ։ Մենք սահմանել ենք հինգ փոխանցիկ դրոշ՝ հացահատիկի, շաքարի ճակնդեղի արտադրության, կերի կուտակման, անասնապահության և շինարարության բնագավառում առավել բարձր արդյունքների հասած կոլեկտիվների բեղմնավոր աշխատանքը նշելու համար։ Տնտեսություններում կան միջբրիգադային, միջօղակային, միջֆերմային փոխանցիկ դրոշներ՝ առաջավոր կոլեկտիվների, և հուշադրոշներ՝ առաջավոր ճակնդեղագործների, մեխանիզատորների, անասնապահների ու կթվորների համար։ Մրցությունը կազմակերպում ու ծավալում ենք նրա լենինյան սկզբունքների հստակ կիրառմամբ։ Այն հնարավորություն է ընձեռում ապահովել վերելքը արտադրության բոլոր ճյուղերում։

ՆԱԽԱՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ Շիրակի գյուղին բնորոշ էին մասնատված, կարկատանի նմանվող հողատարածքները, նվազ բերքատվությունը։ Հողագործի աշխատանքի միջոցներն էին արորն ու գութանը, երկանիվ ու քառանիվ սայլը։ Դրանք գերիշխում էին նաև սովետական իշխանության գոյության առաջին տասնամյակում։

Հետո լուրջ տեղաշարժեր կատարվեցին նաև այս ասպարեզում։ Կոոպերացման լենինյան պլանի հետևողական կենսագործման շնորհիվ ստեղծվեց մեքենայացված և գիտական հիմունքներով վարվող կոլտնտեսային խոշոր



արտադրություն, աննախընթաց կերպով զարգացավ սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Այսօր արդեն գյուղի աշխատավորը գործ ունի գյուղատնտեսական հզոր և բարդ տեխնիկայի հետ։ Այժմ հանրային դաշտերում բանում են 250 տրակտոր, 100 կոմբայն, մեկ հազարի հասնող գյուղատնտեսական այլ մեքենաներ ու կցվող գործիքներ։ Կոլտնտեսություններն ու սովխոզները տարեկան օգտագործում են 23 հազար տոննա հանքային, 80 հազար տոննա օրգանական պարարտանյութեր։ Ոռոգման ցանցի ստեղծմամբ հազարավոր հեկտար հողատարածություններ հագեցրել են իրենց դարավոր ծարավը, դարձել բերքառատ։

Ախուրյանի շրջանը համարվում է հանրապետության հացահատիկի ու շաքարի արտադրության հիմնական բազաներից մեկը, տալիս է հացահատիկի համախառն բերքի գրեթե 10 և շաքարահումքի մոտ 60 տոկոսը։ Մասնագիտանալով այդ երկու կուլտուրաների արտադրության մեջ, շրջանի տնտեսությունները զբաղվում են նաև կերային կուլտուրաների, բանջարեղենի մշակությամբ, հացահատիկի, բազմամյա խոտաբույսերի, բանջարանոցային կուլտուրաների սերմնաբուծությամբ։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ հացահատիկի արտադրության ավելացումը եղել և մնում է որպես գյուղատնտեսության զարգացման առավել հրատապ խնդիր։ Հացահատիկի արտադրության ավելացմամբ և դրա ռեզերվների ստեղծմամբ է առաջին հերթին պայմանավորված մեր ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը և հայրենիքի հզորության ամրապնդումը։ Ախուրյանցիները հացահատիկի մշակության լավ փորձ են կուտակել։ Տարեցտարի ավելանում է այդ կուլտուրայի համախառն արտադրությունը, բարձրանում բերքատվությունը։ Վերջին տասնամյակում հացահատիկի ցանքատարածությունը թեպետ նույնն է մնացել, բայց համախառն բերքը ավելացել է գրեթե կրկնակի անգամ։ Մեկ հեկտարից 30 ցենտներից ավելի բերքի ստացումը սովորական է դարձել մեր շրջանի համար, իսկ Հովունիի, Ախուրյանի, Ազատանի, Մարմաշենի, Ոսկեհասկի, Վահրամաբերդի կոլտնտեսությունները, Շիրակի, Հացիկի, Բայանդուրի և Մայիսյանի սովխոզները հեկտարից հավաքում են 35—38 ցենտներ բերք։ Եվ պատահական չէ, որ միայն տասներորդ հնգամյակի առաջին երկու տարում պլանից ավելի արտադրել ենք ինը հազար տոննա հացահատիկ և պետությանը վաճառել մեծ քանակությամբ բարձրորակ ու սորտային սերմացու։ Միայն Հացիկի սովխոզ-տեխնիկումն ու պետական սելեկցիոն կայանը հանրապետության տնտեսություններին տարեկան վաճառում են 1.200—1.500 տոննա էլիտա և առաջին վերարտադրության սերմացու։

Այդ հաջողությունը մեծապես պայմանավորված է բերքահավաքի ժամկետների կրճատմամբ։ Նախկինում այն, տեխնիկայի ցածր մակարդակի և սակավության պատճառով, ամիսներով ձգձգվել է և բերքի զգալի կորուստ է եղել։ Այս տարի, օրինակ, կուսշրջկոմը հանգամանորեն քննարկեց բերքահավաքի նախապատրաստման ու անցկացման, իսկ ավելի ուշ՝ այդ առթիվ ընդունված որոշման կատարման հարցը։ Կուսշրջկոմի խորհրդով տնտեսությունները միմյանց օգնեցին կոմբայններով և այլ մեքենաներով, խելամտորեն օգտագործեցին բոլոր հնարավորությունները և բերքահավաքը ավարտեցին 10—12 օրում։

ՈՐՊԵՍ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱ, շաքարի ճակնդեղն ունի ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն։ Այն ծառայում է իբրև շաքարահումք, բարձրորակ կեր, մեծ են դրանից ստացվող դրամական եկամուտները։ Այդ կուլտուրան շրջանի տնտեսություններին տալիս է բուսաբուծությունից ստացված դրամական եկամուտի 60—65 տոկոսը։ Անցած տարի միայն պլանից ավելի ճակնդեղ վաճառելու դիմաց տնտեսություններն ստացան 1 միլիոն 200 հազար ռուբլի լրացուցիչ եկամուտ։

Այժմ այդ կարևոր կուլտուրայի ցանքատարածությունը շրջանում հասնում է 2.100 հեկտարի։ Կոլտնտեսությունները և սովխոզները ամեն տարի բարձր բերք են հավաքում պլանտացիաներից։ Անցյալ տարվա արդյունքը ռեկորդային էր՝ հեկտարից 468 ցենտներ։ Այս տարի ավելի բարձր է՝ 530 ցենտներ։ Առաջավոր տնտեսությունները նվաճում են ավելի բարձր բնագծեր։ Այսպես, Ազատանի կոլտնտեսությունը հեկտարից ստացավ 500 ցենտներ բերք, իսկ Թ. Թովմասյանի և Ս. Ենգոյանի ղեկավարած բրիգադները՝ 580—600 ցենտներ։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, կոմունիստ Նյուրա Ստամբոլցյանը հմուտ ճակնդեղագործուհի է և ուսանելի փորձ ունի։ Նրա օղակի 15 անդամներ մշակում են 20 հեկտար շաքարի ճակնդեղ։ Անցած տարի օղակը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 580 ցենտներ բերք, իսկ օղակավարուհին անհատական գործավարձով մշակած իր ցանքատարածությունից մեկ հեկտարի հաշվով ապահովեց 780 ցենտներ։

Շատ սկզբնական կուսկազմակերպությունների հաջողվել է հասնել այն բանին, որ հետևողականորեն կիրառվի գիտականորեն հիմնավորված ցանքաշրջանառությունը, հողը պարարտացվի ըստ ագրոքիմիական քարտեզների, արմատավորվի մոլախոտերի դեմ քիմիական պայքարի եղանակը, բարձրացվի հողագործության կուլտուրան և մեքենայական աշխատանքի մակարդակը։ Այդ խնդիրները պարբերաբար դարձել են շրջկոմի բյուրոյի և կուսժողովների քննարկման առարկա, մշտական հսկողություն է սահմանվել ընդունված որոշումների կատարման նկատմամբ։

Արդյունավետ օգտագործել հողը, աշխատանքային ու նյութական միջոցները, ներդնել նոր սորտեր, ի հայտ բերել բերքատվության բարձրացման նոր հնարավորություններ ու ռեզերվներ։ Սրանք են հողագործության արդյունավետության բարձրացման գործոնները։ Ոչ վաղ անցյալում մեր շրջանը չէր կատարում ճակնդեղի համախառն բերքի արտադրության առաջադրանքները։ Ոմանք այն համարում էին ոչ-եկամտաբեր կուլտուրա և առաջարկում հանել արտադրությունից։ Այստեղ կուսշրջկոմն ասաց իր ծանրակշիռ խոսքը։ Մեզ հարկ եղավ առաջին հերթին փոխել մարդկանց տրամադրությունը, վերաբերմունքը, բարձրացնել շահագրգռությունը։ Բոլոր սկզբնական կուսկազմակերպությունները քննարկեցին ճակնդեղագործության զարգացման հարցը և մշակեցին բերքատվության բարձրացման գործնական միջոցառումներ։ Գործին մեծապես օգնեցին նաև շաքարի ճակնդեղի գնման գների բարձրացումն ու հանքային պարարտանյութերի անխափան մատակարարումը։ Մշակվեց և գործողության մեջ դրվեց անձնական շահագրգռության բարձրացման հստակ համակարգ։ Իններորդ հնգամյակի վերջում արդեն տնտեսությունները կատարում ու գերակատարում էին արտադրության ու մթերումների առաջադրանքները, իսկ անցած տարի նրանք պետությանը վաճառեցին ավելի քան 90 հազար, այս տարի՝ 103 հազար տոննա շաքարահումք։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1976 թ. հուլիսի 19-ին որոշում ընդունեցին «1976—1980 թթ. շաքարի ճակնդեղի արտադրության ու մթերումների հետագա ավելացման և շաքարի մշակման միջոցառումների մասին»։ Այդ որոշման կենսագործման նպատակով կուսշրջկոմը մշակեց միջոցառումների գործնական պլան, որի իրականացումը, դրանում մենք համոզված ենք, լավ արդյունք կտա։

Շաքարի ճակնդեղը շատ աշխատատար կուլտուրա է և հրամայաբար պահանջում է մեքենայացման բարձր մակարդակ։ Այդ առումով մենք շատ ենք զիջում Միության համապատասխան առաջավոր շրջաններին։ Միայն բերքահավաքի մեքենայացումը մեզ հնարավորություն կտա ոչ միայն բարձրացնել բերքատվությունը, այլև հումքի մեջ՝ շաքարի տոկոսը։ Մշակված պլանով նախատեսված է համակենտրոնացնել ու մասնագիտացնել այդ կարևոր կուլտուրայի արտադրությունը։ Ազատանը վերածվելու է շաքարի ճակնդեղի փորձացուցադրական տնտեսության, որտեղ մեքենայացվելու են մշակման տեխնոլոգիայի բոլոր պրոցեսները։



ԱԽՈՒՐՅԱՆԻ ՇՐՋԱՆԸ, որ մասնագիտացված է հացահատիկի ու շաքարի ճակնդեղի արտադրության մեջ, ունի նաև զարգացած անասնապահություն, որը բուռն առաջընթաց է ապրում հատկապես վերջին տարիներին։

Վերլուծելով բուսաբուծության և անասնապահության զարգացման տեմպերը, կուսշրջկոմն իր ժամանակին եկավ այն հետևության, որ դրանք համամասնաբար չեն զարգանում, և անասնապահությունը որոշակիորեն ետ է մնում դաշտավարությունից։ Հանգամանորեն ուսումնասիրելով դանդաղ աճի պատճառները, շրջկոմը մշակեց անասնապահության շեշտակի վերելքն ապահովող կոմպլեքս միջոցառումների գործնական ծրագիր։

Կյանքը ցույց տվեց, որ մեր միջամտությունը տեղին էր։ Այդ է վկայում թեկուզ այն փաստը, որ 1976 թ. անասնապահության համախառն արտադրանքի ծավալը կազմեց 6 միլիոն 192 հազար ռուբլի կամ գրեթե կրկնակի անգամ ավելի, քան 1971 թ.։ Հինգ տարում կաթի համախառն արտադրանքն աճեց 28 տոկոսով, մսինը՝ 22, բրդինը՝ 6, ձվինը՝ 34 տոկոսով։

Արտադրության աճի այս տեմպերը հնարավորություն ընձեռեցին զգալիորեն ավելացնելու նաև անասնապահական մթերքների մթերումների ծավալը և պատվով կատարելու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Այժմ շրջանը տարեկան պետական մթերակայաններ է առաքում հանրապետությունում մթերվող անասնապահական մթերքների և հումքի 4—4,3 տոկոսը։ Մսի մթերմամբ շրջանը հանրապետությունում գրավում է երկրորդ, կաթի և բրդի ծավալով՝ համապատասխանաբար չորրորդ և հինգերորդ տեղերը։

Գաղտնիք չէ, որ անասնապահական մթերքների արտադրության ավելացման հիմնական պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է, անասուններին բազմազան և լիարժեք կերով ապահովելը։ Մինչդեռ մեզ մոտ տարիներ շարունակ կուտակվում էր այնքան կեր, որը հազիվ էր բավարարում անասուններին ձմեռային շրջանից դուրս բերելուն և, իհարկե, չէր նպաստում մթերատվության աճին։

Ստեղծված դրությունը լուրջ մտահոգություն էր առաջացրել շրջանային կազմակերպություններում։ Վիճակը բարելավելու նպատակով կուսշրջկոմը, խորը ուսումնասիրություններից հետո, 1971 թ. հուլիսին քննարկեց կերի կուտակումն ավելացնելու, անասնապահությունը լիարժեք կերով բավարարելու և այդ ուղիով ճյուղի հետագա զարգացումն ապահովելու հարցը։ Մշակված միջոցառումների և ընդունված որոշման մեջ մեծ տեղ հատկացվեց առվույտացանության զարգացմանը, կերային կուլտուրաների մշակության բարելավմանը, նոր կերատեսակների արտադրության տեխնոլոգիայի արմատավորմանը։

Կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններին, տնտեսությունների ղեկավարներին ու մասնագետներին հանձնարարվեց ընդարձակել բազմամյա խոտաբույսերի, առաջին հերթին՝ առվույտի ցանքատարածությունը, որով հնարավորություն էր ստեղծվում մեծ չափով ավելացնելու խոտի կուտակումը։ Սերմացուի պահանջը բավարարելու նպատակով խնդիր դրվեց զարգացնել սերմնաբուծությունը։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ վերջին 3—4 տարում առվույտի ցանքատարածությունն ընդարձակվեց երեք անգամ և այժմ զբաղեցնում է 1.400 հեկտար։ Տնտեսություններն արդեն ապահովված են սեփական սերմացուով։ Ընդարձակվեց նաև կորնգանի ցանքատարածությունը։ Արտադրության մեջ լայնորեն արմատավորվեց սենաժի պատրաստումը։ Այս ամենի շնորհիվ կայունացավ կերի բազան, և այժմ շրջանում կուտակվում է մեկուկես տարվա կեր։ Շրջանը մեծ տոնի նախօրյակին զեկուցեց կերի բոլոր տեսակների առաջադրանքները կատարելու մասին։ Մենք նվաճեցինք նշված բնագծերը և կուտակեցինք 28 հազար տոննա խոտ, 30 հազար տոննա սիլոս, 16.400 տոննա սենաժ։

Ուսումնասիրելով Միության առաջավոր տնտեսությունների փորձը՝ կուսշրջկոմը կուսակցական, տնտեսական կազմակերպությունների առջև խնդիր դրեց կատարելագործել կերի արտադրության ու մշակման տեխնոլոգիան, տնտեսություններում ստեղծել կերի մշակման արտադրամասեր ու պարզ տիպի

կերախոհանոցներ, բարձրացնել կերերի օգտագործման արդյունավետությու-
նը: Այդ ասպարեզում առաջին քայլերն արվեցին 2—3 տարի առաջ: Ջաջուռի
կաթնանասնապահական սովխոզում տեղադրվել են խոտալյուրի պատրաստ-
ման ագրեգատ, հացահատիկի ղտումից, տեսակավորումից առաջացած մնա-
ցորդները մշակող մեքենա՝ գրանուլյատոր: Կերարտադրամասեր են կառուցվել
Ախուրյանի ու Ազատանի կոլտնտեսություններում: Ընթացիկ տարում շահա-
գործման կհանձնվեն ևս 6-ը, իսկ մինչև հնգամյակի վերջը խնդիր է դրված
կերարտադրամասեր ունենալ բոլոր տնտեսություններում:
Կերերի մշակման ու օգտագործման նոր տեխնոլոգիային ծանոթանալու
նպատակով կուսշրջկոմը կոլտնտեսությունների վարչությունների, սովխոզների
դիրեկտորների, գյուղատնտեսության մասնագետների և սկզբնական կուսկազ-
մակերպությունների քարտուղարների համար Ջաջուռի սովխոզում և Ազատանի
կոլտնտեսությունում երկու անգամ կազմակերպել է սեմինար-պարապմունք:
Անասնապահության զարգացումը ներկա պայմաններում անհնար է պատ-
կերացնել առանց տիպային նոր շենքերի և աշխատատար գործողությունների
մեքենայացման: Վերջին տարիներին այդ առումով բավական աշխատանք է
կատարվել:
Դեռևս 1974 թ. կուսշրջկոմի պլենումը քննարկեց «Մեքենայացման միջո-
ցով գյուղատնտեսության արտադրության արդյունավետությունը բարձրացնե-
լու մասին» հարցը: Մշակված միջոցառումների մեջ, որոնց իրականացումը
նախատեսված է մինչև 1980 թ., առանձնակի տեղ տրվեց անասնապահության
աշխատատար գործողությունների մեքենայացման մակարդակի բարձրացմա-
նը: Պլենումից անցել է շուրջ երեք տարի, և արդեն պարզորոշ երևում է շրջկոմի,
սկզբնական կուսկազմակերպությունների, գյուղատնտեսական մարմինների
կատարած արդյունավետ աշխատանքի արդյունքը: Այժմ անասնապահության
մեջ ջրամատակարարումը և գոմաղբի հեռացումը գրեթե լրիվ, իսկ կերերի
բաշխումը՝ 18—20, կովերի կիթը՝ 40—45 տոկոսով մեքենայացված են:
1.500 գլուխ կովեր պահվում են կոմպլեքսային մեքենայացված գոմերում:
Կուսշրջկոմի տեսադաշտից դուրս չեն մնացել անասնապահության ար-
դյունավետության և անասնապահական մթերքների որակի բարձրացման հար-
ցերը: Դրանք պարբերաբար քննարկել ենք բյուրոյի նիստերում, մշակել անաս-
նապահական մթերքների արտադրության ավելացման, արտադրվող մթերքնե-
րի որակի բարձրացման, հոտի սեփական վերարտադրության, գլխաքանակի
անկորուստ պահպանման, գիտության նվաճումների և առաջավոր փորձի
արմատավորման միջոցառումներ: Հաճախ այս կամ այն հարցի ուսումնա-
սիրման համար շրջկոմը կազմում է հանձնաժողովներ՝ շրջկոմի քարտուղար-
ների, բյուրոյի անդամների ղեկավարությամբ և գյուղատնտեսության մասնա-
գետների մասնակցությամբ: Տեղերում պարզելով գործերի վիճակը՝ հանձնա-
ժողովները կոնկրետ առաջարկություններով նպաստում են հասունացած հար-
ցերի լուծմանը:
Ձեռնարկված այս միջոցները անհետևանք չեն մնում: Տարեցտարի
բարձրանում է անասունների մթերատվությունը: 1971 թ. կովի միջին կաթ-
նատվությունը շրջանում կազմել է 1.670 կգ, իսկ 1975-ին՝ 1.870 կգ: Այս
տարվա անցած 9 ամիսներին, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի հա-
մեմատությամբ, մեկ կովի կաթնատվությունը բարձրացել է ևս 120 կգ-ով,
ստեղծվել են բոլոր նախադրյալները՝ մինչև տարեվերջ այն 2.200-ի հասցնելու
համար: Իսկ ահա Մարմաշենի կոլտնտեսությունը ամեն մի կովից տարեկան
ստանում է 3.100, Հովունու և Ոսկեհասկի կոլտնտեսությունները, Սարիարի
սովխոզը՝ 2.500 կգ կաթ: Մսի արտադրությունն ավելացնելու նպատակով
կուսշրջկոմը որոշում է ընդունել առաջավոր տնտեսությունների փորձն ուսում-
նասիրելու վերաբերյալ: Տնտեսություններին առաջարկվել է հետևողականո-
րեն զբաղվել տավարի մատղաշի ինտենսիվ աճեցմամբ: Առաջավոր այդ եղա-



նակը արդեն լայնորեն արմատավորվում է: Եթե 1971 թ. պետությանը վաճա-
ռած խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի քաշը չէր անցնում 240—250
կիլոգրամից, ապա 1975 թ. մթերակայան հանձնված մատղաշների միջին քաշը
կազմեց 317, 1977 թ. ութ ամսում՝ 322 կգ: Տնտեսությունները դրա շնորհիվ
ստացան համապատասխանաբար 108 հազար և 364 հազար ռուբլու լրացուցիչ
եկամուտ:
Առաջավոր փորձի արմատավորումը հաջողության լավ գրավական է, դրա
կիրառմամբ, անասնապահական մթերքների քանակական աճին զուգընթաց,
բարձրացել է նաև արտադրվող մթերքների որակը: 1976 թ. պետությանը վա-
ճառած կաթի 48 տոկոսը գնահատվել է առաջին տեսակի: Ընթացիկ տարվա
առաջին կիսամյակին այս ցուցանիշը հասցվել է 51,6 տոկոսի: Այժմ բարձրո-
րակ կաթի հանձնմամբ շրջանը հանրապետությունում գրավում է առաջատար
տեղերից մեկը: Մեծ չափով բարձրացել է նաև մսի, բրդի, կաշեհումքի որակը:
Իսկ դա նշանակում է լրացուցիչ ստանալ դրամական մեծ եկամուտներ:
Կուսշրջկոմի նախաձեռնությամբ 1976 թ. շրջանում տարածվեց Հովունու
կոլտնտեսության առաջավոր հովիվ Կարապետ Կարապետյանի, Մարմաշենի
կոլտնտեսության կթվորուհի, 3.000-ական Գեղեցիկ Մալխասյանի աշխա-
տանքի առաջավոր փորձը: Ի դեպ, կթվոր 3.000-ականների հանրապետական
հավաքից հետո կուսշրջկոմի և գյուղատնտեսության վարչության նախաձեռ-
նությամբ ստեղծվեց կթվոր 2.500-ականների շրջանային ակումբ, որտեղ
ընդգրկված են մեկ կովից 2.500 և ավելի կաթ ստացած 58 և 3.000 կգ-ի սահ-
մանագիծն անցած 10 կթվորներ: Ակումբի ղեկավարության, կուսշրջկոմի
պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ու գյուղատնտեսության վարչության
միջոցով կազմակերպվում են առաջավոր կթվորների աշխատանքի փորձի
ուսումնասիրումն ու տարածումը: 22 առաջավոր անասնապահների շնորհվել
է «Անասնապահության վարպետ» առաջին և երկրորդ կարգի կոչումներ:
Տնտեսական ցուցանիշները, ինչպես վկայում են թվերը, կարելի է գո-
հացուցիչ համարել: Սակայն առաջավոր տնտեսությունների ներկայիս ար-
դյունքները ցույց են տալիս, որ մենք դեռևս ունենք չօգտագործված շատ հնա-
րավորություններ ու ռեզերվներ, որոնք գործողության մեջ դնելով կարող ենք
նվաճել ավելի բարձր բնագծեր:
Վերջերս ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննարկեց «ՍՄԿԿ XXV համագումարի
լույսի ներքո Ախուրյանի կուսշրջկոմի ղեկավարությունը սկզբնական կուսկազ-
մակերպությունների նկատմամբ» հարցը: Կուսշրջկոմի կատարած դրական
աշխատանքի հետ միասին Կենտկոմի բյուրոն նշեց մի շարք լուրջ թերություն-
ներ: Շրջանում թերակատարվում են շինարարական աշխատանքի պլանները,
առանձին տնտեսություններ լրիվին չեն օգտագործում գյուղատնտեսական
մթերքների արտադրության ավելացման բոլոր հնարավորություններն ու ռե-
զերվները, անասնապահության բնագավառում դեռևս ցածր է մեքենայացման
մակարդակը:
Ելնելով կուսակցության պահանջներից՝ մենք մշակել ենք բացահայտված
թերությունների վերացման հատուկ պլան, որի իրականացմանը այժմ նպա-
տակամղված են շրջանի աշխատավորության ջանքերը:
Օգտվելով առիթից, կցանկանայի հոդվածում արծարծել մեզ հուզող և
շրջանի էկոնոմիկայի հեռանկարային զարգացման համար կարևոր նշանակու-
թյուն ունեցող մի քանի հարցեր:
Առաջին: Մեր շրջանի շատ տնտեսություններ չունեն գյուղամերձ արոտա-
վայրեր և, հետևաբար, հարկադրված են լինում մինչև ամառանոց բարձրա-
նալը (իսկ դա հունիսից շուտ չի լինում) ոչխարի արոտը կազմակերպել աշ-
նանացանի ցանքադաշտերում ու ցանովի խոտհարքերում: Գտնում եմ, որ վատ
չի լինի, եթե հանրապետության պլանավորող մարմինները մտածեն մեր շըր-
ջանում ոչխարի գլխաքանակը կրճատելու և, համապատասխանաբար, կովերի-
նը ավելացնելու մասին: Դրանով, մի կողմից, մենք կբարելավենք ոչխարների

խնամքը, մյուս կողմից՝ կավելացնենք կաթի արտադրությունը, կբարձրացնենք ցանքադաշտերի բերքատվությունը և կստեղծենք մասնագիտացման լայն հնարավորություններ։

Երկրորդ։ Հողերի ոռոգումը մեզ համար կենսական պրոբլեմ է։ Վերջին տարիներին Ախուրյանի աջափնյա ջրանցքի և Կառնուտի ջրամբարի գործարկման շնորհիվ ավելի քան 4.000 հեկտար հողատարածություն դարձել է ոռոգելի։ Սակայն Կառնուտի ջրամբարում ջրի կորստի պատճառով դեռ բավարար քանակությամբ ջուր չի կուտակվում, որի հետևանքով, նախատեսված 20 միլիոն խմ-ի փոխարեն, օգտագործվում է միայն 5 միլիոն խմ ջուր։ Անհրաժեշտ է, որ հանրապետության մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունը համապատասխան միջոցներ ձեռնարկի ջրի կորուստը կանխելու նպատակով, այն հաշվով, որ ինչպես մեր, այնպես էլ հարևան Արթիկի ու Անիի շրջանների տնտեսություններն ստանան նախատեսված ջրի քանակությունը։ Դա, անշուշտ, կնպաստի գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացմանը։

Երրորդ։ Նոր ոռոգելի հողերն ունեն մեծ թեքություն, որի պատճառով հողմահարվում են, ենթարկվում էրոզիայի։ Մինչդեռ դրանցում մելիորացման աշխատանքներ չեն նախատեսված։ Եվ եթե այսպես շարունակվի, ապա ավելի քան 4.000 հեկտար հողատարածություն էրոզիայի պատճառով դուրս կգա շրջանառությունից։ Հարկ է, որ գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունները և «Հայգլխջրշին» տրեստը նախատեսեն մելիորացիոն և հակաէրոզիոն միջոցառումներ։

Ղարիբջանյան և Գետք գյուղերի կոլտնտեսությունների, Երազգավորսի սովխոզի ավելի քան 800—1.000 հեկտար հողատարածություն գերխոնավության պատճառով ճահճացել է։ Ճահճացումը կանխելու նպատակով հարկավոր է, որ «Հայգլխջրշին» տրեստը փոքր-ինչ եռանդ դրսևորի և կատարի հակաճահճային միջոցառումներն իրականացնելու իր վաղեմի խոստումը։

Սրանք լուրջ հոգսեր ու պրոբլեմներ են, որոնց լուծումը հսկայական չափով կխթանի շրջանի գյուղատնտեսության առաջընթացը։ Սակայն չի կարելի ասել, թե մեր խնդիրները կսահմանափակվեն դրանցով։ Մենք մշակել ենք շրջանի տնտեսական ու սոցիալական հեռանկարային զարգացման միջոցառումներ։ Կուսշրջկոմի պլենումը 1976 թվականի հունիսին քննարկեց «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Այդ ասպարեզում որոշ գործ արված է։ Կազմակերպվել և գործում են կովերի արհեստական սերմնավորման կոոպերատիվ, երինջների աճեցման ու մեղվաբուծական միջտնտեսային ձեռնարկություններ և միջկոլտնտեսային շինարարական խորհուրդ։ Երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությունն արդեն տնտեսություններին բաց է թողել ավելի քան 300 գլուխ տոհմային երինջ։ Նախատեսվում է առաջիկայում այստեղ անասունների գլխաքանակը հասցնել 1.000-ի և ամեն տարի տնտեսություններին բաց թողնել 455—500 գլուխ բարձր մթերատու երինջ։ Տասներորդ հնգամյակի վերջում նախատեսվում է ունենալ 1.000, իսկ հեռանկարում՝ 1.500—2.000 մեղվաընտանիք, այժմյան 400-ի փոխարեն։

Առաջիկա տարիներին նախատեսում ենք ստեղծել մասնագիտացված միջտնտեսային նոր կազմակերպություններ։ Այսպես, ընթացիկ հնգամյակում կսկսվի 5.000 արու մատղաշի ինտենսիվ գիրացման համալիրի կառուցումը Արևիկի կոլտնտեսության և Այգեբացի սովխոզի բազայի վրա։ Կմեծանա այժմ գործող Ախուրյանի ցեղական երինջների աճեցման համալիրի կարողությունը։ Այն տնտեսություններին տարեկան կտա 1.000—1.200 գլուխ երինջ։

Կոոպերացման այս միջոցառումները մեր տնտեսություններին հնարավորություն կընձեռեն՝ ազատվելու մատղաշի աճեցման հոգսերից և զբաղվելու



կաթի արտադրության ավելացմամբ։ Նախատեսվում է կաթի արտադրության համալիրներ ստեղծել Ազատանի, Ախուրյանի, Շիրակի, Բայանդուրի, Մայիսյանի տնտեսություններում՝ 800—1.200-ական գլուխ կովի համար։ Դրանով հնարավոր կլինի մեծ չափով ավելացնել կաթի ու մսի արտադրությունը, բարելավել դրանց որակը և իջեցնել ինքնարժեքը։

Մեր հեռանկարային խնդիրների մեջ մտնում են նաև հողերի հարթեցման, դրանք մեքենահարմար դարձնելու, արոտավայրերի մակերեսային ու արմատական բարելավման, կերարտադրության գործի կատարելագործման աշխատանքները։ Նախատեսվում է վճռական քայլեր անել անասունների մթերատվության և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ասպարեզում։

Վերջերս կուսշրջկոմի պլենումում քննարկվեց կոոպերացման և մասնագիտացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը։ Այդ հարցի շուրջ ծավալվեց լուրջ խոսակցություն, և մենք մշակեցինք գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացումն ապահովելու, մեր հեռանկարային պրոբլեմներն ու խնդիրները հաջողությամբ լուծելու գործնական միջոցառումներ։

Նոր թափ հաղորդելով մեծ Հոկտեմբերի վաթսունամյակի պատվին ծավալված սոցմրցությանը, մենք ամեն ինչ կանենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու, արդյունավետության ու որակի հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագիրն անթերի կատարելու համար։ Այդ ազնիվ պայքարում մեր մարդկանց համար ոգեշնչման աղբյուր է ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, որը հաստատվեց վերջերս ՍՍՀՄ Գերագույն սովետի արտահերթ նստաշրջանում։ Սահմանադրությունը կոլտնտեսականներին ու բանվորներին ոգեկոչում է աշխատանքային նորանոր սխրանքների՝ հանուն մեր երջանիկ ապագայի, մեր հայրենիքի է՛լ ավելի բարգավաճման ու հզորացման։

Արվեստը՝

հեղափոխությանը

# ՍՈՎԵՏԱՀԱՅ ԹԱՏԵՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԾ ՎԵՐԱԾՆՈՒԹՅԱՆԸ ՀԱՄԸՆԹԱՑ

**Ա. Ս. ՀՈՒՆԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների թեկնածու

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ** հաստատումից հետո, առաջին տարիներից իսկ, մեր երկրի ինչպես տնտեսական-քաղաքական, նույնպես և մշակութային կյանքում տեղի էին ունենում հըսկայական տեղաշարժեր ու արմատական վերափոխումներ: Հնի ամեն կարգի արտահայտությունների հաղթահարման և նորի հաստատման գործում չափազանց մեծ էին գաղափարական պայքարի միջոցների դերն ու նշանակությունը: Այդ պայքարի առաջին գծում մեր մշակույթի մյուս ճյուղերի հետ հանդես էին գալիս և թատրոնն ու թատերագրութունը, որոնք վերակառուցման ու նորացման բարդ ու դժվարին պրոցես էին ապրում:

Մեր կյանքի կառուցման բոլոր փուլերում սովետական արվեստը գործուն մասնակցություն է ունեցել նոր ապրելակերպի հաստատմանն ու պրոպագանդմանը: Եվ մեր այսօրվա նվաճումների բարձունքից առավել ակնհայտ են երևում նրա գոյավորման առաջին քայլերը, դրանց դերն ու նշանակությունը արվեստի արդի մակարդակի ապահովման խնդրում:

Նախահեղափոխական տարիներին գաղափարական ու գեղարվեստական ճգնաժամ ապրող հայ թատրոնն ու դրամատուրգիան սովետականացումից հետո վերածնվեցին՝ թևակոխելով զարգացման նոր շրջան: 20-ական թվականներին թատերական կյանքը մեզ մոտ սկսեց աշխուժանալ, ծաղկել:

Բեմարվեստը համարելով աշխատավորության կոմունիստական դաստիարակության կարևոր միջոց՝ սովետական պետությունը տարեցտարի ընդարձակում էր թատրոնների ցանցը, կազմակերպում լավագույն պիեսների մրցույթներ, նըպատակ ունենալով ստեղծել իր մասշտաբներով ու ազդեցությամբ համաժողովրդական, բնույթով ժողովրդային թատրոն: Նոր արվեստը, որ Լենինի արտահայտությամբ՝ իր «ամենախոր արմատներով պետք է ներթափանցեր աշխատավոր լայն մասսաների մեջ», անհնար էր ըստեղծել առանց այդ մասսաների ակտիվ մասնակցության, արվեստագետի աշխատասենյակում: Իրավացի էր Ե. Բ. Վախթանգովը՝ գրելով. «...եթե արվեստագետն ուզում է կերտել «նորը»... ապա պետք է կերտի ժողովրդի «հետ»... Նորը կերտելու և հաղթանակելու համար արվեստագետին պետք է Անթեյի հողը: Ժողովուրդը, ահա՛, այդ հողը»:

Սոցիալիստական արվեստն ստեղծվում էր աշխատավորության համար և նրա անմիջական մասնակցությամբ: Հեղափոխության հաղթանակից հետո նոր հանդիսականի երևան գալը բախտորոշ եղավ թատրոնի համար և պայմանավորեց նրա ներքին խոր վերակառուցումը:

Ժողովրդական հանդիսականը, ինչպես ասում էր Կ. Ս. Ստանիսլավսկին, արտակարգ թատերային էր. «Նա թատրոն եկավ ոչ թե ի միջի այլոց, այլ սարսուռով և ինչ-որ կարևոր ու անսովոր բանի սպասումով»: Ավելի կարևոր էր, սակայն, այն հանգամանքը, որ բանվորը, գյուղացին, զինվորը իրենց հետ թատրոն բերեցին բոլորովին այլ մի աշխարհ, ժողովրդի խոհերի



ու հույզերի աշխարհը, ինչպես և արվեստի, նրա դերի ու նշանակության իրենց ուրույն ըմբռնումը: Այդ նոր հանդիսականը մյուս կողմից ո՛չ միայն գեղագիտական, այլև գործնական բնույթի պահանջներ էր առաջադրում թատրոնին: Սոցիալիզմ կերտող աշխատավոր մարդիկ կարիք ունեին այնպիսի արվեստի, որը, գեղագիտական հաճույք պատճառելուց զատ, օգներ կոմունիստական գաղափարների կենսագործմանը:

Սովետական թատրոնի առաջնահերթ խնդիրն էր բավարարել ժողովրդական հանդիսականի պահանջները և իր նպաստը բերել կյանքի հեղափոխական վերակառուցմանը, իսկ այդ հնարավոր չէր առանց ներքին խոր վերափոխման, առանց նոր, լիարժեք խաղացանկի: Ժառանգելով հին թատրոնի դեմոկրատական ավանդները, սոցիալիստական արվեստի կերտողները, սակայն, չէին կարող նույնությամբ վերցնել նրա խաղացանկը, որում գերիշխում էին արևմտյան մելոդրաման ու մոդեռնիստական ընդօրինակումները. դրանց կողքին, դասական պիեսների հետ, համեստ տեղ գրավող ինքնուրույն թատերագրությունը հիմնականում հանդես էր գալիս պատմական դրամայի ու ողբերգության ժանրերով: Իր առջև ծառացած գաղափարական-գեղարվեստական խնդիրները լուծելու համար սովետահայ թատրոնը պետք է հենվեր ինքնուրույն, ազգային դրամատուրգիայի վրա՝ բեմադրելով մասնավորապես նոր կյանքն արտացոլող պիեսներ: Հարկ էր հրաժարվել նաև դասական գործերի պատահական ու անսկզբունք ընտրությունից:

Քսանական թվականներին սակավ էին ժամանակակից կյանքը պատկերող սովետահայ պիեսները, և թատրոններն ակամա ներկայացնում էին հիմնականում դասական դրամատուրգիայի նմուշները, ընտրելով անցյալի նշանավոր թատերգուների՝ ժամանակի ոգուն և հեղափոխության գաղափարներին առավել համահունչ գործերը, հաճախ նորովի մեկնաբանելով, ավելի սուր սոցիալ-գաղափարական միտումով օժտելով դրանց: Այդ տարիներին մեզ մոտ բեմադրվեցին Սոֆոկլեսի, Շեքսպիրի, Մոլիերի, Շիլլերի, Իբսենի, Գոգոլի, Գորկու, Սունդուկյանի, Շիրվանզադեի, Պարոնյանի թատերգությունները, որոնք ասես թե փոխարինեցին լինելիության շրջանն ապրող սովետահայ դրամատուրգիային և, միաժամանակ, նպաստելով դրա ձևավորմանը: Այդ բեմադրությունները, պրոպագանդելով դասականների արվեստը, թատերագիրներին ծանոթացնում էին մեծ վարպետների ստեղծագործական սկզբունքներին, դառնում վարպետության դպրոց: Նրանց շատ էին օգնում նաև սովետական լավագույն պիեսները: Հայ թատերագիրներն իրենց ռուս գրչակիցների հաջողված երկերում գտնում էին ստեղծագործական շատ հարցերի պատասխաններ, սովորում հաղթահարել այդ օրերին դրամատուրգիայի առջև ծառացած դժվարությունները:

Քսանական թվականներին բեմադրվեցին Ա. Լունաչարսկու Ազատագրված Դոն-Քիշոտը, Հըրձիգներ, Թույն, Յու. Յուրինի Ակամա հերոս, Ա. Ֆայկոյի Վարժապետ Բուբուս, Կ. Տրենյովի Լյուբով Յարովայա, Բ. Լավրենևի Բեկում, Դ. Ֆուրմանովի Խռովություն, Վ. Իվանովի Զրահագնացք 14—69, Ա. Տրետյակովի Մռնչա, Չինաստան, Վ. Կիրշոնի Հողմերի քաղաք պիեսները: Ռուս հեղինակների երկերը թեև նպաստեցին սովետահայ թատրոնի խաղացանկի նորացմանն ու մանավանդ արդիականացմանը, բայց չէին կարող լիովին փոխարինել ինքնուրույն, ազգային դրամատուրգիային, որը դժվարությամբ էր ստեղծվում: Այդ տարիներին երիտասարդ թատերագիրները դեռևս անվստահ էին գործում, իսկ մեծ փորձ ու հմտություն ունեցող ավագ վարպետները, ինչպես հարկն է, չէին ճանաչում նոր իրականությունը, որպեսզի ձեռնամուխ լինեին դրա գեղարվեստական պատկերմանը: Ահա ինչու Ալ. Շիրվանզադեի 1926 թ. գրած Մորգանի խնամին կատակերգությունը պատկերում է արտասահմանյան բուրժուական վտարանդիության կյանքը, Դեմիրճյանին այս շրջանում առավելապես հաջողվում է բանահյուսական նյութի (Քաջ Նազար) մշակումը: Նորի զգացողությունն ավելի վերապահված էր ստեղծագործական երիտասարդ սերնդին, որը տակավին չուներ բավարար կենսաճանաչողություն, գրական-դրամատուրգիական փորձ ու վարպետություն և իր առաջին քայլերն էր անում: Այդուհանդերձ, սովետահայ թատերագրությունն աստիճանաբար ձեռնամուխ է լինում արդիական կյանքի մարմնավորմանը: Եթե սկզբնական շրջանում մեր դրամատուրգները նոր ժամանակների հրատապ խնդիրներին արձագանքում էին անուղղակիորեն՝ պատմական ողբերգության, ինչպես և մեր դասակարգային ու քաղաքական հակառակորդների երեկվա անփառունակ գործունեությունը, այսօրվա տխուր վտարանդիությունն ու զավեշտական կացությունը ներկայացնող կատակերգությունների միջոցով, ապա հետագայում նրանք արտացոլում են հեղափոխությունը, ժամանակակից կյանքը:

Այդ թվականներին սովետահայ թատերագրությունն ստեղծում է նաև հեղափոխությունը և Հայաստանի սովետականացման համար ժողովրդի մղած կռիվներն արտացոլող գործեր: Դ. Դեմիրճյանն իր Հաղթական սիրո երգը և Արհավիրքներով պիեսներում փորձում է ներկա-

յացնել հոկտեմբերյան դրվագները, պատմական մեծ իրադարձությունների բովում գործող մարդկանց: Հաղթական սիրո երգը փոքրածավալ պիեսում հեղինակը մի նավի վրա տեղի ունեցող դեպքերի միջոցով ցույց է տալիս հեղափոխության հզոր անդրադարձումները մարդկանց հոգեբանության մեջ:

Եթե Դեմիրճյանն այս թատերգություններում արտացոլեց 1917—18 թվականների հեղափոխական տեղաշարժերը Ռուսաստանում, ապա Վ. Վաղարշյանն իր Օղակում դրամայում գեղարվեստորեն պատկերում է նոր կարգերի հաստատման համար հայ ժողովրդի մղած ազատագրական պայքարը: Հայաստանի սովետականացման նախօրեի դեպքերն արտացոլող այս պիեսում առկա է մի բավական բարդ ու լարված իրադրություն: Բեգերի ու խմբապետների խըժդըժություններից արյունաքամ եղած երկրում հասունանում է ժողովրդական ապստամբությունը: Կոմունիստների ղեկավարությամբ աշխատավորները պայքարի են նախապատրաստվում, հեղափոխական տրամադրությունները թափանցում են նույնիսկ դաշնակցական բանակի զինվորների շարքերը: Հողն այրվում է ժողովրդի թշնամիների ոտքերի տակ: Զգալով իրենց մոտալուտ կործանումը՝ նրանք պայքարում են հուսահատ կատաղությամբ, բայց հաղթանակում են ազատագրական կռվի ելած աշխատավորները:

Պիեսում քիչ տեղ են գրավում ժողովրդի ու նրա թշնամիների բախումները, քանի որ երկու հակամարտ ուժերի գոտեմարտն ավելի շատ ցույց է տրված նախապատրաստության փուլում, քան թե բուն ընթացքում: Չնայած դրան, հեղինակը կարողացել է լինելիության ընթացքում իսկ արտացոլել պայքարի դրամատիզմը, լարվածություն հաղորդել պիեսի գործողություններին: Այս պատճառով էլ թեև ապստամբների ու դաշնակցականների անմիջական ընդհարումը միայն ֆինալում է, բայց ողջ պիեսի ընթացքում հանդիսատեսն զգում է հասունացող դասակարգային կռվի շիկացած մթնոլորտը:

Վ. Վաղարշյանի Օղակում-ը արդիական թեմայով գրված ամենահաջող երկն է մեր դրամատուրգիայի զարգացման առաջին շրջանում:

Այդ տարիներին նոր թեմայով գրված պիեսների մեծ մասը նվիրված էր հեղափոխությանը, Հայաստանի սովետականացման համար մեր ժողովրդի մղած պայքարին:

Կյանքի մահացող ձևերի և հին կենցաղի մնացուկների դեմ մղվող պայքարի համապատկերի վրա մեր թատերգուները փորձում են վերարտադրել գյուղացու հոգեբանության մեջ կատարվող փոփոխությունները, ստեղծել թե՛ մեռնող դասակարգերի ներկայացուցիչների և թե նոր կյանք կերտող հերոսների կերպարներ: Կուլակի, նէպմանի, տերտերի կողքին դրամատուրգիայում հանդես են գալիս բանվորն ու գյուղացին: Առաջին, դեռևս թույլ, բայց խոստումնալից քայլերն են արվում դրական հերոսի գեղարվեստական կերպարի ստեղծման մարզում: Սովետական աշխատավոր մարդն սկսում է աստիճանաբար իր արժանի տեղը գրավել մեր պիեսներում: Դրամատուրգիայում հանդես է գալիս նաև առաջադեմ հայ կինը (Կոմսոմոլ Աստղիկ— Ա. Ղարագյուլյան), որը ծնունդն է սոցիալիստական իրավակարգի:

20-ական թվականներին մեր թատերագրությունը ո՛չ միայն անդրադառնում է գյուղացիության նոր կյանքին, այլև վերակենդանացնում շատ մոտ անցյալի մռայլ պատկերները (Ան. Վարդանյան՝ Նշանդրեք, Ազդանշան և այլն, Լ. Սաղաթելյան՝ Մի կտոր հողի մամար): Լ. Սաղաթելյանի վերոհիշյալ դրաման, իր թերություններով հանդերձ, աչքի է ընկնում կենսական հավաստիությամբ, գյուղական միջավայրի ու կենցաղի ռեալիստական վերարտադրությամբ, բնորոշ կերպարներով, բնական ու հյութեղ երկխոսությամբ: Թատերագիրը ճշմարտացի է վերարտադրում մինչսովետական հայ գյուղում մի կտոր հողի համար մղվող օրհասական կռվի ցնցող դրվագները, ընչազուրկ հայ գեղջուկի ապրած սոցիալական ու մարդկային ծանր դրաման:

Սովետահայ թատերագրությունն իր գոյության առաջին իսկ տարիներից ակտիվ հետաքրքրություն է ցուցաբերում Արևելքի ժողովուրդների կյանքի ու ազգային-հեղափոխական շարժումների նկատմամբ: Այս կարևոր թեմայի անդրադարձումն են Վ. Թոթովենցի Հրդեհ, Մ. Ջանանի Բանվոր քեռին Արևելքում, Ստ. Բաղդասարյանի Արյունոտ անապատ պիեսները: Իր գաղափարագեղարվեստական բովանդակությամբ ամենաուշագրավը վերջինն է, որ հայտնի է նաև Մարոկկո անունով: Արդիական թեմատիկայի մշակման ասպարեզում, սակայն, մեր դրամատուրգները նկատելի հաջողության չհասան, մնայուն արժեքներ չստեղծեցին: Հեղափոխությանը և քաղաքացիական կռիվներին նվիրված պիեսներին հատուկ էր ագիտացիոն-պլակատային ոճը, ռոմանտիկական պաթետիկան ու անսքող միտումնավորությունը, իսկ գյուղը պատկերող թատերգություններին, չնչին բացառությամբ՝ էմպիրիզմն ու կենցաղագրությունը. չկար կյանքի լիարժեք գեղարվեստական վերարտադրություն:

Արևելքի ազգային-ազատագրական շարժումներին նվիրված գործերը նույնպես զերծ չէին էական թերություններից, բայց դրանք ունեին գոնե արտաքին-սյուժետային հետաքրքրություն, բեմական էին և հուզում էին հանդիսականներին:



Արդիական կյանքը պատկերող առաջին պիեսները, առանձին բացառություններով, աչքի չեն ընկնում իրենց գեղարվեստական արժանիքներով, կենսական-գաղափարական բովանդակության և դրամատուրգիական ձևի հարստությամբ: Սա պետք է բացատրել մեր թատերագիրների կարողության պակասով ու անփորձությամբ, նոր կյանքի վատ իմացությամբ, ինչպես և այդ տարիների գրականության ու արվեստին ներկայացվող ուրույն պահանջներով: Ժամանակն այնպիսին էր, որ առաջին հերթին կարևորվում էր գեղարվեստական երկերի բովանդակությունն ու ագիտացիոն նշանակությունը: Այդ բնական էր, հասկանալի:

Մեր գրականության ու արվեստի զարգացման այս նախափուլում հրատապ էին աշխատավորության քաղաքական դաստիարակության խնդիրները: Թատրոնը ևս պետք է դառնար կոմունիզմի գաղափարների տրիբունա: Ժամանակը պահանջում էր աշխատավորությանը կազմակերպված ձևով կռվի հանել ընդդեմ դասակարգային թշնամու՝ կուլակի ու նէպմանի և, միաժամանակ, պայքարել հին կենցաղի, բացասական հին սովորությունների ու կրոնական հավատալիքների դեմ: «Անհրաժեշտ է պրակտիկ ձևով դնել կոմունիզմի համար մղվող պայքարի գաղափարների սիստեմատիկ մասսայական պրոպագանդայի համար թատրոնն օգտագործելու հարցը», ասված է 1923 թվականին տեղի ունեցած ՌԿ(բ)Կ XII համագումարի՝ պրոպագանդայի և ագիտացիայի հարցերին վերաբերող բանաձևում:

Քսանական թվականներին մեզ մոտ ևս առաջադրվում է ագիտացիոն-մասսայական թատրոնի պահանջը, մշակվում են նրա գեղագիտական սկզբունքները: Հայաստանում ևս ծնունդ է առնում պրոլետարական, «ձախ» հեղափոխական թատրոնի պրակտիկան, ստեղծվում են ինսցենիրովկաներ ու հրապարակային մասսայական ներկայացումներ, «ազատ բեմավորումներ» (Դ. Դեմիրճյան), որոնք այլ բան չէին, քան նույն հրապարակային ներկայացումներն ու ինսցենիրովկաները, որ այնպես տարածված էին Ռուսաստանում:

Հարկ է նշել, որ «ձախ» հեղափոխական թատրոնի որոշ ձևեր սկզբնական շրջանում անհրաժեշտ էին, որովհետև իրենց պարզության ու դյուրամատչելիության շնորհիվ անմիջական ներգործություն էին ունենում մասսայական հանդիսականի վրա: Այն ժամանակներում սա առավելություն էր համարվում, որովհետև գըլխավորը, առաջնայինը գաղափարաքաղաքական ագիտացիան էր: Մյուս կողմից էլ ժողովրդական հանդիսականն իր կուլտուր-կրթական մակարդակի, ինչպես և նոր գաղափարների ու արվեստի հանդեպ ունեցած խանդավառ սիրո պատճառով ո՛չ միայն նախընտրում էր դրամատուրգիայի ու թատրոնի պլակատային, պարզունակ ձևերը, այլև չէր նկատում առաջին պիեսների թերությունները կամ դրանց կարևորություն չէր տալիս: Եվ այս պայմաններում պատահական չէ, որ 20-ական թվականներին, հրապարակային ներկայացումների կողքին, երևան են գալիս և բազմաթիվ ագիտկաներ, որոնք բեմադրվում են թատրոններում ու բանվորական ակումբներում: Դրանցից են՝ Մ. Դարբինյանի Մինիստըրները (1921 թ.), Հ. Թումյանի Դիվանագիտական կատակերգությունը (1921 թ.), Ալ. Հակոբյանի Վերջին օրեր (1920 թ.), Դոնապանն ու իշխանը (1922 թ.), Շան ժառանգությունը (1925 թ.), Էդ. Խոճիկի Սերը ջրհորի ափին (1925 թ.), Ալ. Աբելյանի Նէպմանը (1930 թ.):

Օրվա հրատապ խնդիրների անմիջական արձագանք հանդիսացող այս և նման դրամատուրգիական «էքսպերիմենտները» հիշարժան են լոկ այն առումով, որ ավելի են ամբողջացնում սովետահայ թատերագրության ձևավորման նախնական ընթացքի մասին ունեցած մեր պատկերացումները:

Այդ տարիներին ստեղծված բազում ագիտպիեսներից ուշագրավ է միայն Եղիշե Չարենցի Կապկազը, երգիծական ինքնատիպ մի ստեղծագործություն, ուր ծանակվում են դաշնակները, մուսավաթականներն ու մենշևիկները, անդրկովկասյան ժողովուրդների ազգային շահերի այդ դավաճանները, եվրոպական տերերի պնակալեզներն ու քաղաքական ավանտյուրիստները: Չարենցը լավ է ցույց տվել հակաժողովրդական կուսակցությունների դատապարտվածությունը, անասնական վախը հեղափոխությունից, ազատագրական կռվի ելած մասսաներից: Պիեսում հետադիմական ուժերին հակադրված են բոլշևիկների գլխավորած հեղափոխական զանգվածները, որոնք, ի վերջո, նվաճում են հաղթանակը: Անդրկովկասյան ժողովուրդների համատեղ ջանքերով ջախջախվում և երկրից վտարվում են դաշնակցականները, մենշևիկներն ու մուսավաթականները: Պատմաքաղաքական այս իրադրությունը Կապկազ-ում արտացոլվել է խիստ մերկապարանոց, պլակատային ձևով, որը բնորոշ է ագիտկաներին: Պիեսի ֆինալում բեմ են մտնում բանվոր «խոխեքը» և դուրս են քշում Կարճիկյանին, Գեգեչկորուն ու Մուսավաթին: Այս պարզունակ ու «անսեթևեթ» դրամատուրգիական քայլով էլ պիեսում վերջ է տրվում աղամեկիքի ու չարչու իշխանությանը, հաստատվում է «բանվորի դիկտատուրը»:

Կապկազ-ում հին աշխարհի, հասարակության հետադիմական ուժերի կործանմանը զուգընթաց ցույց են տրված աշխատավորների հեղափոխական պայքարը, սոցիալիզմի գաղափարի հաղթանակը: Ժողովուրդը պիեսում հանդես է գալիս որպես վճռական շարժիչ ուժ, որպես պատմություն կերտող և անզուսպ ծիծաղում է իր թշնամիների վրա: Այդ ծիծաղը հզոր է ու անողոք, քանզի արտահայտում է հաղթանակած պրոլետարիատի դասակարգային ատելությունն իր երեկվա կեղեքիչների նկատմամբ: Թշնամիներին Չարենցը պատկերել է գրոտեսկային գույներով, երգիծական բացասման հուժկու կրքով: Այս խիստ ինքնատիպ ստեղծագործության մեջ գործողությունների վայրն ու զարգացումը պայմանական են, իսկ դեպքերի ու դեմքերի բնութագիրը՝ սխեմատիկ: Գործող անձինք աստեղ կենդանի մարդիկ չեն, այլ դիմակներ ու սիմվոլներ, որոնք ներկայացնում են այս կամ այն դասակարգը կամ քաղաքական կուսակցությունը:

Կենցաղային-հոգեբանական խոսակցությունները Կապկազ-ում փոխարինված են ագիտացիոն-մերկապարանոց բացականչություններով ու կոպիտ արտահայտություններով: Այս սատիրայում Չարենցն օգտագործել է միտինգների ժամանակ, փողոցում, շուկայում և այլուր հասարակ մարդկանց գործածած առօրյա խոսակցական ոճերը: Իր Միստերիա—Բուֆի լեզվի մասին Մայակովսկին ասել է. «դա միտինգների լոզունգներն են, փողոցի կանչերը, թերթերի լեզուն»: Իր պիեսի առնչությամբ նույնը կարող էր ասել և մեր պոետը Կապկազ-ում: Լայնորեն օգտվելով ժարգոնից և երկխոսությունը դարձնելով խիստ հասարակ, հաճախ՝ գռեհիկ, Չարենցը նկատի ուներ այն ժամանակվա հանդիսականի մակարդակն ու պահանջները:

Նպատակ ունենալով հիմնել ագիտացիոն-մասսայական հանրամատչելի թատրոն, բանաստեղծը չկարողացավ խուսափել սխալներից ու շեղումներից: Կապկազ-ի յուրահատուկ կառուցվածքի ու ոճի և Ղարայի ներկայացրած գեղագիտական ծրագրի մեջ արտահայտվել է դասական ժառանգության պրոլետկուլտական թերագնահատման հոռի միտումը:

Չնայած թերություններին, Չարենցի պամֆլետ-պիեսը բնորոշ և ուշագրավ երևույթ է սովետահայ թատերագրության, հատկապես, քաղաքական կոմեդիայի զարգացման առաջին շրջանի համար: Այդ խիստ յուրօրինակ երկի երևան գալու փաստն ինքնին ցույց է տալիս, որ 20-ական թվականներին մեզ մոտ ևս պայքար է ծավալվել ժողովրդական հանրամատչելի թատրոնի ստեղծման համար, կատարվել են հետաքրքրական փորձեր, երևան են եկել բազմաթիվ ագիտացիոն, երբեմն էլ Կապկազ-ի նման «դիսկուսիոն» պիեսներ: Դրանք թեպետ գեղարվեստական արժեք չունեին, այնուամենայնիվ, ուղի են հարթել մեր թատերագրության զարգացման համար և նախապատրաստել հենց այդ տարիների հաջողությունները:

Նոր տիպի, սովետական կատակերգություն ստեղծելու առաջին լուրջ փորձը մեզ մոտ կատարեց Դեմիրճյանը, 1923 թվականին հրապարակելով իր Քաջ Նազար-ը: Այս մեծարժեք ստեղծագործության հիմքը համանուն ժողովրդական հեքիաթն է, ուր արտահայտվել է աշխատավորական խավերի ծաղրական, ժխտող վերաբերմունքը կյանքի տերերի, անարժան կառավարողների նկատմամբ: Սրանց կենդանի մարմնացումը ապիկար, բայց սնապարծ Նազարն է, որը, դեպքերի բերումով գահ բարձրանալով, պատուհաս է դառնում մարդկանց համար:

Հեքիաթում ժողովուրդը, մի կողմից՝ ամբողջովին վատաբանում է Նազարին, նրան օժտում միայն բացասական գծերով, մյուս կողմից՝ ցույց է տալիս, որ այդպիսի մեկին բախտը իշխանության գլուխ է կանգնեցնում: Այսպիսի մոտեցման մեջ արտահայտվել է հասարակ մարդկանց հեգնական վերաբերմունքը նախախնամության նկատմամբ: Ժողովուրդը ֆատալիստ է, երբ ամեն ինչ վերագրում է բախտին, և, միաժամանակ, ռեալիստ, երբ «քննադատորեն» է մոտենում այդ աներևույթ ուժի «արարքներին», մերժում նրա ընտրյալին՝ վախկոտ ու ապիկար Նազարին: Հեքիաթում, սակայն, անարժանի իշխանությանը վերջ չի տրվում, «չարը» չի կործանվում, և գահին նստած բախտի սիրելին ծիծաղում է աշխարհի ու մարդկանց հիմարության վրա: Հիմնովին վերանայելով հեքիաթի իմացաբանական կոնցեպցիան՝ Դեմիրճյանը գաղափարական նոր հիմքի վրա կառուցեց իր կոմեդիան՝ կատարելով պատմափիլիսոփայական խոր ընդհանրացումներ: Հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունները չեն ենթարկվում բախտի կույր տնօրինությանը, պատահականությունների խաղին: Աշխարհը խավարում չի կարող մնալ, ճշմարտությունն անպայման երևան է գալիս, ուստի և սոցիալական անիրավության իշխանությունը տևական չէ, նազարները դատապարտված են անխուսափելի կործանման:

Վերցնելով հեքիաթի հիմնական դրությունները, գրողն ստեղծեց կատակերգական սրամիտ սյուժե, գունեղ կերպարներ և, հաղթահարելով ժողովրդական ստեղծագործությանը հատուկ ֆատալիզմը, կոմեդիային հաղորդեց ռեալիստական բնույթ ու սոցիալական որոշակի շեշտ: Իր պիեսում նա մեծ տեղ է տվել պատահականությունների խաղին, հեքիաթային պայմանականության ու հրաշապատումին, բայց, միաժամանակ, ջանացել է պատճառաբանել Նազարի հաջողությունները, գտնել դրանց ռեալիստական բացատրությունը: Եթե ժողովրդական ստեղծագործության մեջ ամեն ինչ վերագրվում է բախտին, կույր պատահականությանը, ապա կոմեդիայում անարժանի հաջողությունների հիմքը ավելի շատ նրա անձնական տվյալներն են և, հատկապես, հասարակության հիմարությունը:

Կատակերգական գլխավոր թյուրիմացությունը շրջապատի սխալ, երևակայական պատկերացումն է Նազարի մասին: Մյուս կողմից էլ, հեքիաթի համեմատությամբ, կոմեդիայում Նազարն ակտիվ է գոնե այն չափով, որ գիտակցում է ստեղծվող դրությունների նպաստավորությունը և օգտվում դրանցից՝ հարմարվելով պայմաններին և խաղալով այն դերը, որ թյուրիմացաբար իրեն են վերագրում մոլորված մարդիկ:

Ստեղծելով կատակերգական գործողությունների ընթացքը պայմանավորող այսպիսի նոր, ռեալիստական գործոններ և գլխավոր հերոսին դարձնելով խորամանկ ու յուրովի ակտիվ, Դեմիրճյանն իր պիեսին հաղորդել է հասարակական բովանդակություն, գաղափարական նպատակասլացություն և երգիծական սրություն: Եթե հեքիաթում ժողովրդական երգիծանքն ուղղված է Նազարի և նրան բարձրացնող բախտի դեմ, ապա կոմեդիայում ծաղրված են անարժան մարդը և նրան զորավիգ դարձած հասարակությունը— տգետ ու հետամնաց գոռբաշենցիները, դիմազուրկ, ստրկահաճ պարզաշենցիները, ֆիզիկապես ուժեղ, մտքով խեղճ ու տհաս իսկաները, անխելք ու ցնդած տիրացուն...

Դեմիրճյանը 20-ական թվականներին, Ալ. Շիրվանզադեի ու Ե. Չարենցի հետ մեկտեղ, սովետահայ դրամատուրգիայի և, հատկապես, կատակերգության ամենատաղանդավոր ու եռանդուն ստեղծողներից էր: Մեր այս երեք մեծանուն գրողների առաջին պիեսները կատակերգություններ էին, ժանրային նկարագրով իրարից շատ տարբեր: Եթե Դեմիրճյանը, որ դարասկզբին հայ թատերագրության մեջ հիմնադրել էր բարոյափիլիսոփայական լիցք ունեցող անալիտիկ դրաման, մեզ մոտ առաջինը քաղաքացիության իրավունք տվեց նաև փիլիսոփայական կատակերգությանը (իհարկե, Քաջ Նազարը քաղաքական երգիծանքի շեշտ էլ ուներ), ապա Չարենցն ու Շիրվանզադեն ստեղծեցին մեր դրամատուրգիայի անդրանիկ քաղաքական կատակերգությունները: Եթե Չարենցը Կապկազ-ում ծանակել է Անդրկովկասի բուրժուազգայնական կուսակցությունների տխրահռչակ գործունեությունը 1918—1920 թվականներին, ապա Ալ. Շիրվանզադեն 1926-ին գրած իր վերջին պիեսում խարանել է արդեն բուրժուական վտարանդիներին: Երգիծանքի գլխավոր օբյեկտ դարձնելով Բաքվի ու Գրոզնու նավթարդյունաբերող Պետրոս Մինթոևին՝ մեծ գրողն այս կոմեդիայում մի վերջին անգամ անդրադառնում է իր ստեղծագործության գլխավոր թեմային: Ապրելով Փարիզում և գիտենալով վտարանդիական ճահիճը՝ գրողը նկատել է, որ կատակերգական շատ բան կա հարստությունն ու իշխանությունը կորցրած նախկին մեծատունների վարքագծում, թեև նրանց դրությունն ըստ էության դրամատիկական էր:

Արտասահման փախած հայ մեծահարուստները, դաշնակցական ու սպիտակգվարդիական թափթփուկները, որոնց նպատակը Ռուսաստանում նոր կարգերի տապալումն ու կապիտալիզմի վերականգնումն է, չունենալով ռեալության զգացողություն, չհաշտվելով սեփական ճակատագրի հետ, պահպանել էին իրենց նախկին հոգեբանությունն ու հավակնությունները, որոճում էին կորցրածը վերականգնելու անհեթեթ ծրագրեր, հավատում դրանց իրագործելիությանը: Ատելությունը սոցիալիզմի երկրի նկատմամբ, իրենց բուրժուական «կորուսյալ դրախտը» վերագտնելու մոլի ձգտումը անցյալի այդ ողորմելի բեկորներին դարձնում են լկտի ու սանձարձակ: Եվ անզոր կատաղությամբ ու ռեվանշիստական մոլուցքով բռնված՝ նրանք հղանում են դիվային պլաններ, տենչում դաժան հաշվեհարդար տեսնել մեր երկրի ժողովուրդների ու բոլոր ազնիվ մարդկանց հետ:

Մորգանի խնամին կոմեդիայում էմիգրանտական ճահիճը յուրովի ներկայացնում է այն իրականությունը, որն իր էությամբ անհամատեղելի է գրողի իդեալի և դրա կենդանի մարմնացման՝ սովետական երկրի հետ:

Քաջ Նազարը և Մորգանի խնամին մեր դրամատուրգիան միանգամից բարձրացրին սովետահայ արձակի ու բանաստեղծության լավագույն երկերի, ինչպես և ազգային դասական կատակերգության ու երգիծաբանության մակարդակին: Դա մի անակնկալ ստեղծագործական թռիչք էր 20-ական թվականների պայմաններում, այն էլ հազիվ իր առաջին, երերուն քայլերն անող նոր թատերագրության՝ ընդհանուր առմամբ թույլ կամ միջակ գործերի ֆոնի վրա: Ստեղծագործական այդ թռիչքը Ալ. Շիրվանզադեի և Դ. Դեմիրճյանի մեծ տաղանդի արդյունքն էր. սովետահայ դրամատուրգիան իր հաջող մեկնարկի ու հետագա նվաճումների համար մեծապես պարտական է մեր այս երկու խոշոր գրողներին, որոնք գործելով երիտասարդ ու անփորձ թատերագիրների կողքին, նրանց

համար կենդանի դպրոց և, միաժամանակ, հզոր լծակից եղան գրական համատեղ աշխատանքում:

Ամենազնահատելին այն է, սակայն, որ 20-ական թվականներին, երբ բուռն վիճաբանում էին նոր թատրոնի ու դրամատուրգիայի բնույթի ու առանձնահատկությունների մասին, երբ «ձախ» դիրքերից փորձեր էին արվում պրոլետարական արվեստը կտրելու դասական ավանդներից, Շիրվանզադեն ու Դեմիրճյանը գործնականում նշեցին ճշմարիտ ուղին: Նրանք ո՛չ միայն նոր թատերագրության հիմքը դրեցին, ստեղծելով նրա՝ առայսօր չգերազանցված առաջին երկերը, այլև շարունակեցին ու զարգացրին անցյալի հայ ռեալիստական գրականության իմացաբանական-գեղագիտական լավագույն սկզբունքները:

Գրական մեծ նախորդների՝ Սունդուկյանի, Պարոնյանի և Օտյանի ստեղծագործություններից ժառանգելով երգիծանքի սոցիալ-քաղաքական հարուստ լիցքը, մերկացման ու ընդհանրացման մեծ ուժը, կյանքի պատկերման խոր ռեալիզմը, մեր մեծանուն գրողներն իրենց կատակերգություններին գաղափարական առավել նպատակասլացություն ու քաղաքական տենդենցիոզ բնույթ (Մորգանի խնամին), իսկ ծիծաղին՝ փիլիսոփայական գունավորում և հոմերական թափ (Քաջ Նազար) հաղորդեցին:

Այդ ամենը պայմանավորված էր պատմական նոր ժամանակի, ինչպես և ստեղծագործական այն մեթոդի առանձնահատկություններով, որին արդեն առնչվում էին Շիրվանզադեն ու Դեմիրճյանը:

***

Ծանոթանալով 20-ական թվականներին մեզ մոտ ստեղծված թատերգություններին՝ տեսնում ենք, որ կատակերգությամբ է սկսվում սովետահայ դրամատուրգիայի զարգացումն իր գոյության առաջին տասնամյակում: Քաջ Նազար, Կապկազ, Մորգանի Խնամին պիեսների քաղաքական երգիծանքն ուղղված է սեփականատիրական հասարակարգի, թշնամի դասակարգերի ու նրանց գաղափարախոսության դեմ: Ծիծաղի միջոցով ժխտելով հինը, իր դարն ապրածը՝ մեր թատերագիրներն արտահայտում էին վերածնված հայ ժողովրդի ժխտական վերաբերմունքը անցյալի նկատմամբ:

Այդ տարիներին երգիծական ժանրը կարևոր տեղ էր գրավում ո՛չ միայն թատերագրության մեջ, այլև արձակում ու պոեզիայում: 20-ական թվականներին վերոհիշյալ կոմեդիաների կողքին երևան են գալիս Ե. Չարենցի Երկիր Նաիրի, Դեմիրճյանի Համառոտ անմահներ, Ա. Բակունցի Հովնաթան Մարչ արձակ գործերը, բազմաթիվ երգիծական ոտանավորներ ու էպիգրամներ, քաղաքական պամֆլետներ, առակներ: Երգիծանքը վճռական նշանակություն է ստանում նաև թատրոնի ու կերպարվեստի ասպարեզում:

Նորաստեղծ հայ գրականության ու արվեստին բնորոշ հնի ժխտման կիրքը, երգիծական ժանրերի զարգացումը վկայում են, որ 20-ական թվականներին անցյալ կյանքի հետադիմական ձևերը ծաղրելը համաժողովրդական պահանջ էր: Այն ժամանակ, երբ գրվում էին մեր առաջին կատակերգությունները, երգիծական վեպերն ու ոտանավորները, հայ ժողովուրդը նոր էր ազատագրվել, նրա հիշողության մեջ դեռ թարմ էին մոտիկ անցյալի մղձավանջային պատկերները, և վերածնվող կյանքի պայծառ լույսի տակ հին աշխարհը երևում էր իր ողջ այլանդակությամբ: Մարդիկ անզուսպ պահանջ էին զգում՝ ծաղրելու իրենց երեկվա տերերին ու այսօրվա թշնամիներին, ծիծաղելու սեփական անցյալի վրա: Մյուս կողմից էլ պետք էր ծաղրել ու ոչնչացնել կապիտալիզմի մնացուկները կյանքում և մարդկանց գիտակցության մեջ, որովհետև հնի վերացման ճանապարհով միայն հնարավոր էր ստեղծել նորը: Երգիծանքի հախուռն վերելքն այս տարիներին պայմանավորված էր և ներքին տնտեսական-քաղաքական ու միջազգային այն իրադրությամբ, որի մեջ 20-ական թվականներին զարգանում էր հեղափոխության նորաստեղծ երկիրը:

Զարգացող, առաջ ընթացող կյանքն ավելի ու ավելի մեծ սրությամբ էր դնում սոցիալիստական իրականությունն արտացոլող լիարյուն պիեսներ ստեղծելու խնդիրը, որն զբաղեցնում էր ժամանակի հասարակական միտքը, կուսակցական ու պետական ղեկավարությանը: 1928 թ. Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հատուկ որոշում է ընդունում թատրոնի խաղացանկի վերաբերյալ, ընդգծելով ինքնուրույն դրամատուրգիայի ստեղծման կարևորությունը: Թատրոնի ու դրամատուրգիայի հիմնական խնդիրը համարվում են նոր կյանքի արտացոլումը, սովետական մարդու կերպարի ստեղծումը: Նույն հարցերին էր նվիրված և կուսակցության Անդրերկրկոմի՝ 1929 թ. հրավիրած խորհրդակցությունը, որի ընդունած բանաձևում նշված է. «Ռեպերտուարային հարցում ճիշտ գիծը թատերական գործը ղեկավարող կազմակերպություններից պահանջում է, որ ռուսաստանյան, ուկրաինական, բելոռուսական և արտասահմանյան պրոլետարական ու հեղափոխական դրամատուրգների ստեղծած արժեքավոր դրամատիկական նյութերի օգտագործման հետ միասին, ամեն կերպ օժանդակություն ցույց տրվի ազգային ինքնուրույն դրամատուրգիայի աճին ու զարգացմանը»:



Սովետահայ թատերագրության զարգացման հարցերը հուզում էին ո՛չ միայն դրամատուրգներին ու թատրոնի գործիչներին, այլև գրական-թատերական լայն հասարակայնությանը: Եվ պատահական չէ, որ հատկապես 1929—30 թթ. մեզ մոտ տեղի են ունենում ստեղծագործական բուռն վեճեր թատրոնի ու թատերագրության կենսական կարևոր խնդիրների շուրջ: Մամուլում տպագրված հոդվածներում, ինչպես և այդ տարիներին հաճախակի տեղի ունեցող բանավեճերում արծարծվում են արդիական թեմատիկայի, ժանրերի, դրական հերոսի, գրական վարպետության հարցերը:

Ինքնուրույն, արդիական դրամատուրգիայի և դրա խնդիրների շուրջ ստեղծված այս համընդհանուր հետաքրքրության ու հոգածության մթնոլորտում մեր թատերագիրներն ավելի մեծ պատասխանատվությամբ ու եռանդով են ջանում ազատագրվել իրենց ստեղծագործական աշխատանքում եղած լուրջ թերություններից, ճանապարհ հարթել դեպի սոցիալիստական արվեստը: Այդ տարիների նոր կյանքը պատկերող սովետահայ դրամատուրգները ձգտում են աստիճանաբար հաղթահարել սխեմատիզմն ու նատուրալիզմը, որոշ պիեսներին հատուկ մերկապարանոց տենդենցիոզությունը, էմպիրիզմն ու կենցաղագրությունը, հասնել գրական-գեղարվեստական պատշաճ մակարդակի՝ ստեղծելու համար սոցիալիստական դարաշրջանին վայել բարձրարժեք գործեր:

Չնայած սկզբնական շրջանի բոլոր դժվարություններին, ծնունդ առնող մեր դրամատուրգիան իր լավագույն, առայսօր չգերազանցված գործերով (Քաջ Նազար, Մորգանի խնամին) նվաճեց գեղարվեստական այնպիսի բարձր բնագծեր, որոնք զգալապես դյուրացրին դրա հետագա առաջընթացը: Ո՛չ միայն այս հանրաճանաչ կոմեդիաների, այլև նույնիսկ մյուս բազմաթիվ միջակ պիեսների ստեղծման պրոցեսում, լուծելով ստեղծագործական և այլ կարգի հարցեր, անգամ թույլ տալով ժամանակի ու պայմանների տեսակետից անխուսափելի սխալներ ու ծայրահեղություններ և հաղթահարելով դրանք, թատերագրությունն օբյեկտիվորեն ուղի էր հարթում իր զարգացման համար: Այդ ժամանակվա դրամատուրգների լավագույն արժանիքներից էր այդ:

Եվ մեր դրամատուրգիան իր այսօրվա նվաճումների համար ինչ-որ չափով պարտական է նաև 20-ական թվականներին գրականության այդ դժվարագույն բնագավառում ստեղծագործող գրողների ազնիվ ջանքերին: Ավելին, անցյալի ձեռքբերումները, մոտ 60-ամյա ճանապարհի ուսանելի դասերը սովետահայ թատերագիրներին այսօր օգնում են՝ լուծելու մեր գրականության ու արվեստի առջև ծառացած ստեղծագործական նոր խնդիրները, կատարելու գրողի իրենց այն պարտքը, որի մասին 1976 թ. հոկտեմբերյան պլենումում Հայաստանի կոմկուսի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Արվեստագետի պարտքն է կերտել բարձր գաղափարայնությամբ, գեղարվեստական մեծ արժանիքներով աչքի ընկնող գեղարվեստական ստեղծագործություններ, որոնք մարդկանց սնունդ տան խորհըրդածությունների և հետևությունների համար, օգնեն նրանց կենսական ճիշտ կողմնորոշում ունենալու, հարստացնեն նրանց հոգևոր աշխարհը, մոբիլիզացնեն աշխատանքային նոր սխրանքների»:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՉԱՐԵՆՑԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

(Ծննդյան 80-ամյակի առթիվ)

ԷԴ. Մ. ՋՐԲԱՇՅԱՆ
ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ



ՎԱՂՈՒՑ ՆԿԱՏՎԱԾ օրինաչափություն է, որ ժամանակը ո՛չ միայն մոռացություն չի բերում գեղարվեստական մեծ երևույթներին, այլև օգնում է ավելի խոր հասկանալու դրանց պատմական ու արդիական իմաստը: Իսկական արվեստը դուրս է գալիս իրեն ծնած պատմական միջավայրի սահմաններից և ամեն մի սերնդի հետ ապրում է մի նոր կյանքով, բացահայտվում իր բովանդակության ու ձևի նորանոր կողմերով: Այդ օրինաչափության խոր գիտակցությամբ՝ Չարենցը 1933 թվականին գրում էր.

*Թեկուզ դարն է ծնում և երկիրն է տալիս*
*Երգին շունչ ու ոգի—*
*Բայց երգը երգից ու դարից մի՜շտ երկար է*
*տևում:*

Այս դատողության լավագույն ապացույցներից մեկը Եղիշե Չարենցի ստեղծագործությունն է: Նրան, իրոք, ծնել էր իր դարը՝ համաշխարհային պատմության մեծ ցնցումների ու վերափոխումների ժամանակաշրջանը: Գրականության մեջ գործելով ճիշտ քառորդ դար (1912—1937), նա միշտ ամենասերտ, անխզելի կապերով կապված մնաց իր բուռն ժամանակի հետ: Այդ դարաշրջանի բոլոր նշանակալից իրադարձություններն ու բեկումները՝ առաջին համաշխարհային պատերազմն ու հայկական եղեռնը, Հոկտեմբերյան հեղափոխությունն ու քաղաքացիական կռիվները, սոցիալիստական շինարարության սկիզբն ու հաղթարշավը 20—30-ական թվականներին— այս բոլորն իրենց ազգային և համամարդկային անդրադարձումներով գեղարվեստական մեծ ուժով դրոշմվել են նրա անհամար պոեմներում ու բանաստեղծություններում, գեղարվեստական արձակում, հրապարակախոսության և քննադատության, գրական-հասարակական գործունեության մեջ: Այո՛, իր ողջ ստեղծագործությամբ և կյանքով Չարենցն իրավունք էր նվաճել իր մասին ասելու. «Իմ բոլո՛ր, բոլո՛ր նյարդերով, որ կան, ես կապված եմ իմ վիթխարի դարին»:

Չարենցի վաղահաս մահից անցել է ճիշտ քառասուն տարի, որոնց ընթացքում քաղաքական, տնտեսական և գաղափարական նոր վիթխարի փոփոխություններ են կատարվել աշխարհում, ինչպես նաև մեր հասարակության գեղարվեստական գիտակցության մեջ: Եվ, այնուամենայնիվ, Չարենցը շարունակում է ապրել մեզ հետ, մեր մեջ՝ ոչ թե կլասիկի «պատվավոր կյանքով», այլ իբրև մեր օրերի կենդանի բանաստեղծ, որը կարող է տալ ժամանակակից մարդուն հուզող շատ հարցերի պատասխանը: Լինելով սովետահայ գրականության հիմնադիրներից խոշորագույնը, որին դեռ կենդանության ժամանակ անվանեցին այդ գրականության «ողնաշարը», դառնալով կենսատու և անսպառ աղբյուր հայ պոեզիայի հետագա ողջ զարգացման համար, Չարենցը մընում է և դեռ երկա՛ր է մնալու մեր ամենաարդիական բանաստեղծը, որի կիրառած ժանրերը, մոտիվներն ու ձևերը կարող են միշտ թարմանալ, ծառայել այսօրվա և ապագայի արվեստին: Ժամանակը լիովի հաստատեց բանաստեղծի մարգարեությունն այն մասին, որ նա իր երգերը գրել է ոչ թե օրերի համար, «այլ տարիների հեռավոր ու ջինջ և գուցե, անգամ, դարերի նորեկ»:

Եղիշե Չարենցի անվան և գործի մեծությունը կարելի է և պետք է գնահատել ամենամեծ չափանիշներով: Նա հայ բազմադարյան մշակույթի խոշորագույն դեմքերից մեկն է, մեծ բանաստեղծներով հարուստ մեր գրականության առաջին մեծություններից մեկը: Չարենցը սովետական բազմազգ գրականության հիմնադիրներից և առաջին դասականներից է: Միաժամանակ, իր ընդգրկումների լայնությամբ և խորքով, բանաստեղծական միջոցների ինքնատիպությամբ ու նորարարությամբ նա մտնում է համաշխարհային պոեզիայի այն նշանավոր դեմքերի շարքը, որոնց անունները, Լուի Արագոնի պատկերավոր բնորոշմամբ, պսակում են մեր դարի ճակատը:

Ինչպե՞ս հասավ Չարենցը գրական այդ բարձունքին, հասարակական և գեղարվեստական ի՞նչ աղբյուրներ էին սնում նրա հզոր տաղանդի զարգացումը:

ԻՐ ԱՆՑԱԾ դժվարին ու բարդ գրական ճանապարհի, ստեղծագործական անհանգիստ որոնումների, սուր անցումների և բեկումների մասին Չարենցը անվեհեր անկեղծությամբ ու հիանալի դիպուկությամբ պատմել է 1930 թ. գրած Մուսայիս բանաստեղծության մեջ: «Երգի դիցուհուն» ուղղված խոստովանություն-զրույցի ձևով նա գծագրել է իր բանաստեղծական ինքնակենսագրությունը: Իր նախահոկտեմբերյան գրական կյանքի տարիները Չարենցը համարում էր անհույս դեգերումների և որոնումների շրջան հենց այն պատճառով, որ իրեն դեռ պակասում էր հասարակական մեծ շարժման հետ ունեցած կապի գիտակցությունը: Դիմելով իր երգի մուսային՝ բանաստեղծն այդ տարիների մասին գրում էր.

*Գգվեցիր դու ինձ գգվանքով քնքույշ,*
*Ինչպես լուսնահար աղջիկն է գգվում,*
*Երգեցիր սրտիս ցնորքներ ու հուշ,*
*Քնարդ եղավ անզոր ու անուժ*
*Եվ բեկվեց, ինչպես ուռին է բեկվում:*

Իրոք, մի շարք հասարակական և գեղարվեստական գործոններ պայմանավորեցին այն իրողությունը, որ երիտասարդ բանաստեղծը մինչև 1917 թվականը գտնվում էր ստեղծագործական տանջագին երկվության մեջ: Դա երևում է այդ տարիներին նրա հրատարակած գրքույկներում (Երեք երգ տխրադալուկ աղջկան և Ծիածանը ժողովածուները, Կապուտաչյա հայրենիք, Դանթեական առասպել պոեմները), ինչպես նաև այդ ժամանակ գըրված, բայց անտիպ մնացած բանաստեղծական շարքերում (Տեսիլաժամեր, Հրո երկիր, Լիրիկական բալլադներ և այլն): Դժգոհությունը գորշ իրականությունից, հեռավոր-անհաս և անորոշ իդեալի որոնումները Չարենցին տարան դեպի ժամանակի ազդեցիկ գեղարվեստական հոսանքներից մեկի՝ սիմվոլիստական պոեզիայի ձևերը, կյանքի իրական պատկերները մեծ մասամբ փոխարինելով տեսիլներով և խորհըրդանիշներով: Այդ սկզբունքներով երիտասարդ Չարենցն ստեղծեց շատ կատարյալ երգեր, բացահայտեց և ցուցադրեց միայնակ անհատի հոգեկան տառապանքների նրբագույն ծալքեր, հետտերյանական հայ պոեզիան հարըստացրեց ինքնատիպ պատկերներով:

Դրա հետ մեկտեղ, արդեն հեղափոխությունից առաջ Չարենցն իրեն դրսևորեց իբրև ողբերգական մեծ ուժի և իրականության խոր զգացողություն ունեցող բանաստեղծ: Կապուտաչյա հայրենիք և, մանավանդ, Դանթեական առասպել պոեմներում, իրական և խորհըրդանշանային պատկերների համադրությամբ, արտացոլվեց այդ տարիներին Հայաստանում ստեղծված ողբերգական իրադրությունը, համաշխարհային պատերազմի սարսափները, հայրենիքի ապագա վերածնության, մարդու և բնության ներդաշնակ գոյության երազանքը:

Արդեն այն, ինչ Չարենցն ստեղծել է մինչև հեղափոխությունը, բավական էր նրան հայ

նոր բանաստեղծության մեջ պատվավոր տեղ ապահովելու համար: Բայց դա նրա վիթխարի բանաստեղծական տարերքի մի կողմը, մի մասնիկն էր միայն, տարերք, որն իր ամբողջ մեծությամբ ու վեհությամբ պիտի արթնանար ու շարժման մեջ դրվեր համաշխարհային-պատմական նոր դեպքերի ազդեցությամբ:

ԱՅԴ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆԸ մարդկության պատմության մեջ նոր դարագլուխ ազդարարած մեծ Հոկտեմբերն էր: Չարենցի ստեղծագործական ուղին լավագույն օրինակներից մեկն է այն բանի, թե ինչ դեր խաղաց սոցիալիստական հեղափոխությունը արվեստագետի ճակատագրում: Վ. Մայակովսկու նման Չարենցն էլ կարող էր ասել՝ «Իմ հեղափոխությունն է», որովհետև նրա մեջ տեսավ ինչպես սոցիալական և ազգային ազատագրության, այնպես էլ անձնական իդեալների իրագործման, իր բանաստեղծական տաղանդին համարժեք մոտիվներ գտնելու ուղին: Զուր չէ, որ տարիներ անց նույն Մուսայիս բանաստեղծության մեջ այդ մասին նա գրում էր.

*Հառնեցիր հանկարծ վիթխարի թափով*
*Դու շնդալից այգին ընդառաջ.*
*Լցված հողմային օրերի տապով՝*
*Կանգնեցիր՝ ձեռքիդ պայքարի շեփոր,*
*Եվ դարձար այնքան նոր ու անճանաչ:*

Ճիշտ է, սկզբնական շրջանում բանաստեղծը հեղափոխությունն ընկալեց և վերապրեց «որպես մի ռոմանտիկական-հուզական բռնկման պրոցես», ինչպես տարիներ անց խոստովանել է ինքը: Եվ դրա պատմահոգեբանական ու գեղարվեստական պատճառները դժվար չէ բացատրել: Այստեղից էլ՝ նրա հետհոկտեմբերյան առաջին երկերի (Սոմա, Ամբոխները խելագարված, Ռադիոպոեմներ, Ողջակիզվող կրակ բանաստեղծական շարքը և այլն) հեղափոխական-ռոմանտիկական ոճը, հիպերբոլիկ պատկերների առատությունը: Այդ երկերում իշխում է հեղափոխության, իբրև ամեն ինչ հեղաշրջող և մաքրագործող փոթորկի, տարերային վիթխարի ցնցման պաթոսը, որոնց հետ բանաստեղծը կապում է մարդկության լավագույն ձգտումների կենսագործման հնարավորությունը: Այդ և հետագա տարիների մի քանի ուրիշ գործերում (Երգ ժողովրդի մասին, Ամենապոեմ և այլն) Չարենցն ստեղծեց հեղափոխության բանաստեղծական էպոսը՝ բառիս արդիական իմաստով: Այդ էպոսի հերոսը ոչ թե այս կամ այն նշանավոր անհատն է, այլ հեղափոխական ժողովուրդը՝ իբրև հավաքական ամբողջություն, որն ընդունակ է և՛ հնի վճռական կործանման, և՛ նորի ստեղծման: Խելագարված ամբոխների բանաստեղծական կերպարը Չարենցի խոշորագույն գեղարվեստական ընդհանրացումներից մեկն էր, որը հիմնվում էր այդ բառերի սովորական նշանակության արմատական վերաիմաստավորման վրա, դրանց մեջ դնելով հեղափոխական զանգվածների անընդգրկելի ուժի, կոլեկտիվ կամքի, անձնազոհ ոգևորության և վճռականության գաղափարը:

Չարենցի կատարած գործն իր նշանակությամբ դուրս է գալիս հայ գրականության սահմաններից. ողջ սովետական արվեստում, Մայակովսկու, Բլոկի և մյուսների հետ միասին, նա առաջիններից մեկն էր, որ, ապրելով փոթորկալի դեպքերի մթնոլորտում, լինելով դրանց ակտիվ մասնակիցը, կերտեց հեղափոխական օրերի բանաստեղծական տարեգրությունը: Եվ միայն այդպես, առանց «ժամանակի դիստանցիայի» կարելի էր ստեղծել այդ երկերը, որոնք հեղափոխական գործի և բանաստեղծական խոսքի օրգանական միաձուլման անմահ օրինակներ են, որոնց մեջ ներկայի կենդանի շունչը միանում է անցյալից վճռականորեն հրաժարվելու ձգտման և ցանկալի ապագան մոտեցնելու կրքոտ երազանքի հետ:

Սկսած Ողջակիզվող կրակ շարքից և, մանավանդ, Ամենապոեմից, Չարենցի ստեղծագործության մեջ ծագեց մի ուրիշ թեմա, որը պետք է առանցքային նշանակություն ստանար հետագա շրջանի նրա շատ երկերում: Դա սոցիալիստական հեղափոխության հետ Հայաստանի, հայ ժողովրդի ճակատագրի անխզելի կապի գաղափարն էր, որ նա մարմնավորել է վիթխարի գեղարվեստական ուժով և բազմազան տարբերակներով: Ինչպես ազգային ողբերգության անմիջական ընկալման միջով երիտասարդ Չարենցը հանգեց Հոկտեմբերյան հեղաշրջման փրկարար նշանակության գիտակցությանը, այնպես էլ հեղափոխական բանաստեղծի դիրքերից նա ավելի խոր հասկացավ ազգային իդեալների իրագործման ուղին: Չարենցի ստեղծագործությանը խորթ է ազգային որևէ սահմանափակություն՝ և՛ թեմատիկ, և՛ գաղափարական առումով: Նրա հեղափոխական շատ պոեմներում գործողությունը ծավալվում է ռուսական անծայրածիր տափաստաններում, համաշխարհային պատերազմի խրամատներում, փարիզյան կոմունարների մարտընչած վայրերում... Չարենցը մեծապես ընդլայնեց հայ գրականության հորիզոնները, գեղարվեստորեն արձագանքելով «մի փոքրիկ փողոց» դարձած աշխարհի անցուդարձերին: «Ես երջանիկ եմ և զգում եմ ինձ մարդկության ամենաառաջավոր հոսանքի մասնիկը շնորհիվ այն բանի, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը վերացրել է իմ հոգևոր տեսադաշտից ազգային ինքնասահմանափակումների այդ ողորմելի ցնորքը»,— հայտարարեց Չարենցը 1934 թ., գրողների համամիութենական համագումարի ամբիոնից: Բայց Չարենցի մեծությունն այն էր նաև, որ ինչի մասին էլ գրեր, նա միշտ մնում էր խորապես հայ բանաստեղծ, որն աշխարհը տեսնում և ընկալում է իր ազգային տարերքի դիրքերից: Եվ այդ հանգամանքը նրա երկերին տալիս է մի հատուկ հուզական երանգ, կրքոտության և համոզմունքի ուժ, որոնցով Չարենցի ձայնը կարող է տարբերվել մեր դարի հեղափոխական բանաստեղծների բազմության մեջ:

Հարազատ ժողովրդի անցյալի և ներկայի մասին խոր ու տանջալից խորհրդածությունների արդյունք է 20-ական թվականների առաջին կեսին գրված Երկիր Նաիրի վեպը՝ հայ արձակի այդ ամենաինքնատիպ և ուժեղ երկերից մեկը: Հուզական-գաղափարական երկու հոսանք՝ երգիծական և ողբերգական, անցնում է ամբողջ վեպի միջով, գունավորում նրա կերպարները, ոճը, կառուցվածքը: Մեկը կապվում է ազգային կուսակցությունների և առանձին գործիչների անհեռատես քաղաքականության երգիծման, իսկ երկրորդը՝ ջարդի և տեղահանության ենթարկված, իր պատմական հայրենիքից զրկված ժողովրդի ճակատագրի ցավագին վերապրումի հետ: Անտեսել այդ հոսանքներից մեկն ու մեկը, կնշանակեր միակողմանի, սխալ պատկերացնել Չարենցի այդ ամենից բարդ ու խոր երկերից մեկի իմաստը, նրա տեղը ինչպես գրողի ստեղծագործական համակարգում, այնպես էլ հայ արձակի պատմության մեջ:

Պատկերելով հեղափոխական ժողովրդի պայքարն ու ձգտումները՝ Չարենցը 20-ական թթ. կեսերին օրինաչափորեն հանգեց հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինի կերպարին, որը և դարձավ նրա ստեղծագործության մյուս առաջատար թեման: Քիչ է ասել, որ ամբողջ սովետական գրականության մեջ Չարենցը այդ թեմայի գեղարվեստական բացահայտման պիոներներից մեկն էր: Ավելի կարևորը լենինյան կերպարի մեկնաբանման տեսանկյունն էր, որը կապվում էր հեղափոխության և նրա առաջնորդի գործունեության ժողովրդական բնույթի ու հումանիստական բովանդակության հետ: Ահա թե ինչու լենինյան թեման Չարենցի համար ո՛չ միայն պատմա-քաղաքական, այլև բարոյագեղագիտական թեմա էր: Լենինը և ժողովուրդը, քաղաքական առաջնորդի մարդկայնությունը— ահա այդ կերպարի չարենցյան ըմբռնման հանգույցը: Պատահական չէ, որ նրա երկերում Լենինը միշտ հանդես է գալիս ժողովրդի հանդեպ ունեցած վերաբերմունքով կամ շարքային մարդկանց ընկալմամբ, և դա էլ դառնում է առաջնորդի կերպարի պարզության ու բարդության, մարդկայնության ու վեհության բացահայտման սյուժետային ելակետը.

*Նրան ծանոթ էր խինդը մանկան*
*Ու թվերի սառ ու գորշ լեզուն,*
*Կարող էր լինել բարի՜ այնքան,*
*Կարող էր լինել հեգնող ու սուր,—*
*Կարող էր մատի մի շարժումով*
*Մի ամբո՛ղջ, ամբո՛ղջ մի դասակարգ*
*Նա դատապարտել մահվան,— սակայն*
*Կարող էր նաև անհո՛ւն սիրով*
*Սիրել ծաղիկներ, վարդեր, Երգեր,*
*Ժիր մանուկներին քնքուշ գրկել,*
*Եվ, տեսնելով մի բոբիկ մուժիկ,*
*Պատվիրել, որ տան... մի զույգ կոշիկ...*

Այսպիսով, լենինյան կերպարի ըմբռնման և մեկնաբանության հարցում Չարենցը կանգնած էր այն ուղու վրա, որը սովետական գրականության, թատրոնի և կինոյի մեջ տիրապետող դարձավ մի քանի տասնամյակ անց: Կարելի է ասել միաժամանակ, որ այդ կերպարը Չարենցի համար նաև խորապես անձնական թեմա էր, ստեղծագործական աշխատանքի գերագույն չափանիշ և իդեալ, մի բարձունք, որից կարելի է ու պետք է լուծել գեղարվեստական ամեն մի խնդիր.

*Լե՛նին, այո՛,— Լե՛նին:— Բայց ո՛չ*
*միտինգային,*
*Բայց ո՛չ թմբուկ թեթև, բայց ո՛չ պլակատ:*
*Լենին— այսօր արդեն ասել է— գագաթ,*
*Ասել է— ներքի՛ն կառույցում քո նոր թեմայի:*

Այս ըմբռնումը մինչև վերջ, նույնիսկ ծանր փորձությունների ժամանակ, Չարենցի համար մնաց իբրև հոգեկան կորովի աղբյուր և ամենաբարձր ստեղծագործական չափանիշ:

ՀԱՅՏՆԻ Է, ՈՐ 1922—1924 թվականներին Չարենցը բավականին հրապուրվեց ֆուտուրիստական գաղափարներով և ագիտ-պոեզիայի ձևերով: Պոեզիայի բնույթի ու դերի մասին միակողմանի պատկերացումների արդյունքը եղան Ռոմանս անսեր, Պոեզոզուռնա, Կոմալմանախ և այլ երկեր: Սակայն Չարենցը բավական արագ հաղթահարեց այդ թյուր պատկերացումները և մտավ իր ստեղծագործական կյանքի ամենահասուն՝ բուն ռեալիստական շրջանը: Այդ շրջանը նշանավորվեց այնպիսի գործերով, ինչպես Էպիքական լուսաբաց և Գիրք ճանապարհի ժողովածուները, Լիրիկական անտրակտ շարքը, Խմբապետ Շավարշը, պատմահեղափոխական բալլադները, բազմաթիվ այլ բանաստեղծություններ ու պոեմներ: Այդ երկերով Չարենցը ցույց տվեց, թե ինչպիսի՜ լայն ու բազ-

մազան հնարավորություններ ունի գեղարվեստական նոր մեթոդը՝ սոցիալիստական ռեալիզմը:

Հիրավի, ապշեցուցիչ են թեմատիկ և ժանրային տեսակների, լեզվական և տաղաչափական միջոցների հարստությունն ու բազմազանությունը Չարենցի հիշյալ և նախորդ երկերում: Նա, ասեք, իր առջև խնդիր էր դրել հայրենի գրականության համար յուրացնել պոեզիայի այն բոլոր ձևերը, որոնք կարող են ծառայել նոր ժամանակի հարցերի արծարծմանը: Իր գեղարվեստական բազմազանությամբ Չարենցի ստեղծագործությունը եզակի տեղ է գրավում ողջ հայ գրականության պատմության մեջ. ուրիշ ոչ մի հայ բանաստեղծ այս առումով չի կարող մրցել նրա հետ: Չարենցին հավասարաչափ մատչելի են գեղարվեստական պատկերման ամենաբազմազան եղանակներ՝ խըստորեն ռեալիստական գծագրումներից մինչև ռոմանտիկական իդեալականացման ձևեր, պայմանական և ֆանտաստիկ պատկերներ, գրական ոճավորման փայլուն օրինակներ: Նրա պոեզիայի ժանրային կազմում կարելի է գտնել քնարերգության գրեթե բոլոր հին ու նոր ձևերը, պոեմի քնարական և էպիկական բազմաթիվ տարբերակներ, չափածո դրամա և վեպ, նովել, բալլադ, տաղեր և խորհուրդներ... Նա ստեղծագործաբար կիրառեց հայ ոտանավորի կառուցման գրեթե բոլոր հնարավոր միջոցները՝ կանոնիկ և ավանդական տեսակներից մինչև շեշտային, ազատ և համաշեշտ տաղաչափություն, հայ միջնադարյան, արևմտյան և արևելյան պոեզիայի անհամար ձևեր: Կարելի է ասել, որ Չարենցի ժառանգությունը մի իսկական բանաստեղծական հանրագիտարան է, ուսումնառության անհրաժեշտ դպրոց ամեն մի հայ բանաստեղծի համար:

Չարենցի գեղարվեստական ստեղծագործությունը նրա ապրած հեղափոխական դարաշրջանի հարազատ զավակն է՝ համարձակ ու անհանգիստ, իր նորարարական ոգով միշտ անսպասելիորեն թարմ ու շքեղ, ընդունակ անընդհատ զարգանալու և հարստանալու: «Խորհուրդ չի ընդունում ապագայի երգը»,— գրել է նա, դիմելով գալիքի երգասաններին, կողմնորոշելով նրանց դեպի համարձակ նորարարություն, կաշկանդիչ օրենքներից ազատ լինելու գաղափարը: Բայց, դրա հետ միասին, Չարենցն ուներ անցյալի գեղարվեստական ավանդույթների ամենալայն իմացություն և խոր, կարելի է ասել՝ օրգանական զգացողություն: Ավելորդ է մանրամասն անդրադառնալ 20-ական թվականների սկզբին դասական ժառանգության դեմ նրա բարձրացրած «բունտին», որն արտահայտվեց հայտնի «Երեքի դեկլարացիայում», մի շարք հոդվածներում և բանաստեղծություններում: Տուրք տալով այդ ժամանակի համար բնորոշ ձախության «մանկական հիվանդությանը»՝ Չարենցն ու նրա հայ համախոհները ևս կարծում էին, թե դասական ավանդներին կապված լինելը կարող է միայն խանգարել նոր հեղափոխական իրականության ճանաչմանն ու գեղարվեստական արտացոլմանը: Բայց այդ մոլորությունը երկար չտևեց, և արդեն տասնամյակի վերջին Չարենցը հասավ ավանդույթների ու նորարարության դիալեկտիկական կապի ճշմարիտ ըմբռնման: Այդ կապի լավագույն մարմնավորումը նրա սեփական ստեղծագործությունն է, ուր, ասեք, խըտացված ձևով տեսնում ենք համաշխարհային պոեզիայի հավերժական շատ արժույթներ՝ անցած մեծ բանաստեղծի պատմական և ազգային նկարագրի միջով, հարստացած նրա հզոր ստեղծագործական անհատականության լույսով: Սկսելով սիմվոլիստական դպրոցի ուսումնառությունից, Չարենցն աստիճանաբար ընդլայնեց իր նախասիրած ավանդույթների դաշտը, որն ընդգրկում էր դիցաբանական հնագույն պատկերներից, Նարեկացու, Սայաթ-Նովայի և հայ միջնադարյան պոեզիայի այլ դեմքերից մինչև Թումանյան ու Տերյան, Մեծարենց ու Սիամանթո, Դանթեից, Գյոթեից, Պուշկինից ու Հայնեից մինչև Մայակովսկի և սովետական պոեզիայի մյուս վարպետները: Բայց այդ բոլորը երբեք չի եղել պարզ ընդօրինակության, իմիտացիայի աղբյուր, այլ միշտ կերպարանափոխվել, դարձել է ազգային պոեզիայի սեփականություն:

ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑԸ երբեք կանգ չէր առնում ձեռք բերված աստիճանի վրա: Նվաճելով բանաստեղծական որևէ թեմա կամ ոճ, նրա միտքն անմիջապես սկսում էր զբաղվել ավելի բարդ ու դժվարին խնդիրներով, «խուսափելով ընդմիշտ երգերից դյուրածին»: Եվ նա իրավունք ուներ իրեն համեմատելու անվեհեր ճանապարհորդի հետ, որը միշտ «խորդուբորդ ուղիներով է բարձրանում վեր», կրելով անդուլ վերելքի բոլոր զրկանքներն ու դժվարությունները, բայց միշտ պահպանելով հոգում անհաս բարձունքների երազանքը.

*Եվ բարձունքներ ես դու ունեցել,*
*Եվ անկումներ ես ունեցել հար,—*
*Բայց դու սրբել ես հոգիդ մի՛շտ էլ*
*Ճամփեքի մաքուր, վսեմ հրով,*
*Եվ միշտ պայծառ է հոգիդ եղել,*
*Եվ սիրտդ լիքն է եղել սիրով:*

Բանաստեղծի հոգում մշտապես ապրող «բարձունքի ցնորքն անծայրածիր» և այն «դժվար, դժնի տենդը», որով նա գրել է իր երգերը, եղան այն երկու գործոնները, որոնց շնորհիվ Չարենցի ամեն մի քայլ դառնում էր նվաճում ո՛չ միայն հեղինակի, այլև ողջ հայ գրականության համար: Բավական է այս առումով համեմատել բանաստեղծի վերջին երկու մատյանները՝ Էպիքական լուսաբացն (1930) ու Գիրք ճանապարհին (1934):

Էպիքական լուսաբաց գրքում, հաղթահարելով իր անցած ուղու որոշ խոտորումներ, Չարենցն ամուր կանգնեց ռեալիզմի դիրքերում: Նոր ռեալիզմի սկզբունքները նա այստեղ ցուցադրեց և՛ իբրև տեսական ծրագիր, և՛ որպես ստեղծագործական պրակտիկա: Հիշենք այդ գրքում զետեղված բանաստեղծական մանիֆեստները, որոնց մեջ խոր համոզմունքով և կրքոտությամբ հաստատվում էր ժամանակակից կյանքն իր ողջ բարդությամբ ու հարստությամբ, նոր մարդու ներաշխարհը բոլոր շերտերով բացահայտելու պահանջը: Չարենցը հատկապես շեշտում էր գեղարվեստական խոսքի ուժի և կենսունակության վճռական պայմանը՝ դառնալ «ժամանակի շունչը», ամբողջ էությամբ ձուլվել դարին, կյանքի զարգացմանը նայել «սերունդների աչքով»:

Խոսելով Էպիքական լուսաբաց գրքի մասին, սովորաբար ընդգծվում է այնտեղ զետեղված ծրագրային բանաստեղծությունների նշանակությունը Չարենցի գեղագիտական սկզբունքների և ողջ սովետահայ գրականության զարգացման համար: Բայց չպետք է անտեսվի և այն իրողությունը, որ գրքի մի շարք երկերում Չարենցն ստեղծագործաբար իրականացնում էր իր իսկ առաջադրած գեղարվեստական ծրագիրը: Դրա վկայությունն են պատմական և ժամանակակից Լենինգրադին նվիրված բանաստեղծությունները, պատմա-հեղափոխական և սոցիալիստական շինարարության թեմաներով գրված էպիկական ֆրագմենտները (Հատվածներ չգրված պոեմից, Հոկտեմբերի 25—26 1917, Չուգունե մարդը): Չափածո նովելների բաժնում, ի թիվս այլ երկերի, կգտնենք Դանգրահեր տղան՝ լուսավոր ապագայի երազանքով թևավորված, անձնական անմահության ձգտումը համաժողովրդական երջանկությանը զոհաբերելու տրամադրությամբ ողողված այդ հոյակապ գործը: Այստեղ կգտնենք Մեծ առօրյան՝ մինչև այժմ իր ողջ իմաստով ու նշանակությամբ չհասկացված և ըստ արժանվույն չգնահատված մի բարդ ու խոր ստեղծագործություն, ուր երկրում կատարվող քաղաքական և հոգեբանական մեծ վերափոխումները դիտված են անհատապաշտ ձգտումների տեր հերոսի աչքերով:

Էպիքական լուսաբաց գիրքը, իրոք, հզոր ազդակ եղավ սովետահայ գրականությունը սխեմատիզմի ու վերացականության արատներից ազատագրելու, կենդանի իրականությանը մերձեցնելու գործում: Բայց, դրանից անմիջապես հետո, Չարենցի բանաստեղծական միտքը լծվեց ուրիշ, ավելի բարդ խնդիրների իրագործման, որի արդյունքը եղավ Գիրք ճանապարհի ժողովածուն: Որքան էլ Չարենցի ժամանակակիցներն ու հաջորդ սերունդները վիճելի կամ անընդունելի կետեր տեսնեն այդ գրքում, մի բան անվիճելի է, որ դա բանաստեղծի ամենահարուստ, բարդ և բովանդակալից մատյանն է, որի խորությունն ու փայլը ժամանակի ընթացքում ավելի ու ավելի է բացահայտվում: Պատմափիլիսոփայական պոեզիան իր բազմազան տարատեսակներով— ահա թե ի՛նչն է այժմ գրավում Չարենցին: Հիշենք հայ ժողովրդի «պատմության քառուղիները» բանաստեղծորեն զննող պոեմները, որոնց թվում՝ ազգային վիպերգության ինքնատիպ մեկնաբանություն տվող Սասունցի Դավիթը, հոգեբանական ամենաբարդ իրավիճակ բացահայտող Դեպի լյառն Մասիս, անցյալի դառնությամբ ու ցավով ողողված Մահվան տեսիլը, հայրենիքի վերածնության պաթոսով շնչող Գովքն ու Նորքը: Մտքի իսկական իմաստությամբ և խոսքի զարմանալի կատարելությամբ փայլող տաղերն ու խորհուրդները, քառյակներն ու դիստիքոնները փիլիսոփայական քնարերգության շողշողուն մարգարիտներ են, որոնք ստիպում են նորից ու նորից խորհել կյանքի ու արվեստի մասին, ավելի խոր հասկանալ դրանց իմաստն ու զարգացման բարդ կեռմանները:

Կարելի է ասել, որ Գիրք ճանապարհի վերնագիրը Չարենցի համար ուներ մի քանի իմաստ: Դա, նախ՝ ժողովրդի անցած ճանապարհի մատյանն է, նրա պատմության փիլիսոփայությունը: Բայց դա նաև բանաստեղծի անցած ճանապարհի հանրագումարն է, կյանքի, ժամանակի և արվեստի մասին նրա մտորումների պտուղը: Վերջապես, բանաստեղծի մտահղացմամբ, դա լինելու էր մի գիրք, որը պիտի ուղեկցեր ընթերցողին՝ նրա հոգևոր կյանքի դժվարին ուղիներում, պիտի լուսավորեր նրա միտքը իմաստուն խոհերով: Այդ երեք խնդիրներին էլ Գիրք ճանապարհին ծառայեց և շարունակում է ծառայել: Այդ գրքով Չարենցն ընթանում էր դեպի «բարդ, բայց ամենալայն մասսաներին հասկանալի սինթետիկ արվեստը», որի մասին բանաստեղծն այնպիսի համոզմունքով ու կրքով էր խոսում սովետական գրողների համագումարում:

ԻՐ ԳՐԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ տարբեր փուլերում Չարենցը սիրել է բանաստեղծորեն ձևակերպել արվեստի խնդիրները, ժամանակակից և

ապագա երգիչներին դիմել պատվիրաններով, որոնք բխում էին արդիականության պահանջներից և սեփական ուղու դասերից: Մանավանդ կյանքի վերջին տասնամյակում, երբ Չարենցն իրավամբ իրեն զգում էր «բազում ուղիներով ու հերկերով անցած և ճաշակած արդեն իմաստության դառնապատիր պտուղը»: Էպիքական լուսփբացի, Լիրիկական անտրակտի, Գիրք ճանապարհիի, հոդվածների և ելույթների համապատասխան մասերից կարելի է վերստեղծել գեղագիտական ըմբռնումների մի ամբողջ համակարգ, որը ձևավորվել է նոր դարաշրջանում արվեստի խնդիրների խոր ըմբռնման և սեփական ստեղծագործական փորձի ընդհանրացման հիման վրա:

Սակայն Չարենցի ամենամեծ դասը հաջորդ գրական սերունդներին, իհարկե, իր բուն գեղարվեստական ստեղծագործությունն է՝ տաղանդի և ժամանակի երջանիկ հանդիպադրման այդ անմահ նմուշը: Նրա ստեղծագործությունը, լինելով անհատական վիթխարի տաղանդի արգասիք, միաժամանակ սերունդներին թողել է այնպիսի պատվիրաններ, որոնք ունեն, իհրավի, անանցանելի նշանակություն: Անխզելի կապ արդիականության հետ, նոր իրականությանը ձուլվելու ունակություն, մարդկության կերտած գեղարվեստական արժույթների խոր իմացություն և ստեղծագործական կիրառում՝ նոր ժամանակի խնդիրներին համապատասխան, համարձակ նորարարություն և գեղարվեստական բազմազանության մշտարթուն ոգի— ահա, ամենահամառոտ ձևակերպումով, Չարենցի դասերը ներկա և գալիք գրական սերունդներին: Իր այդ բարձր հատկանիշներով Չարենցի պոեզիան մշտապես քայլում է արդիականության հետ և երբեք չի դառնա անցյալ: Այն մեր գրականության ներկան է, որոշ իմաստով՝ նաև ապագան:

Ահա թե ինչու Չարենցի և ժամանակակից գրականության առնչությունների հարցը գրական-պատմական ժառանգականության հարց չէ միայն, այլ մեր օրերի սովետահայ գեղարվեստական մշակույթի զարգացման կենսական խնդիրներից մեկը: Առանց չափազանցության կարելի է ասել, որ սովետահայ գրականության բոլոր խոշորագույն դեմքերից Չարենցն այն առաջին անունն է, որն իրավունք է նվաճել տիրականորեն մասնակցելու հայրենի բանարվեստի հետագա զարգացման ընթացքին, ուղեցույց լինելու գրական նոր սերունդների որոնումների մեջ: Այդ մեծ իրավունքը նա ձեռք է բերել ոչ միայն իր ստեղծագործական հանճարով, այլև շնորհիվ այն բանի, որ կարողացավ օրգանապես զուգակցել հայրենի և համաշխարհային գրականության կենսունակ ավանդույթները հեղափոխական դարաշրջանի ոգու և պահանջների հետ:

Չարենցի ստեղծագործությունն ուսանելի է մեզ համար, նախ և առաջ, նրանով, որ այն հոյակապ մի օրինակ է գեղարվեստական խոսքով հեղափոխությանը ծառայելու: Հոկտեմբերյան հեղափոխության առաջին իսկ օրերից, երբ Չարենցն իր ստեղծագործական ճակատագիրը անխզելիորեն կապեց պատմական նոր դարաշրջանի հետ, և մինչև իր մահը՝ ուղիղ քսան տարի, նրա գեղարվեստական երկերն ու գրական-հրապարակախոսական ելույթները խորապես տոգորված են եղել լենինյան կուսակցականության ոգով: 1925 թվականին գտնվելով արտասահմանում, Չարենցն Ալ. Մյասնիկյանին հասցեագրված նամակում գրել է այսպիսի տողեր, որոնք ունեն ոչ միայն կենսագրական արժեք, այլև կարող են համարվել նրա ողջ հետհոկտեմբերյան ստեղծագործության նշանաբանը. «Եվ ահա այս մթնոլորտում ես շրջում եմ այստեղ, դիտում եմ «տիեզերական բուրժուայի» կյանքը և սիրտս ուռչում է հպարտությունից, որ բոլշևիկ եմ, կոմունիստ, լենինյան կազմակերպության անդամ...»: Չարենցի մեծությունն այն էր, որ, իբրև իսկական արվեստագետ, նա հեղափոխական դասակարգին ծառայում էր ոչ թե պարզապես արձագանքելով օրվա լոզունգներին, այլ իր ստեղծագործության ամբողջ ներքին տրամաբանությամբ, որ կուսակցականությունը նրա կերտած պատկերների արյուն զարկերակն էր, էությունը, գեղարվեստական որակի չափանիշը: Պատահական չէ, որ նույն ժամանակ գրած մի ուրիշ նամակում նա իր ստեղծագործական ծրագրի հիմնական կետը բնութագրել է այսպես. «Թաթախվել, թրծվել ու կիզվել է պետք մարտնչող դասակարգի հոգեբանությամբ, այնպես որ յուրաքանչյուր երակը, ֆիբրը, բջիջը լարվի նրա հաղթանակի և հեգեմոնիայի կամքով,— և եթե ունես գրողի քիչ թե շատ շնորհք,— կլինես քո դասակարգի հարազատ արտահայտիչը...»:

Ճիշտ է, ժամանակին քննադատները Չարենցի ստեղծագործության մեջ մատնանշել են ինչ-ինչ «գաղափարական խոտորումներ» ու «թուլություններ»: Բայց ժամանակը մեծ մասամբ արդարացրեց բանաստեղծին և ցույց տվեց, որ դրանք ոչ թե սկզբունքային շեղումներ էին սոցիալիստական արվեստի հիմնական ճանապարհից, այլ արդյունք էին այն մեծ դժվարությունների, նախկինում երբեք չառաջադրված այն բարդ խնդիրների, որոնք 20—30-ական թվականներին կանգնում էին սովետական գրականության հիմնադիրների առջև: Բնորոշը, վճռականը Չարենցի համար միշտ եղել է այն, որ նա իր գեղարվեստական հզոր խոսքը ծառայեցրել է «մարտնչող դասակարգին», կյանքի սոցիալիստական վերափոխման և հարազատ ժողովրդի ազգային վերածնության բանաստեղծական փառաբանմանը:



Գաղափարական և գեղարվեստական խնդիրների այն բնական միաձուլումը, որ մենք տեսնում ենք Չարենցի ստեղծագործության մեջ, հատուկ է այն արվեստագետներին, որոնց համար հեղափոխական խոսքն ու գործը անբաժանելի են: Չարենցն այդպիսի միաձույլ արվեստագետ-քաղաքացի էր: Նա ոչ միայն սոցիալիստական հեղափոխության երգիչն էր, այլև նրա մարտիկը՝ բառիս ուղղակի իմաստով: Սոմայի և Խելագարված ամբոխների մտահղացումը Չարենցի ստեղծագործական խառնարանում ծնվեց այն ժամանակ, երբ նա Ցարիցինում և Հյուսիսային Կովկասում անձամբ մասնակցում էր քաղաքացիական կռիվներին, իսկ 1921 թվականի դաշնակցական ավանտյուրայի օրերին նա զենքը ձեռքին պաշտպանում էր նորաստեղծ Խորհրդային Հայաստանը և հաղթական Կարմիր բանակի հետ մտավ Երևան: Տարիներ անց նա օրինական հպարտությամբ այդ մասին գրել է.

*Ես դարձա անեղ փորձության պահուն*
*Ոչ միայն հատու երգեր եմ կռել,*
*Այլ մարտ եմ մղել կյանքի ու մահու,*
*Որպես մի զինվոր։—*

Ե. Չարենցի ստեղծագործությունը կենդանի մարմնավորումն է մարդկության գեղարվեստական զարգացման մեջ նոր դարագլուխ բացած սոցիալիստական ռեալիզմի արվեստի, նրա ուժի և կենսունակության, նրա արտահայտչական անսպառ հնարավորությունների: Դեռ հեղափոխությունից առաջ պրոլետարական գրականության մեջ իր առաջին դրսևորումները գտած սոցիալիստական ռեալիզմի մեթոդը խորացավ և ավելի ամբողջական տեսք ստացավ 20—30-ական թվականներին: Հայ իրականության մեջ այս առումով ևս բացառիկ մեծ և անմրցելի է Եղիշե Չարենցի դերը: Նա իր լավագույն երկերով ավելի, քան որևէ ուրիշ հայ գրող, ցույց տվեց, թե արվեստի առջև ստեղծագործական ինչ նոր, լայն հորիզոններ են բացում հեղափոխական իրականությունն ու սոցիալիստական գաղափարախոսությունը:

Կարևորագույն նշանակություն ունեն Չարենցի բազմազան կապերը սոցիալիստական ռեալիզմի հիմնադիրների՝ Մ. Գորկու և Վ. Մայակովսկու հետ: Երբեք տուրք չտալով մեխանիկական փոխառման կամ ընդօրինակման, Չարենցն ստեղծագործաբար յուրացրեց և հայրենի գրականության սեփականությունը դարձրեց նրանց գեղարվեստական հայտնություններից շատերը: Այն հոյակապ հոդվածը, որ Չարենցը գրել է Մաքսիմ Գորկու մահվան առթիվ (1936), միայն անձնական սիրո տուրք չէր դեպի «ռուս հանճարեղ գրողը և համաշխարհային մեծագույն քաղաքացին», այլ հավաստումն էր գեղարվեստի պատմության մեջ նրա ներմուծած վիթխարի ավանդի: Դրանից երկու տարի առաջ Չարենցը թարգմանել և առանձին գրքով հրատարակել էր Գորկու բանաստեղծությունններն ու լեգենդները, որոնց հեղափոխական ռոմանտիզմն ու հերոսական ոգին զուգադիպեցին հայ բանաստեղծի գեղարվեստական նախասիրություններին: Ավելի բարդ է Չարենցի վերաբերմունքը դեպի Մայակովսկին, որի հետ նա ունեցել է և՛ ստեղծագործական սերտ մերձեցման պահեր (օրինակ, 20-ական թվականների սկզբին), և՛ ներքին բանավեճ: Սակայն, եթե հարցը դիտենք հեղափոխական պոեզիայի գլխավոր ուղղության տեսանկյունից, ապա չի կարելի չնկատել, որ Մայակովսկին ու Չարենցը հաճախ լուծել են դարաշրջանի կողմից առաջ քաշված համանման խնդիրներ, որ Մայակովսկու ստեղծագործական փորձը շատ դեպքերում օգնել է հայ բանաստեղծին:

Սոցիալիստական ռեալիզմը կենդանի, անընդհատ զարգացող մեթոդ է և ոչ մի՝ նույնիսկ Չարենցի նման խոշոր գեղարվեստական անհատականություն չի կարող, իհարկե, սպառել նրա բոլոր ձևերն ու հնարավորությունները: Չարենցից հետո սոցիալիստական ռեալիզմը հայ գրականության մեջ հարստացավ շատ նոր գծերով: Սակայն միշտ անխախտ մնացին գեղագիտական այն հիմքերը, որ մեր իրականության մեջ վիթխարի ուժով հաստատեց դարաշրջանի մեծ բանաստեղծը՝ նոր արվեստի հեղափոխական ոգին, նրա ինտերնացիոնալ պաթոսը, ազգային և համամարդկային իդեալների միասնությունը և այլն:

Իր այս և մյուս բարձր հատկանիշներով Չարենցի ստեղծագործությունը շարունակում է մնալ իբրև մի ոգեշնչող օրինակ մեր գրողների և արվեստագետների համար: Չարենցը սովորեցնում է դիտել և հասկանալ կյանքը դարաշրջանի գաղափարական բարձր դիրքերից, միաձուլել արվեստը հասարակական առաջավոր իդեալների համար մղված պայքարի հետ: Չարենցը սովորեցնում է մեր գրողներին՝ «հիմնականը մանրից զատել», գտնել ժամանակի կենսական հարցերը և տաղանդի ամբողջ ուժով նվիրվել նրանց գեղարվեստական մարմնավորմանը: Չարենցի օրինակը գրողներին մղում է գեղարվեստական խոսքի անդադրում

կատարելագործման և հարստացման, խոսք, որը պետք է լինի կյանքի նման խոր ու բազմաբարդ, միաժամանակ՝ վճիտ ու լուսավոր:

Շատ բանաստեղծներ են կերտել իրենց գրական հուշարձանը, փորձելով կռահել, թե ի՛նչն է լինելու իրենց անմահության գրավականն ապագա սերունդների աչքում: Այդ հարցի մասին (և ո՛չ մեկ անգամ) խորհրդածել է նաև Եղիշե Չարենցը: Ահա նրա գրական «հինգնահուշարձաններից» մեկը՝ կերտված 1933 թվականին.

*Ինչ ունեցել է ժողովուրդը քո*
*Հնում, անցյալում— լուսավոր ու վեհ,*
*Ինչ ունի այսօր, ի՛նչ ցնորք ու խոհ—*
*Ո՛վ չըր հավաքել և բե՛ր է ավել—*
*Տվել է, որ դու այդ ամենը այս*
*Օրերին խառնած, խոր հավատքով լի՝*
*Պարգևես գալիքի ցնորքին անհաս—*
*Եվ ընդմի՛շտ մնաս մեծ ու սիրելի:—*

Այս բանաստեղծությունը հաճախ է վկայակոչվում և, սովորաբար՝ առանց լրացուցիչ մ... նաբանության: Բայց անհրաժեշտ է հատու... նշել, որ այս տողերում փաստորեն բանաստե... ծորեն բնութագրված են այն երեք հիմք... որոնց վրա ամուր խարսխվում են բանա... ծի մեծությունն ու փառքը: Դա, նախ՝ ազգ... ժողովրդական տարերքի, նրա անցյալի ... ներկայի խոր զգացողությունն է, ապա՝ իր... րած օրերին միաձուլվելու կամքն ու ձգտ... և, վերջապես՝ լուսավոր ապագայի անմար եր... զանքը: Չարենցը լիուլի օժտված էր այդ բարձ... հատկանիշներով: Ու դրանով իսկ նա մնաց... է ու գալիք սերունդների համար էլ ընդմիշ... կմնա «մեծ ու սիրելի»:

---


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՁՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):**

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04107   Պատվեր 2390   Թղթի չափսը 70×108 1/16:   Տիրաժ 14.700:   Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:   Ստորագրված է տպագրության 18/XI-1977 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ, Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կրոնի մասին: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— ՍՄԿԿ XXV համագումարը և սոցիալական առաջընթացը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1977:*

Ժամանակի հետ համընթաց: *«Հայաստան» հրատ., 1977:*

Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Հասարակության գիտական կառավարումը: *ԵՊՀ հրատ., 1977:*

Մ. ԱՍԱՏՐՅԱՆ— Օրենքը և նրա դրսևորումները: *ԵՊՀ հրատ., 1977:*

Հ. ԴՈՒՇՉՅԱՆ— Հասարակական արդյունքի միջճյուղային հաշվեկշիռը: *ԵՊՀ հրատ., 1977:*

Ռ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— Տնտեսական ինֆորմացիայի մեքենայական մշակման նախագծումն ու կազմակերպումը: *ԵՊՀ հրատ., 1977:*

ԷԴ. ԹՈՓՉՅԱՆ— Վերածնության խորհուրդը: *Ե., «Սովետական գրող», 1977:*

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ— Մատեան ողբերգութեան *(գրաբար և ռուսերեն): Ե., «Սովետական գրող», 1977:*

В. И. ЛЕНИН—**О социалистической революции.** Сборник. Т. 1. 1899—1917. М., Политиздат, 1977.

В. И. ЛЕНИН—**О социалистической революции.** Т. 2. 1917—1923. М., Политиздат, 1977.

Ю. ШАРАПОВ—**Ленин как читатель.** М., Политиздат, 1977.

**Визит Леонида Ильича Брежнева во Францию.** 20—22 июня 1977 года. Речи, документы, материалы. М., Политиздат, 1977.

Д. КУНАЕВ—**Исторический опыт КПСС в борьбе за укрепление мира и дружбы между народами.** Доклад на Всесоюзной научно-теоретической конференции 1 июня 1977 года. М., Политиздат, 1977.

**Проблемы коммунистического воспитания и социалистической культуры.** М., Политиздат, 1977.

С. ЧИКИН—**КПСС и охрана здоровья народа.** Изд. 2, доп. М., Политиздат, 1977.

А. ХАРЧЕВ, В. АЛЕКСЕЕВА—**Образ жизни, мораль, воспитание.** М., Политиздат, 1977.

В. ИВАНОВ—**Идеология: характер и закономерности развития.** М., Политиздат, 1977.

**Развитие экономики СССР в десятой пятилетке.** М., «Экономика», 1977.

К. ЛАРИОНОВ—**Социалистическая экономическая интеграция.** М., «Мысль», 1977.

Н. КУРТИКОВ—**Социальный объект управления—коллектив.** М., «Московский рабочий», 1977.

И. БЕРХИН—**На пути к коммунизму.** Основные этапы построения и главные черты развитого социализма в СССР. М., «Знание», 1977.

**Социально-психологический портрет инженера.** М., «Мысль», 1977.

А. ДЗАСОХОВ—**Движение солидарности народов Азии и Африки.** М., «Наука», 1977.

Р. ИСАХАНОВ—**Научно-технический прогресс и изменение характера труда в сельском хозяйстве.** Е., АН, 1977.

Т. АКОПЯН—**Очерк истории Еревана.** ЕГУ, 1977.

ԳԻՆԸ՝ 20 Կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՈՒՆԱՎՈՐ ՑԵՄԵՆՏ

*Չիմքենդի Սաստոբի գործարանը արտադրում է հազվագյուտ տեսակի գունավոր ցեմենտ՝ շենքերի դեկորատիվ հարդարման համար։ Ամենամյա արտադրանքը 2.000 տոննայից ավելի է։ Բայց պահանջարկը շատ մեծ է։ Ուստի և ձեռնարկությունում կառուցվում է տեխնոլոգիական մի հոսքագիծ ևս, որը կշահագործվի 1979 թվականին։ Այդ ժամանակ արտադրության ծավալը գրեթե կկրկնապատկվի, իսկ գունային գաման կլրացվի մի քանի գույներով ևս։ Սաստոբի գործարանը կդառնա շինարարական ինդուստրիայի համար այդ արժեքավոր նյութի խոշորագույն մատակարարը մեր երկրում։*

## ԲՈՒԺԻՉ ՎԱՐԴ

*Բուլղարիայի գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Պյոտր Նիկոլովն ուսումնասիրում է կաղանլիկյան հայտնի վարդերից ստացվող նյութերի բուժիչ հատկությունները։*

*Հետազոտությունները ցույց են տվել, որ վարդայուղը նպաստում է լեղու արտադրությանը, դադարեցնում մկանային կծկումները, բարերար ազդեցություն գործում մարսողական ողջ ապարատի վրա։ Վարդի յուղը հումք է ծառայում «ռոզանոլ» դեղանյութի պատրաստման համար, որն ընդունում են լեղապարկի մի շարք հիվանդությունների դեպքում։ Վարդայուղը օգտագործում են նաև բրոնխային ասթման բուժելիս, իսկ վարդաջուրը՝ ատամնաբուժության մեջ։ Վերջերս Բուլղարիայում մշակվել է «ռոզոդոնտ» պրոֆիլակտիկ ատամաքսուքի արտադրական տեխնոլոգիան։*

## ՋԵՐՄԱՄԵԿՈՒՍԻՉ՝ ՄԱԿՈՒԼԱՏՈՒՐԱՅԻՑ

*Կանադայում մշակվել է մակուլատուրայից հատուկ նյութ պատրաստելու եղանակ, որն իր ջերմամեկուսիչ հատկություններով կարող է մրցել պենոպլաստի և ապակեթելիկների հետ, ունենալով ավելի ցածր ինքնարժեք։ Մակուլատուրան մանրվում է, խառնվում սոսնձող նյութերին, հրակայուն դարձվում բաղադրությունը, ապա ենթարկվում է հատուկ ջերմամշակման։ Փոխելով սոսնձող նյութի քանակը և ջերմամշակման ինտենսիվությունը՝ կարելի է ստանալ կոշտ կամ էլաստիկ ջերմամեկուսիչ պատերին, առաստաղին, ինչպես նաև խողովակաշարերին քսելու համար։*

## ՈՒԺԵՂԱՑՈՒՑԻՉ, ԵՎ ՈՉ ԹԵ ՀԵՏԵՎՈՂ ՀԱՄԱԿԱՐԳ

*ԳԴՀ-ի գիտությունների ակադեմիայի գիտական սարքաշինության կենտրոնում մշակվել է երկկանալանոց նոր ռադիոկայան՝ ինչպես սովետական, նույնպես և ամերիկյան արբանյակներից օդերևութաբանական լուսանկարների ընդունման համար։ Այդ նկարներն անհրաժեշտ են օդանավակայաններին, գիտական հաստատություններին, նավերին։ Կայանն ունի լուսանկար տպագրող բլոկ-տեսամագնիտոֆոն՝ ինֆորմացիայի հավաքման համար և ընդունման ժամանակի գրանցիչ։ Ընդունվող ամեն մի նկարում պատկերված է երկրի ամպածածկույթը՝ 4.000 կմ շառավղով։ Նոր կայանն ունի յուրահատուկ անտենա՝ հաստատուն ընդունման ուժեղացուցչով։ Այդ նորարարության շնորհիվ վերացավ արբանյակներին հետևելու համակարգի անհրաժեշտությունը։ Անտենան չունի պտտվող մասեր, այն ամրացվում է նավակայմին կամ օդերևութաբանական կայանի տանիքին։*